## ՄԵՐ ՀԵՂԻՆԱԿՆԵՐԻՆ

«Լենինյան ուղիով» ամսագրի խմբագրությունը խնդրում է հոդվածներ ուղարկելիս ճշտորեն պահպանել հետևյալ կանոնները. տեսական բնույթի հոդվածները՝ 18 մեքենագրական էջից ոչ ավելի, պրակտիկ աշխատանքը և առաջավոր փորձը լուսաբանող հոդվածները՝ 8—10, նամակներն ու թղթակցությունները՝ 4—6, գրախոսականները և մամուլի տեսությունները՝ 6—8 էջ:

Անդրկովկասի ու Հայաստանի հեղափոխական շարժման թեմաներով գրված և Հայաստանում մարքսիզմ-լենինիզմի տարածմանը նվիրված հոդվածները պետք է ունենան ռուսերեն ամփոփում՝ 8 տողի չափով:

Հոդվածները պետք է մեքենագրված լինեն երկու ինտերվալով, երկու օրինակից, հեղինակի կողմից ստորագրված, նշելով հեղինակի լրիվ անունը, հայրանունը և ազգանունը, հասցեն, աշխատանքի վայրն ու հեռախոսի համարը: Խմբագրությանը հանձնված հոդվածներից մեկը պետք է լինի մեքենագրվածի առաջին օրինակը: Հոդվածում անհրաժեշտ է ցույց տալ մեջբերումների և թվական տվյալների աղբյուրները:

Մարքսիզմ-լենինիզմի կլասիկների, կուսակցության և սովետական պետության ղեկավարների, միջազգային բանվորական ու կոմունիստական շարժման ականավոր գործիչների աշխատություններից, պաշտոնական փաստաթղթերի ժողովածուներից վերցված քաղվածքները, վկայակոչումները պետք է լինեն երկերի հատորյակների կամ աշխատությունների հայերեն, իսկ եթե այդպիսիք չկան՝ ռուսերեն վերջին հրատարակությունից:

Տեսական և գիտական բնույթի հոդվածների վերջում պարտադիր է նշել օգտագործված աղբյուրների համառոտ ցանկը:

Սույն պահանջները խախտողների հոդվածները չեն տպագրվի: Ներկայացված հոդվածն անհետևանք կմնա, եթե այն ամբողջովին կամ հատվածներով հրապարակված լինի մամուլի և ինֆորմացիայի որևէ օրգանում:

Խմբագրությանն ուղարկված հոդվածները չեն վերադարձվում:


# ԼԵՆԻՆՅԱՆ ՈՒՂԻՈՎ

9

ԼՈՒՅՍ Է ՏԵՍՆՈՒՄ 1922 Թ.

ՍԵՊՏԵՄԲԵՐ 1977

ИЗДАЕТСЯ С 1922 Г.

ՀԱՅԱՍՏԱՆԻ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅԱՆ ԿԿ-Ի ՏԵՍԱԿԱՆ-ՔԱՂԱՔԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ

«Лёниннян угнов» («По ленинскому пути»)—теоретический и политический журнал ЦК КП Армении


## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ

## СОДЕРЖАНИЕ










# ՍՄԿԿ ԿԵՆՏՐՈՆԱԿԱՆ ԿՈՄԻՏԵՈՒՄ

ՍՄԿԿ Կենտկոմի քաղբյուրոն քննության առավ ս. թ. հուլիս-օգոստոս ամիսներին Ղրիմում ԳՍՄԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար, ԳԴՀ Պետական խորհրդի նախագահ Է. Հոնեկերի, Չեխոսլովակիայի կոմկուսի Կենտկոմի գլխավոր քարտուղար, ՉՍՍՀ պրեզիդենտ Գ. Հուսակի, ՀՍԲԿ Կենտկոմի առաջին քարտուղար Յա. Կադարի, ԼՄԲԿ Կենտկոմի առաջին քարտուղար Է. Գերեկի, Ռումինական կոմկուսի գլխավոր քարտուղար, ՌՍՀ պրեզիդենտ Ն. Չաուշեսկուի, Բուլղարական կոմկուսի Կենտկոմի առաջին քարտուղար, ԲԺՀ Պետական խորհրդի նախագահ Տ. Ժիվկովի, ՄԺՀԿ Կենտկոմի առաջին քարտուղար, ժողովրդական մեծ Խուրալի նախագահության նախագահ Յու. Ցեդենբալի հետ ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար, ՍՍՀՄ Գերագույն սովետի նախագահության նախագահ Լ. Ի. Բրեժնևի ունեցած բարեկամական հանդիպումների արդյունքները: ՍՄԿԿ Կենտկոմի քաղբյուրոն լիովին հավանություն է տալիս ընկեր Լ. Ի. Բրեժնևի ունեցած զրույցներին, Ղրիմի հանդիպումների արդյունքները համարում է կարևոր և օգտակար՝ եղբայրական կուսակցությունների ու երկրների հետ ՍՄԿԿ-ի և սովետական պետության բազմակողմանի համագործակցության հետագա զարգացման, միջազգային ասպարեզում նրանց գործողությունների կոորդինացման համար:

ՍՄԿԿ XXV համագումարի և Բուլղարական կոմկուսի, ՀՍԲԿ-ի, ԳՍՄԿ-ի, ՄԺՀԿ-ի, ԼՄԲԿ-ի, Ռումինական կոմկուսի, Չեխոսլովակիայի կոմկուսի վերջին համագումարների նախատեսած ծրագրերի իրականացման մասին ինֆորմացիայի փոխանակումը ցույց տվեց, որ սոցիալիստական դաշինքի երկրները, սերտորեն փոխգործակցելով սոցիալիստական և կոմունիստական շինարարության պլանների իրականացման ասպարեզում, հաջողությամբ են լուծում իրենց առջև դրված ստեղծարար աշխատանքի խնդիրները, մեծացնում են իրենց տնտեսական պոտենցիալը, կատարելագործում սոցիալիստական հասարակական հարաբերությունները, բարձրացնում աշխատավորների բարեկեցությունը և կուլտուրական մակարդակը: Ամրապնդվում են սոցիալիզմի երկրների ժողովուրդների բարեկամությունն ու համախմբվածությունը:

ՍՄԿԿ Կենտկոմի քաղբյուրոն եղբայրական կուսակցությունների ղեկավարներին խորին երախտագիտություն է հայտնում ՍՍՀՄ նոր Սահմանադրության նախագծին նրանց տված բարձր գնահատականի համար, Սահմանադրություն, որը վավերագրում է ՍՍՀՄ-ում զարգացած սոցիալիստական հասարակարգի կառուցման փաստը, ինչպես նաև այն ինտերնացիոնալ համերաշխության համար, որ եղբայրական երկրների կոմունիստները, աշխատավորները ցուցադրում են Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխության 60-ամյակի կապակցությամբ:

Սովետական կոմունիստները, սովետական բոլոր մարդիկ իրենց հերթին ընկերական շահագրգռությամբ են հետևում զարգացած սոցիալիզմի կառուցման ասպարեզում եղբայրական երկրների ժողովուրդների ստեղծագործական ջանքերին, ջերմորեն ողջունում են նրանց հաջողությունները:

ՍՄԿԿ Կենտկոմի քաղբյուրոն առաջնահերթ կարևորություն է տալիս եղբայրական երկրների հետ ՍՍՀՄ-ի համագործակցության հետագա զարգացման, միջկուսակցական կապերի և միջպետական հարաբերությունների

խորացման, հասարակական կազմակերպությունների համագործակցության ընդլայնման, կուլտուրական փոխանակման հարցերի շուրջ Ղրիմում ձեռք բերած պայմանավորվածություններին: Մեծ նշանակություն ունեն այն պայմանավորվածությունները, որոնք վերաբերում են ՏՓԽ-ի շրջանակներում երկարաժամկետ նպատակային ծրագրերի հետ սերտորեն շաղկապված արտադրության մասնագիտացման և կոոպերացման երկկողմ հեռանկարային պլանների մշակմանը:

Ղրիմի հանդիպումների ընթացքում միջազգային բազմաթիվ պրոբլեմների շուրջ տեղի ունեցած կարծիքների փոխանակումը հավաստեց սոցիալիստական դաշինքի պետությունների վճռականությունը՝ այսուհետ ևս փոխգործակցելու այն ընդհանուր նպատակների իրականացման համար մղվող պայքարում, որոնք համապատասխանում են ինչպես նրանցից յուրաքանչյուրի ազգային շահերին, այնպես էլ սոցիալիստական դաշինքի, խաղաղության և առաջադիմության բոլոր ուժերի ընդհանուր ինտերնացիոնալ շահերին: **ՍՄԿԿ Կենտկոմի քաղբյուրոն** ընդգծում է զրույցների ընթացքում արտահայտված այն հետևության կարևորությունը, որ, թեև իմպերիալիզմի հետադեմ ուժերը փորձում են խանգարել միջազգային կլիմայի առողջացմանը, բայց խաղաղ գոյակցության սկզբունքների հիման վրա միջազգային հարաբերությունները վերակառուցելու պրոցեսը շարունակվում է: Դրա վկայությունն է մասնավորապես Հելսինկիի խորհրդակցության մասնակից պետությունների ներկայացուցիչների՝ Բելգրադի հանդիպման հաջող նախապատրաստումը:

Դրա հետ մեկտեղ անհրաժեշտ են բոլոր առաջադեմ և խաղաղասեր ուժերի վճռական գործողություններ, որպեսզի թույլ չտրվի սպառազինությունների մրցավազքի նոր ոլորապտույտ, որպեսզի առաջ տարվի զինաթափման գործը: Այդ կապակցությամբ **ՍՄԿԿ Կենտկոմի քաղբյուրոն** գոհունակությամբ նշում է, որ Ղրիմի հանդիպումների ժամանակ կրկին հավաստվեց սոցիալիստական երկրների ընդհանուր գիծը, որի նպատակն է խորացնել միջազգային լարվածության թուլացումը, այն տարածել բոլոր մայրցամաքների վրա: Ներկա իրադրության մեջ իրենց նշանակությունը լրիվ պահպանում են Վարշավայի պայմանագրի մասնակից պետությունների քաղաքական կոնսուլտատիվ կոմիտեի՝ **1976** թվականի նոյեմբերին Բուխարեստում կայացած խորհրդակցության դեկլարացիայի գաղափարներն ու կոնկրետ առաջարկությունները:

Զրույցների ընթացքում ընդգծվեց սոցիալիստական երկրների և ազգային-ազատագրական շարժման փոխգործողության ուժեղացման նշանակությունը: Դա հատկապես կարևոր է այժմ, երբ իմպերիալիզմը և ռեակցիան փորձում են թուլացնել առաջադեմ ուժերի միասնությունը, տարբեր առիթներ օգտագործել նրանց իրար հակադրելու համար, սոցիալիստական կողմնորոշման ուղին ընտրած երկրների սոցիալ-քաղաքական նվաճումները խափանելու համար:

**ՍՄԿԿ Կենտկոմի քաղբյուրոն** օգտակար է համարում միջազգային կոմունիստական շարժման հրատապ պրոբլեմների քննարկումը, որը ցույց տվեց Ղրիմի հանդիպումների մասնակիցների դիրքերի ընդհանրությունը: **ՍՄԿԿ-ն**, ելնելով մարքսիզմ-լենինիզմի, պրոլետարական ինտերնացիոնալիզմի սկզբունքներից, այսուհետ ևս հետևողականորեն և հաստատակամորեն կպայքարի կոմունիստական ու բանվորական կուսակցությունների եղբայրական համագործակցության և համերաշխության զարգացման համար՝ նրանց հարաբերությունների հանրաճանաչ նորմերի հիման վրա, որոնք կրկին հավաստվեցին Եվրոպայի կոմունիստների բեռլինյան կոնֆերանսում:

**ՍՄԿԿ Կենտկոմի քաղբյուրոն** կոնկրետ հարցերի առթիվ ընդունեց մի շարք որոշումներ, որոնցով նախատեսված են եղբայրական կուսակցությունների ու պետությունների ղեկավարների հետ ընկեր **Լ. Ի. Բրեժնևի** բարեկամական հանդիպումների ընթացքում ձեռք բերված պայմանավորվածությունների իրականացման պրակտիկ միջոցառումներ:



# ՊՐՈԼԵՏԱՐԱԿԱՆ ԻՆՏԵՐՆԱՑԻՈՆԱԼԻԶՄԻ ԳԱՂԱՓԱՐԱԽՈՍՈՒԹՅԱՆ ՀԱՂԹԱՆԱԿԸ ՍՍՀՄ-ՈՒՄ

Ի. Պ. ԾԱՄԵՐՅԱՆ
Փիլիսոփայական գիտությունների դոկտոր, պրոֆեսոր

*ՄԵՐ ՍՈՑԻԱԼԻՍՏԱԿԱՆ հայրենիքի պատմության մեջ 1977 թվականը կմտնի որպես մեծ Հոկտեմբերի 60-ամյա փառապանծ հոբելյանի և ՍՍՀՄ նոր Սահմանադրության ընդունման տարի: Սովետական մարդիկ մեծ խանդավառությամբ, աշխատանքային նոր հաջողություններով ու քաղաքական վերելքով դիմավորեցին «Հոկտեմբերյան սոցիալիստական հեղափոխության 60-րդ տարեդարձի մասին» ՍՄԿԿ Կենտկոմի որոշումը և ՍՍՀՄ նոր Սահմանադրության նախագիծը:*

*Այդ փաստաթղթերում ամփոփված են վեց տասնամյակներում սովետական պետության անցած ուղու արդյունքները և կոմունիզմ կերտող սովետական բազմազգ ժողովրդի ձեռք բերած մեծ նվաճումները:*

*Սովետական իշխանության վաթսունամյակի կարևորագույն արդյունքներից մեկը իսկական իրավահավասարության և փաստական հավասարության հաստատումն է ավելի քան հարյուր սոցիալիստական ազգերի ու ազգությունների միջև, պրոլետարական ինտերնացիոնալիզմի և ժողովուրդների բարեկամության գաղափարախոսության հաղթանակը մեր հայրենիքի հասարակական կյանքի բոլոր ոլորտներում:*

*Սոցիալիստական ազգերի ու ազգությունների եղբայրական բարեկամությունն ու ինտերնացիոնալ համախմբվածությունը սովետական հասարակության զարգացման, կոմունիզմի կառուցման շարժիչ մեծ ուժն են:*

*ՊՐՈԼԵՏԱՐԱԿԱՆ ԻՆՏԵՐՆԱՑԻՈՆԱԼԻԶՄԻ գաղափարները, որոնք դեռևս անցյալ դարի կեսերին հռչակվել էին Կ. Մարքսի ու Ֆ. Էնգելսի կողմից և իրենց խտացված արտահայտությունը գտել «Պրոլետարներ բոլոր երկրների, միացե՛ք» մեծ կոչի մեջ, այդ ժամանակից սկսած դարձել են պրոլետարիատի դասակարգային պայքարի հզոր գործոն:*

*Վ. Ի. Լենինի, նրա ուսմունքի ու գործի շարունակողների աշխատություններում, Սովետական Միության և մյուս երկրների կոմունիստական կուսակցությունների որոշումներում այդ գաղափարներն իրենց հետագա զարգացումն են ստացել պրոլետարիատի հեղափոխական պայքարի փորձի հետ սերտորեն կապակցված ու դրա ընդհանրացման հիման վրա:*

*Չափազանցություն չի լինի, եթե ասենք, որ բանվոր դասակարգի բոլոր*

մեծ հաղթանակները նրա հեղափոխական պայքարում ձեռք են բերվել պրոլետարական ինտերնացիոնալիզմի դրոշի ներքո: «Պրոլետարական ինտերնացիոնալիզմը կոմունիստների գործունեության կարևորագույն, կյանքում ստուգված սկզբունքն է,— նշված է «Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխության 60-րդ տարեդարձի մասին» ՍՄԿԿ Կենտկոմի որոշման մեջ: — Դրանով է տոգորված գիտական կոմունիզմի տեսության ու պրակտիկայի ողջ բովանդակությունը: Ինտերնացիոնալիզմի դրոշի ներքո է նվաճվել Հոկտեմբերի հաղթանակը, ամրապնդվել են առաջին սոցիալիստական պետության դիրքերը, առաջացել է սոցիալիզմի համաշխարհային սիստեմը, ամրապնդվում և զարգանում է սոցիալիստական պետությունների համագործակցությունը, աճում և համախմբվում է միջազգային կոմունիստական, բանվորական շարժումը: ՍՄԿԿ-ի ելակետը միշտ եղել և մնում են սոցիալիզմի, ամբողջ հեղափոխական շարժման արմատական ինտերնացիոնալ շահերը»:

Մեծ Հոկտեմբերը, որը խորտակեց բուրժուա-կալվածատիրական կարգը, ժողովուրդների ազգային-գաղութային ճնշման սիստեմը, կայուն հիմք դրեց ազգային հարաբերություններն արմատապես փոխելու, մեր երկրում ազգային հարցը լուծելու և ինտերնացիոնալիզմի սկզբունքները կյանքում մարմնավորելու համար:

Հին, նախահեղափոխական Ռուսաստանից սովետական իշխանությունը ժառանգություն էր ստացել տնտեսական, սոցիալ-քաղաքական և կուլտուրական պրոբլեմների չափազանց բարդ մի կոմպլեքս, որն ամբողջությամբ կազմում էր ազգային հարցը: Բավական է ասել, որ նախահեղափոխական Ռուսաստանի բնակչության մեջ, որը բաղկացած էր գրեթե 200 ազգություններից, քիչ թե շատ զարգացած էին երկու տասնյակը միայն, իսկ մնացածները առանձին փոքր ժողովուրդներ, տոհմացեղային հանրություններ ու էթնիկական խմբեր էին, որոնք դեռևս գտնվում էին հասարակական զարգացման մինչկապիտալիստական տարբեր փուլերում: Արտադրաուժերը երկրում տեղաբաշխված էին չափազանց անհավասարաչափ: Արդյունաբերությունը զարգացած էր գլխավորապես երկրի եվրոպական (կենտրոնական, արևմտյան և հարավային) մասում, որը բնակեցված էր գերազանցապես ռուսներով և համեմատաբար զարգացած այլ ազգերով, իսկ ծայրամասերը կենտրոնի ագրարային-գաղութային կցորդներն էին միայն: Օրինակ, ասիական մասը, որը կազմում էր երկրի տարածքի մոտ 3/4-ը, տալիս էր ընդհանուր արդյունաբերական արտադրանքի 3,5 տոկոսը միայն: Միջին Ասիայի, Հյուսիսի (Սիբիրի, Հեռավոր Արևելքի), Կովկասի բնիկ ժողովուրդների ու ցեղերի շրջանում իշխում էին տնտեսության նահապետական-ֆեոդալական և անգամ նահապետական-տոհմային ձևերը: Խիստ տարբեր էր նաև ժողովուրդների կուլտուրական զարգացման մակարդակը: Ընդհանուր առմամբ, հին Ռուսաստանում չափահաս բնակչության մոտ 3/4-ն անգրագետ էր, իսկ թույլ զարգացած շատ ժողովուրդների շրջանում գրեթե համատարած էր անգրագիտությունը: Ավելի քան 40 ժողովուրդներ չունեին իրենց գիրը: Այդ ամենին հարկավոր է ավելացնել նաև այն, որ նախահեղափոխական Ռուսաստանում ոչ ռուս ազգության բոլոր ժողովուրդները չեն ունեցել իրենց պետականությունը: Այդ տեսակետից բացառություն էին կազմում միայն ֆինները, որոնք ունեին իրենց ինքնավարությունը, որը, սակայն, կրում էր շատ սահմանափակ բնույթ և սիստեմատիկաբար խախտվում էր ցարական իշխանությունների կողմից:

Սոցիալիստական հեղափոխության հաղթանակից և սովետական իշխանության հաստատումից հետո առաջին իսկ օրվանից Վ. Ի. Լենինի գլխավորած սովետական կառավարությունն իր պատմական դեկրետներում և դիմումներում հռչակեց ազգային հարցի լուծման ինտերնացիոնալիստական սկզբունքները: 1917 թվականի նոյեմբերի 2-ին (15-ին) Ժողովրդական կոմիսարների սովետն ընդունեց «Ռուսաստանի ժողովուրդների իրավունքների դեկլարացիան», որտեղ շարադրված էին սովետական իշխանության լենինյան ազգային քաղաքականության հիմնական դրույթները, այն է՝ Ռուսաստանի ժողովուրդների հավասարություն և սուվերենություն, նրանց ազատ ինքնորոշման իրավունք՝ ընդհուպ մինչև անջատում և ինքնուրույն պետության կազ-



մավորում, բոլոր ու ամեն տեսակ ազգային ու ազգային-կրոնական արտոնությունների և սահմանափակումների վերացում, Ռուսաստանի տարածքում ապրող ազգային փոքրամասնությունների ու էթնիկական խմբերի ազատ զարգացում: Կոմունիստական կուսակցությունը և սովետական կառավարությունը հետևողականորեն ու անշեղորեն կենսագործում էին այդ ինտերնացիոնալիստական լենինյան ազգային քաղաքականությունը, որի գլխավոր խնդիրն այդ ժամանակաշրջանում ազգային հարցի լուծումն էր, ժողովուրդների տնտեսական, քաղաքական, կուլտուրական հետամնացության վերացումը և երկրի բոլոր ժողովուրդների միջև լիակատար իրավահավասարության ու փաստական հավասարության հաստատումը:

Համաշխարհային պատմության փորձը վկայում է, որ ազգերի ու ռասաների իսկական իրավահավասարությունն անիրականանալի է կապիտալիզմի պայմաններում, որտեղ ամեն կարգի դեմոկրատական իրավունքները կրում են ձևական-իրավաբանական բնույթ և չեն կենսագործվում:

«Մեր կուսակցությունը լավ էր հասկանում, որ ազգային ճնշման և անհավասարության բոլոր հետևանքները հաղթահարելու համար քիչ է նույնիսկ ամենալավ, ամենաարդարացի օրենքներ ընդունելը,— նշում է Լ. Ի. Բրեժնևը: — Հարկավոր է նաև հաղթահարել առաջներում ճնշված ազգերի և ազգությունների տնտեսական ու կուլտուրական հետամնացությունը: Այլ խոսքով, քիչ է վերացնել ազգերի իրավական անհավասարությունը, հարկավոր է վերջ տալ նաև նրանց միջև եղած փաստական անհավասարությանը: Այդ խնդրի լուծումը դարձավ կուսակցության գլխավոր քաղաքական նպատակներից մեկը» (Լ. Ի. Բրեժնև, Լենինյան կուրսով, հ. 4, էջ 66—67): Մեր բազմազգ երկրի պայմաններում ազգային հարցի լուծումը և սոցիալիզմի կառուցումը եղել են օրգանապես անխզելի դիալեկտիկական կապի մեջ: Ազգային հարցի հաջող ու լիակատար լուծումը հնարավոր էր միայն սոցիալիզմի բազայի վրա, իսկ վերջինիս հաջող կառուցման ու հաղթանակի կարևորագույն պայմաններից էր ազգային հարցի արդարացի, մարքս-լենինյան լուծումը: Այսպիսին էր սոցիալիզմի կառուցման և ազգային հարցի դիալեկտիկան մեր երկրում՝ անցման ժամանակաշրջանում:

Չափազանց բարդ ու դժվարին, պատմության մեջ անօրինակ է եղել ժողովուրդների փաստական անհավասարության վերացման խնդիրը, որ առաջադրել էին կուսակցությունն ու սովետական իշխանությունը:

Կոմունիստական կուսակցությունը, Վ. Ի. Լենինի ղեկավարությամբ, մշակեց այդ պրոբլեմի լուծման կոնկրետ ծրագիրը, որն իր արտահայտությունը գտավ ազգային հարցի վերաբերյալ ՌԿ(բ)Կ X համագումարի բանաձևում: Այն նախատեսում էր ավելի զարգացած ազգերի բանվոր դասակարգի, աշխատավորների կողմից օգնության կազմակերպում թույլ զարգացած ժողովուրդներին՝ նրանց տնտեսական, քաղաքական և կուլտուրական հետամնացության վերացման գործում, այդ ժողովուրդների աշխատավորական զանգվածների ներգրավում սոցիալիստական շինարարության մեջ: Այդ նպատակով կարևորագույն տեղ էր հատկացվում թույլ զարգացած ժողովուրդների աշխատավորական զանգվածների քաղաքական հետամնացության հաղթահարմանը: Հասարակության քաղաքական կազմակերպման սովետական ձևը, ժողովուրդների սովետական ազգային պետականության ստեղծումը այդ զանգվածների դասակարգային ինքնագիտակցության, հասարակության հեղափոխական վերափոխման գործում նրանց քաղաքական ակտիվության բարձրացման գլխավոր միջոցն ու գործիքը հանդիսացան: Սովետները, ըստ էության լինելով ինտերնացիոնալ ձև, համեմատաբար հեշտ ու արագ հարմարվում էին ժողովուրդների ազգային ու պատմական առանձնահատկություններին և դառնում նրանց աշխատավորական զանգվածների շահերի ու կամքի արտահայտիչը: ՌԿ(բ)Կ X համագումարը «Կուսակցության հերթական խնդիրները ազգային հարցում» բանաձևում նշում էր երկրի արևելյան ծայրամասերի աշխատավորական զանգվածներին համախմբելու և միավորելու անհրաժեշտությունը՝ ճնշված ժողովուրդների շրջանում նահապետական-ֆեո-

դալական հարաբերությունները վերացնելու և նրանց սոցիալիստական շինարարության մեջ ներգրավելու համար։ «Արևելյան ծայրամասերում դասակարգային շերտավորման քաղաքականության առաջին քայլը պետք է լինի՝ հեռացնել տեղացի շահագործող բոլոր տարրերին մասսաների վրա ազդեցություն ունենալուց, պայքարել նրանց դեմ սովետական ինքնավարության բոլոր օրգաններում, աշխատավորների սովետներում տեղացի մասսաների ինքնակազմակերպման միջոցով շահագործող տարրերին զրկել դասակարգային արտոնություններից։ Ընդսմին, առաջին հերթին, պետք է կազմակերպվեն և ամենահոգատար կերպով կոմունիստական կուսակցության շարքերը և սովետական աշխատանքի ներգրավվեն տեղական համեմատաբար փոքրաթիվ պրոլետարական տարրերը, որոնք աշխատում են զանազան արհեստներում, հանքերում, երկաթուղիներում, աղագործարաններում, կուլակային տնտեսություններում» (ՍՄԿԿ-ն... բանաձևերում ու որոշումներում, հ. 1, Հայպետհրատ, 1954, էջ 715)։ Տեղերում սովետական իշխանության մարմինների և կուսակցական կազմակերպությունների, տարբեր ձևերով սովետական ազգային պետականության ստեղծումը, զարգացումն ու ամրապնդումը, սովետական և կուսակցական աշխատողների ազգային կադրերի աճեցումն ու պատրաստումը առաջնահերթ նշանակություն ունեցան անցյալում ճնշված և թույլ զարգացած ժողովուրդների աշխատավորական զանգվածներին սոցիալիստական շինարարության մեջ առավել լայնորեն ներգրավելու խնդրում։

Ժողովուրդների փաստական անհավասարությունը վերացնելու գործում գլխավորը թույլ զարգացած ժողովուրդների տնտեսական հետամնացությունը հաղթահարելու խնդիրն էր։ Այն լուծվեց այդ ժողովուրդների տնտեսության բոլոր արխայիկ ձևերն ու կացութաձևերը վերացնելու և ժամանակակից ինդուստրիա ստեղծելու, մի շարք քոչվոր ժողովուրդների՝ նստակեցության անցնելու և նրանց շրջանում կոոպերացված գյուղատնտեսություն ստեղծելու միջոցով։

Երկրի սոցիալիստական ինդուստրացման և գյուղատնտեսության կոլեկտիվացման ընթացքում ու դրանց շնորհիվ հիմնականում լուծվեց սովետական հանրապետությունների ժողովուրդների տնտեսական հետամնացությունն ու փաստական անհավասարությունը վերացնելու խնդիրը։

Ժողովուրդների փաստական անհավասարությունը վերացնելու ծրագիրը նախատեսում էր մի շարք կարևոր միջոցառումներ իրականացնել կուլտուրայի բնագավառում՝ գիր չունեցող ժողովուրդների համար ստեղծել գիր, վերացնել բնակչության անգրագիտությունն ու կիսագրագիտությունը, հիմնել հանրակրթական մասսայական դպրոցներ մայրենի լեզվով, ընդլայնել մասնագիտական միջնակարգ և բարձրագույն ուսումնական հաստատությունների, տարբեր տիպի դասընթացների ու պրոֆեսիոնալ-տեխնիկական դպրոցների սիստեմը՝ բանվորների, մասնագետների որակյալ կադրեր պատրաստելու համար։

Բացառիկ կարևոր նշանակություն ունեցավ 1922 թվականի վերջին սովետական հանրապետությունների միավորումը միասնական բազմազգ պետության՝ ՍՍՀ Միության մեջ։ ՍՍՀՄ կազմավորումը, որի կառուցվածքի ու գործունեության մեջ իրենց մարմնավորումն ստացան պրոլետարական ինտերնացիոնալիզմի գաղափարներն ու սկզբունքները, կոմունիստական կուսակցության լենինյան ազգային քաղաքականության խոշոր հաղթանակն էր և մի նոր կարևոր քայլ՝ մեր երկրում ազգային հարցի հաջող լուծման ճանապարհին։ Այն հնարավորություն ընձեռեց լավագույն կերպով, համամիութենական մասշտաբով կազմակերպել զարգացած ազգերի օգնությունը ետ մնացած ժողովուրդներին և պատմական ամենակարճ ժամկետներում հաջողությամբ հասնել նրանց փաստական հավասարության։

Ժողովուրդների փաստական անհավասարությունը վերացնելու խնդրի լուծումը միաժամանակ նշանակում էր նաև սոցիալ-տնտեսական զարգացման մինչկապիտալիստական ստադիաներում գտնված ժողովուրդների առանց



կապիտալիստական ստադիան անցնելու, սոցիալիզմի փուլը թևակոխելու լենինյան գաղափարի կենսագործում։ Այս գործում անգնահատելի է ռուս մեծ ժողովրդի դերը։

Հասարակության սոցիալիստական վերափոխման ընթացքում իրականացվեց ժողովուրդների փաստական անհավասարությունը վերացնելու լենինյան ծրագիրը։ Սոցիալիստական հասարակարգի կառուցումը, որը պսակվեց 1936 թվականին ՍՍՀՄ Սահմանադրության ընդունմամբ, նշանակում էր նաև, որ սովետական երկրում հիմնականում հաստատվեց ժողովուրդների փաստական հավասարություն։ Նախկինում հետամնաց գաղութային ծայրամասերում աճեցին արդյունաբերական և կուլտուրական կենտրոններ, նոր քաղաքներ ու ավաններ։ Արմատական շրջադարձ կատարվեց նաև գյուղատնտեսության մեջ, որը դարձավ մեքենայացված սոցիալիստական խոշոր արտադրություն։ Անցյալի գիրկն անվերադարձ անցան աշխատավորական զանգվածների աղքատությունը, հետամնացությունը, անգրագիտությունը։ Ավելի քան քառասուն ժողովուրդներ առաջին անգամ ստեղծեցին իրենց գիրը, լայն թափով սկսեց զարգանալ ձևով ազգային, բովանդակությամբ սոցիալիստական սովետական բազմազգ կուլտուրան։

«Սոցիալիստական ինդուստրացումն ու գյուղատնտեսության կոլեկտիվացումը, կուլտուրական հեղափոխությունը, ազգային հարցի արդարացի լուծումը պատմական շատ կարճ ժամկետում մեր հայրենիքը դարձրին սոցիալիստական հզոր տերություն»,— նշված է «Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխության 60-րդ տարեդարձի մասին» ՍՄԿԿ Կենտկոմի որոշման մեջ։

Սոցիալիստական վերափոխումների բազայի վրա արմատական փոփոխություններ կատարվեցին նաև մեր երկրի ազգերի ու ազգությունների սոցիալական էության մեջ։ Սոցիալիստական հեղափոխության հաղթանակը սկիզբ դրեց նոր, սոցիալիստական տիպի ազգերի ու ազգային հարաբերությունների ձևավորմանն ու զարգացմանը։ ՍՍՀՄ-ի և սոցիալիստական մյուս երկրների փորձը ցույց է տվել, որ սոցիալիստական ազգերը սոցիալիզմի և կոմունիզմի կառուցման դարաշրջանի հասարակական զարգացման պատմականորեն անհրաժեշտ, օրինաչափ ձևն են։ Ի տարբերություն բուրժուական ազգերի, սոցիալիստական ազգերը զերծ են դասակարգային հակամարտություններից։ Նրանց դասակարգային կառուցվածքը բնութագրվում է երկու բարեկամական դասակարգերի՝ բանվորների ու կոլտնտեսային գյուղացիության և սոցիալական խավի՝ ժողովրդական մտավորականության առկայությամբ։ Նրանք զոդված են արմատական շահերի, նպատակների ու գաղափարախոսության միասնությամբ, միաձույլ են ինչպես իրենց տնտեսական հիմքով, այնպես էլ բարոյաքաղաքական կերպարով։ Սոցիալիստական ազգերի ու ազգությունների բարոյաքաղաքական, հոգևոր կերպարը բնութագրվում է ինտերնացիոնալիզմի և սոցիալիստական հայրենասիրության մարքս-լենինյան գաղափարախոսության անբաժան տիրապետությամբ։

Մեր բազմազգ երկրում սոցիալիզմի կառուցման ընթացքում բանվոր դասակարգին քաղաքականապես ու գաղափարապես միախոհ դարձան կոլտնտեսային գյուղացիությունը և սովետական մտավորականությունը։ Ինտերնացիոնալիզմը միայն բանվոր դասակարգի գաղափարախոսությունից վերածվեց սոցիալիստական հասարակարգի գաղափարախոսության՝ սոցիալիստական ինտերնացիոնալիզմի։ Պրոլետարական ինտերնացիոնալիզմի գաղափարական բովանդակությունը հարստացավ, բայց նրա սկզբունքները, հիմնարար գաղափարներն ու դրույթները պահպանվեցին։ Այլ կերպ ասած, սոցիալիստական ինտերնացիոնալիզմը դա նույն պրոլետարական ինտերնացիոնալիզմն է, բայց հաղթանակած սոցիալիստական կարգի պայմաններում։

ՍՈՎԵՏԱԿԱՆ ՍՈՑԻԱԼԻՍՏԱԿԱՆ ԿԱՐԳԻ, պրոլետարական, սոցիալիստական ինտերնացիոնալիզմի, սովետական երկրի ժողովուրդների բարեկամության և ինտերնացիոնալ միասնության սկզբունքների վրա հիմնված նրա քա-

ղաքական սիստեմի հսկայական առավելությունները դաժան փորձության ենթարկվեցին Հայրենական մեծ պատերազմի տարիներին։

Ֆաշիստական զավթիչների դեմ մղած ծանր ու դժվարին պայքարում է՛լ ավելի համախմբվեցին սովետական բոլոր ազգերն ու ազգությունները, պաշտպանելով իրենց սոցիալիստական հայրենիքը։ Սովետական Միության ռազմաճակատն ու թիկունքը միավորվեցին մեկ միասնական մարտական լագերում։ Ժողովուրդների բարեկամությունը հիտլերյան Գերմանիայի և միլիտարիստական Ճապոնիայի դեմ տարած մեծ հաղթանակի գլխավոր աղբյուրներից մեկն էր։ Այդ հաղթանակը բարենպաստ պայմաններ ստեղծեց, որպեսզի Եվրոպայի ու Ասիայի մի շարք երկրների բանվոր դասակարգն ու ժողովրդական զանգվածները իշխանությունը նվաճեն և ապա նաև կառուցեն սոցիալիզմ։

Կոմունիստական կուսակցությունը և սովետական կառավարությունը հետպատերազմյան տարիներին իրականացրին մի ամբողջ շարք խոշոր միջոցառումներ գյուղատնտեսության շեշտակի վերելքի, արդյունաբերության հետագա զարգացման և տեխնիկական առաջընթացի արագացման, գիտության ու տեխնիկայի զարգացման, ժողովուրդների ազգային պետականության կատարելագործման ուղղությամբ։

Տնտեսական, քաղաքական և կուլտուրական շինարարության բնագավառում ձեռք բերված հաջողությունների հիման վրա 50—60-ական թվականների սահմանագծում մեր երկրում ապահովվեց սոցիալիզմի լիակատար ու վերջնական հաղթանակը։

«ՍՍՀՄ-ում կառուցված է զարգացած սոցիալիստական հասարակարգ,— նշված է ՍՍՀՄ նոր Սահմանադրության նախագծում։ — Այդ փուլում, երբ սոցիալիզմը զարգանում է արդեն իր սեփական հիմքի վրա, ավելի ու ավելի լրիվ են բացահայտվում նոր հասարակարգի ստեղծարար ուժերը, սոցիալիստական ապրելակերպի առավելությունները, աշխատավորներն ավելի ու ավելի լայնորեն են օգտվում հեղափոխական մեծ նվաճումների պտուղներից...

Դա սոցիալիստական հասուն հասարակական հարաբերությունների հասարակարգ է, որտեղ բոլոր սոցիալական խավերի մերձեցման, բոլոր ազգերի ու ազգությունների իրավաբանական ու փաստական հավասարության հիման վրա առաջացել է մարդկանց պատմական նոր հանրություն՝ սովետական ժողովուրդը...»։

Այդ հանրությունը իրենից ներկայացնում է մեր սոցիալիստական հայրենիքի բանվոր դասակարգի, կոլտնտեսային գյուղացիության և ժողովրդական մտավորականության, բոլոր ազգերի ու ազգությունների եղբայրական դաշինքն ու համախմբումը, նրանց միասնությունը։ Որպես պատմական նոր հանրության՝ սովետական ժողովրդի անխախտ ամրության աղբյուր ծառայում են սովետական մարդկանց արմատական շահերի ու նպատակների միասնությունը, բանվոր դասակարգի առաջատար դերը և կոմունիստական կուսակցության ղեկավարությունը։

Ինքնին հասկանալի է, որ սովետական ժողովուրդը ինչ-որ նոր էթնիկական կամ ազգային հանրություն չէ, կամ, ինչպես հակասովետական կեղծարարներն են գրում, «միասնական սովետական ազգ» չէ, որը իբր ձևավորվում է մեր երկրի ազգությունների ռուսականացման միջոցով։ Սովետական ժողովուրդը սոցիալական և ինտերնացիոնալ մի հանրություն է, որի մեջ տեղի է ունենում ավելի քան հարյուր սովետական ազգերի ու ազգությունների ազատ, ոչ մի բանով չսահմանափակված հետագա զարգացումը, նրանց համակողմանի բարգավաճումն ու մերձեցումը։

Պատմական նոր հանրության կազմավորման մեջ առավել վառ կերպով դրսևորվում են ինտերնացիոնալիզմի գաղափարների հաղթանակը սոցիալիստական հասարակարգում, ինտերնացիոնալի և ազգայինի ներդաշնակ զուգակցումը սովետական մարդկանց կյանքում։ Սովետական սոցիալիստական բոլոր ազգերի ու ազգությունների ինտերնացիոնալ համախմբվածությունը պատմական նոր հանրության մեջ, նրանց ամուր, անքակտելի եղբայրական բարեկամությունը սոցիալական առաջընթացի հզոր ուժ են։ Հասուն սոցիալիստական հասարակարգի պայմաններում մեր երկրի ժողովուրդների բարեկամությունը ձեռք է բերել է՛լ ավելի խոր, համակողմանի ու համապարփակ բնույթ։

Կենսագործելով ՍՄԿԿ XXV համագումարի որոշումները, սովետական բոլոր հանրապետությունների աշխատավորները, սովետական իշխանության վաթսունամյա հոբելյանի պատվին լայնորեն ծավալելով սոցիալիստական մրցությունը, նշանակալի հաջողությունների են հասել տասներորդ հնգամյակի պլանային առաջադրանքների կատարման գործում։

Այսպես, տասներորդ հնգամյակի առաջին տարվա պլանը արդյունաբերության գծով ՍՍՀՄ-ում ընդհանուր առմամբ գերակատարվել է։ 1976 թվականին արտադրության աճը, 1975 թվականի համեմատությամբ, կազմեց 4,8 տոկոս՝ պլանով նախատեսված 4,3-ի դիմաց։ Տարեկան պլանից դուրս իրացվել է ավելի քան 6 միլիարդ ռուբլու արդյունաբերական արտադրանք։ 1976 թվականին խոշոր հաջողություններ են ձեռք բերվել ՍՍՀՄ գյուղատնտեսության մեջ. ստացվել է երկրի ու պատմության մեջ ամենաբարձր հացահատիկի բերքը, հավաքվել է բամբակի, կերային և գյուղատնտեսական մի շարք այլ կուլտուրաների լավ բերք։ Էկոնոմիկայի աճի հիման վրա հաջողությամբ իրականացվում է սոցիալական զարգացման և ժողովրդի կենսամակարդակի բարձրացման ծրագիրը, որ ընդունել է կուսակցության XXV համագումարը։ Արդյունաբերական արտադրանքի իրացման տարեկան պլանը գերակատարել են բոլոր միութենական հանրապետությունները։ Հայկական ՍՍՀ-ում այդ պլանը կատարվել է 102,9 տոկոսով։

Մեծ հաջողություններ են ձեռք բերվել ազգային կուլտուրաների զարգացման գործում՝ սովետական բոլոր հանրապետություններում։ Դրա կարևորագույն ցուցանիշներից մեկը բնակչության կրթության վիճակն ու նրա մակարդակն են։ 1976 թվականին ՍՍՀՄ ժողովրդական տնտեսության մեջ զբաղված 1.000 մարդուց բարձրագույն և միջնակարգ (լրիվ և թերի) կրթություն ուներ 767-ը։ Այդ թիվն էլ ավելի մեծ է մի շարք միութենական ու ինքնավար հանրապետություններում (այդ թվում՝ այն հանրապետություններում, որոնց տարածքում նախահեղափոխական շրջանում տիրում էր գրեթե համատարած անգրագիտություն). Ղազախական ՍՍՀ-ում՝ 770, Ադրբեջանական ՍՍՀ-ում՝ 775, Էստոնական ՍՍՀ-ում՝ 777, Ուզբեկական ՍՍՀ-ում՝ 779, Հայկական ՍՍՀ-ում՝ 786, Վրացական ՍՍՀ-ում՝ 802, ինքնավար հանրապետություններից Նախիջևանում՝ 773, Կաբարդինա-Բալկարականում՝ 780, Աբխազականում՝ 792, Չուվաշականում՝ 794, Թաթարականում՝ 796, Աջարականում՝ 798, Կոմի ԻՍՍՀ-ում՝ 815 (տե՛ս Народное хозяйство СССР в 1975 г., М., 1976 г., стр. 38—39)։

Գիտական աշխատողների թիվը ՍՍՀՄ-ում 1976 թվականի վերջին կազմում էր 1 միլիոն 250 հազար։ Դրանց թվում կան երկրի բոլոր ազգությունների ներկայացուցիչներ։ Բոլոր միութենական հանրապետություններում արդյունավետ գործում են գիտությունների ակադեմիաները։ Մի շարք ինքնավար հանրապետություններում կան ՍՍՀՄ գիտությունների ակադեմիայի մասնաճյուղեր՝ Բաշկիրիայում, Դաղստանում, Կարելիայում, Կոմիում, Թաթարիայում (Կազանի), ՍՍՀՄ գիտությունների ակադեմիայի Սիբիրի բաժանմունքի մասնաճյուղեր՝ Բուրյաթիայում ու Յակուտիայում և այլն։ Ինչպես նշեց Լ. Ի. Բրեժնևը 1975 թվականի հոկտեմբերի 7-ին՝ ՍՍՀՄ գիտությունների ակադեմիայի 250-ամյա հոբելյանին նվիրված հանդիսավոր նիստում արտասանած ճառում, գիտության զարգացումը բոլոր միութենական հանրապետություններում ՍՄԿԿ-ի լենինյան ազգային քաղաքականության կոնկրետ արտահայտություններից մեկն է։ «Եվ այսօր արդեն չի կարելի սովետական գիտնականների նվաճումների մասին խոսել՝ հաշվի չառնելով մեր սովետական գիտության ազգային փառավոր ջոկատների ակնառու հայտնագործությունները» (Լ. Ի. Բրեժնև, Հայրենական գիտության պարծանքը, էջ 10)։

Սովետական ազգերի ու ազգությունների նվաճումները մեծ են նաև կուլտուրայի մյուս (մասնավորապես՝ գրականության) բնագավառներում։ Սովե-

*տական գրողների համամիութենական վեցերորդ համագումարը, որը կայացավ 1976 թվականի հունիսին, ցույց տվեց մեր բազմազգ սովետական գրականության հիանալի հաջողությունները և սահմանեց նրա հետագա զարգացման հիմնական ուղղությունները ու խնդիրները։ Սովետական գրականությունը զարգանում է սովետական ազգերի ու ազգությունների 76 լեզուներով։ Այն կենդանի սոցիալիստական ինտերնացիոնալիզմն է գործողության մեջ։*

*ՍՄԿԿ XXV համագումարում արտասանած ճառում Հայաստանի կոմկուսի Կենտկոմի առաջին քարտուղար ընկ. Կ. Ս. Դեմիրճյանն ասաց. «Մեր հանրապետության աշխատավորները խորապես գիտակցում են, որ բոլոր նվաճումներով ու հաջողություններով, այն ամենով, ինչը կազմում է վերածնված սոցիալիստական Հայաստանի փառքն ու պարծանքը, իրենք պարտական են Լենինի գաղափարներին, մեծ Հոկտեմբերին, մեր կուսակցության իմաստուն ազգային քաղաքականությանը։ Հանրապետության աշխատավորներն այդ նվաճումները դիտում են որպես իրենց և Սովետական Միության բոլոր ժողովուրդների ընդհանուր համատեղ աշխատանքի արգասիքը։ Մեր երկրի ժողովուրդների քաղաքական, տնտեսական և սոցիալական նվաճումների մեջ ապրում ու հաղթանակում է նրանց մեծ բարեկամությունը, սոցիալիստական ինտերնացիոնալիզմի հզոր ուժը։ Այդ բարեկամությունը, որը մեծագույն փորձություններում ապացուցել է իր անխորտակելիությունն ու անսասանությունը, ամբողջ հայ ժողովրդի սրբության սրբոցն է, որը մենք պահպանում ենք աչքի լույսի պես» («Սովետական Հայաստան», 1976 թվականի փետրվարի 28)։*

*Մեր հասուն սոցիալիստական հասարակարգում պրոլետարական, սոցիալիստական ինտերնացիոնալիզմի և ժողովուրդների բարեկամության գաղափարները մարմնավորվել են հասարակական կյանքի բոլոր ոլորտներում։ Դրանք խորությամբ արտացոլվել են և ՍՍՀՄ նոր Սահմանադրության նախագծում։ Ինտերնացիոնալիզմի գաղափարները դարձել են սովետական մարդկանց գիտակցության և վարքագծի, ողջ ապրելակերպի բնորոշ գիծը։*

*Հիրավի, ինտերնացիոնալիզմի դրոշի ներքո աճում և ամրապնդվում են սոցիալիստական համագործակցության պետությունների եղբայրական դաշինքը, միջազգային բանվորական և կոմունիստական շարժման, համաշխարհային հեղափոխական պրոցեսի բոլոր ուժերի միասնությունը։ «Սովետական Միությունը, որպես սոցիալիզմի համաշխարհային սիստեմի, սոցիալիստական դաշինքի բաղկացուցիչ մաս, զարգացնում և ամրապնդում է բարեկամությունն ու համագործակցությունը, ընկերական փոխօգնությունը սոցիալիզմի երկրների հետ՝ սոցիալիստական ինտերնացիոնալիզմի հիման վրա, ակտիվորեն մասնակցում է տնտեսական ինտեգրացմանը և աշխատանքի միջազգային սոցիալիստական բաժանմանը»,— կարդում ենք նոր Սահմանադրության նախագծում։*

*Սոցիալիզմի մյուս երկրների օրինակով հաստատված սովետական փորձը լուսաշող ուղի է հանում սոցիալական ու ազգային ազատագրության պայքարող ժողովուրդների համար։*

«Տնտեսական, քաղաքական և հոգևոր կյանքի սոցիալիստական կազմակերպումը ցույց տվեց, որ միայն սոցիալիզմն է ուղի բացում արդիականության ամենակարևոր և ամենաանհետաձգելի համամարդկային պրոբլեմների լուծման համար,— *ասված է «Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխության 60-րդ տարեդարձի մասին» ՍՄԿԿ Կենտկոմի որոշման մեջ։ — Միայն նա է ընդունակ մարդկությանը ընդմիշտ ազատելու մասսայական ոչնչացման զենքի գործադրմամբ համընդհանուր կործանարար պատերազմի սպառնալիքից, պահպանելու և բարելավելու բնական միջավայրը։ Բոլոր երկրների աշխատավորների ամենապայծառ հույսերը կապված են սոցիալիզմի հետ։ Դրանում է Հոկտեմբերի օրինակի, Սովետական Միության, սոցիալիստական համագործակցության բոլոր երկրների հաջողությունների ուժը»։*

---

# ՀՈԿՏԵՄԲԵՐՅԱՆ ՀԵՂԱՓՈԽՈՒԹՅԱՆ ՄԻՋԱԶԳԱՅԻՆ ՆՇԱՆԱԿՈՒԹՅՈՒՆԸ

**Մ. Հ. ԱՌԱՔԵԼՅԱՆ**
Պատմական գիտությունների դոկտոր, պրոֆեսոր

*ՄԱՐԴԿՈՒԹՅԱՆ ՊԱՏՄՈՒԹՅԱՆԸ հայտնի են նշանավոր շատ իրադարձություններ, որոնք կարևոր ուղենիշ են եղել հասարակության առաջընթացի ճանապարհին։ Սակայն պատմության մեջ չի եղել մի այլ իրադարձություն, որն իր նշանակությամբ, մարդկության զարգացման վրա ունեցած ներգործությամբ և սոցիալ-քաղաքական հետևանքներով հավասար լինի Հոկտեմբերյան սոցիալիստական հեղափոխությանը։ Այդ հեղափոխությունը դարձավ համաշխարհային պատմության շրջադարձային կետ և նշանավորեց համաշխարհային մասշտաբով կապիտալիզմից հեղափոխական ճանապարհով սոցիալիզմին անցնելու սկիզբը։* «Հոկտեմբերի հաղթանակը,— *նշված է «Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխության 60-րդ տարեդարձի մասին» ՍՄԿԿ Կենտկոմի որոշման մեջ,*— XX դարի գլխավոր իրադարձությունն է, որն արմատապես փոխեց ամբողջ մարդկության զարգացման ընթացքը»։

*Հոկտեմբերյան հեղափոխությունը համաշխարհային զարգացման օրինաչափ արդյունքն է։ Այն անհերքելիորեն ապացուցեց սոցիալիստական հեղափոխության մարքս-լենինյան տեսության ճշմարտացիությունը։ Հեղափոխության հաղթանակը Ռուսաստանում հաստատեց իմպերիալիզմի՝ որպես մոնոպոլիստական, նեխող, մեռնող կապիտալիզմի, որպես «պրոլետարիատի սոցիալական հեղափոխության» նախօրյակի, լենինյան գնահատականի ճշտությունը։*

*Ինչպես հայտնի է, համաշխարհային հեղափոխական շարժման կենտրոնը XX դարի սկզբին տեղափոխվեց Ռուսաստան։ Այն դարձավ իմպերիալիզմի համաշխարհային սիստեմի հիմնական հակասությունների հանգուցակետը և ամենաթույլ օղակն այդ սիստեմի շղթայում։ Միաժամանակ այնտեղ ձևավորվեց և շահագործողական կարգերի դեմ ակտիվ պայքար մղեց համաշխարհային պրոլետարիատի ամենահեղափոխական և ամենակազմակերպված ջոկատը՝ Ռուսաստանի բանվոր դասակարգը, որին ղեկավարում էր մեծ Լենինի ստեղծած նոր տիպի, իսկական հեղափոխական կուսակցությունը՝ բոլշևիկների կուսակցությունը։ Հենց այստեղ էր, որ առաջին անգամ օբյեկտիվ պայմաններ և սուբյեկտիվ նախադրյալներ ստեղծվեցին սոցիալիստական հեղափոխության հաղթանակի, համաշխարհային իմպերիալիզմի շղթան նրա ամենաթույլ օղակում հաջողությամբ ճեղքելու համար։*

*Հոկտեմբերյան հեղափոխության հաղթանակի շնորհիվ աշխատավոր մարդկությունը հուսալի հենարան և հզոր բազա ձեռք բերեց հասարակական կյանքի հեղափոխական նորացման համար մղված պայքարում։ Նա հուժկու ազդակներ տվեց հակաիմպերիալիստական կռվին ամբողջ աշխարհում։ «Հոկ-*

տեմբերյան հեղափոխության համաշխարհային-պատմական նշանակությունն այն է,— ասված է «Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխության 50 տարին» ՍՄԿԿ Կենտկոմի թեզիսներում,— որ նա ցույց տվեց հեղափոխական վերափոխման ուղիները, բացահայտեց դրա ձևերն ու մեթոդները, որոնք միջազգային բնույթ ստացան»։ Համաշխարհային հեղափոխական պրոցեսը մեծ Հոկտեմբերից թևակոխեց զարգացման սկզբունքորեն նոր փուլ, մի դարաշրջան, երբ ավարտվեց իմպերիալիզմի համաշխարհային տիրապետությունը, երբ երկու հակադիր սիստեմների՝ կապիտալիզմի ու սոցիալիզմի զուգահեռ գոյությունը դարձավ իրողություն, իսկ նրանց միջև մղվող պայքարը՝ ամբողջ միջազգային կյանքի գլխավոր առանցքը։

Վ. Ի. Լենինը, բացահայտելով Հոկտեմբերյան հեղափոխության միջազգային նշանակությունը, նշում էր, որ այն կոտրելով համաշխարհային իմպերիալիզմի շղթան և դնելով աշխարհի հեղափոխական նորացման սկիզբը, հսկայական հեղափոխիչ ներգործություն է ունենում ողջ մոլորակի հասարակական կյանքի վրա։ Դրա հիմնական գծերը, որոնք հեղափոխականորեն կապիտալիզմից սոցիալիզմին անցնելու ընդհանուր օրինաչափություններն են դրսևորում, անխուսափելիորեն կրկնվելու են նաև մյուս երկրների հեղափոխություններում։ Համաշխարհային պատմության ողջ հետագա ընթացքը, ուրիշ երկրներում սոցիալիստական հեղափոխության հաղթանակի փորձը հաստատում են լենինյան այդ հետևության ճշմարտացիությունը։ Դրանք միաժամանակ վճռականորեն հերքում են տարբեր կարգի բուրժուական և ռևիզիոնիստական կեղծարարների շաղակրատանքները, որոնք փորձում են ժխտել մեր հեղափոխության միջազգային նշանակությունը, այն ներկայացնել որպես «զուտ ռուսական երևույթ», որպես «հանգամանքների պատահական զուգադիպում», որը, իբր, ոչ մի նշանակություն չունի մյուս երկրների համար։

ՈՐՈ՞ՆՔ ԵՆ ՀԱՄԱՇԽԱՐՀԱՅԻՆ ՀԵՂԱՓՈԽԱԿԱՆ պրոցեսի վրա Հոկտեմբերյան հեղափոխության դրական ներգործության գլխավոր գործոնները։

Վ. Ի. Լենինը սովորեցնում էր, որ համաշխարհային պատմության ընթացքի վրա մեր հեղափոխության ունեցած անշեղ ներգործության գլխավոր լծակը սովետական պետության տնտեսական քաղաքականությունն է, մեր հաջողությունները տնտեսական զարգացման ոլորտում։ Նա գրել է. «...միջազգային հեղափոխության վրա մենք մեր գլխավոր ներգործությունն անում ենք մեր տնտեսական քաղաքականությամբ... Այս ասպարեզն է փոխադրվել պայքարը համաշխարհային մասշտաբով։ Կլուծենք այդ խնդիրը, և այն ժամանակ մենք կշահենք միջազգային մասշտաբով հաստատապես ու վերջնականապես։ Այդ պատճառով տնտեսական շինարարության հարցերը մեզ համար միանգամայն բացառիկ նշանակություն ունեն» (Երկեր, հ. 32, էջ 562)։

Արտադրության միջոցների հանրային սեփականության առկայությունը, ամբողջ երկրի մասշտաբով ժողովրդական տնտեսության զարգացումը պլանավորելու և այն գիտականորեն ղեկավարելու հնարավորությունը, աշխատանքի նկատմամբ շահագործումից ազատագրված աշխատավոր զանգվածների նոր վերաբերմունքը ռեալ ուղիներ բացեցին էկոնոմիկան և տեխնիկական առաջընթացը առողջ հիմքի վրա և նախկինում չտեսնված տեմպերով զարգացնելու համար։

Սովետական ժողովուրդների հերոսական ջանքերի շնորհիվ 30-ական թվականների երկրորդ կեսին ՍՍՀՄ-ում հիմնականում կառուցվեց սոցիալիստական հասարակարգ, իսկ 50-ական թվականների վերջերին արդեն սոցիալիզմը մեզ մոտ հաղթանակեց լրիվ ու վերջնականապես։ Երկիրը թևակոխեց զարգացած սոցիալիստական հասարակարգի ժամանակաշրջանը, որը կոմունիստական ֆորմացիայի կազմավորման պատմական օրինաչափ փուլն է։

Սոցիալիստական տնտեսական սիստեմի առավելությունների շնորհիվ մեր հայրենիքը, լենինյան կուսակցության ղեկավարությամբ, վիթխարի թռիչք կատարեց իր զարգացման ոլորտում։ Չնայած այն բանին, որ սովետական պետության պատմության վեց տասնամյակներից երկուսը խլեցին մեզ պարտադրած պատերազմներն ու հետպատերազմյան վերականգնման տարիները, երկրի



ազգային եկամուտը 1976 թվականին, 1913 թ. համեմատությամբ, ավելացավ 65 անգամ։ Եթե Ռուսաստանի արդյունաբերական արտադրանքի բաժինը 1913 թ. կազմում էր համաշխարհային արտադրության ընդամենը 4 տոկոսը, ապա այժմ Սովետական Միությունը տալիս է աշխարհի արդյունաբերական արտադրանքի մոտ 20 տոկոսը։ Երկրի գյուղատնտեսական արտադրանքի ընդհանուր ծավալը սովետական իշխանության տարիներին աճեց 4,4 անգամ։ Իր տարածքով աշխարհում խոշորագույն ողջ երկրի մասշտաբով ընդմիշտ վերացել են կապիտալիզմին ներհատուկ այնպիսի երևույթներ, ինչպիսիք են սոցիալական ու ազգային ճնշումը, սովն ու աղքատությունը, գործազրկությունն ու անգրագիտությունը։ Ժողովրդի կենսամակարդակի հետագա բարձրացման, կոմունիզմի նյութատեխնիկական բազայի ստեղծման գործում խոշոր առաջընթաց քայլ կլինի տասներորդ հնգամյակը, որը նախատեսում է երկրի արդյունաբերական արտադրանքն ավելացնել 36 տոկոսով, ազգային եկամուտը՝ 26, իսկ գյուղատնտեսության արտադրանքը՝ 16 տոկոսով։ Մինչև 1980 թվականը ՍՍՀՄ-ի ինդուստրիալ պոտենցիալը, 1970 թ. համեմատությամբ, կկրկնապատկվի։

Հսկայական հաջողություններ են ձեռք բերվել հոգևոր կուլտուրայի բնագավառում։ Եթե հեղափոխությունից առաջ երկրի չափահաս բնակչության ավելի քան $^{3}/_{4}$-ն անգրագետ էր, ապա այժմ հենց նույնքան մասն ունի բարձրագույն կամ միջնակարգ կրթություն, հիմնականում ավարտվել է անցումն ընդհանուր միջնակարգ կրթության։ Այժմ Սովետական Միությունն ունի մոտ 1,3 մլն գիտական աշխատողներ, այսինքն՝ 108 անգամ ավելի, քան 1913 թվականին։ Աշխարհի յուրաքանչյուր հինգերորդ գիտաշխատողն այժմ գործում է մեր երկրում։ Սովետական գիտությունը ժամանակակից գիտության շատ բնագավառներում դուրս է եկել համաշխարհային գիտատեխնիկական մտքի ամենաառաջավոր բնագծեր։

Ծաղկել են սոցիալիստական ռեալիզմով տոգորված ՍՍՀՄ ժողովուրդների գրականությունն ու արվեստը, որոնք վիթխարի ավանդ են ներդնում համաշխարհային կուլտուրայի գանձարանը և արտացոլում մեր ժամանակի ամենաառաջավոր գաղափարներն ու բարոյական նորմերը։

Տնտեսական վերելքը և ձևով ազգային ու բովանդակությամբ սոցիալիստական կուլտուրայի ծաղկումն ընդգրկում են բոլոր սովետական հանրապետությունները, որոնցից յուրաքանչյուրը հզոր Սովետական Միության օրգանական բաղադրիչ մասն է։ Ազգային հարցի հաջող լուծման, լենինյան ազգային քաղաքականության հաղթանակի գործում վճռական դեր կատարեց ռուս մեծ ժողովուրդը, ամենից առաջ հերոսական ռուս բանվոր դասակարգը։ Նրա եղբայրական օգնության շնորհիվ միայն հաջողվեց ամենակարճ ժամկետում վերացնել ժողովուրդների փաստական անհավասարությունը, ապահովել բոլոր սովետական հանրապետությունների էկոնոմիկայի և կուլտուրայի բուռն զարգացումը։

ՍՍՀՄ ժողովուրդների եղբայրական ընտանիքում իր արժանի տեղն ունի Հայկական ՍՍՀ-ը։ Մեր ժողովուրդը, որը սովետական իշխանության հաղթանակի շնորհիվ փրկվեց ազգային բնաջնջման աղետից, կյանքի բոլոր ոլորտներում զարգացման այնպիսի բարձր մակարդակի է հասել, որի մասին նախկինում երազել անգամ չէր կարող։ Մեր հանրապետության տարածքում այժմ գործում են մոտ 700 ժամանակակից արդյունաբերական ձեռնարկություններ, որոնցից շատերը նկատելի տեղ ունեն ընդհանուր միութենական արդյունաբերական հաշվեկշռում։ Հայաստանի արդյունաբերական արտադրանքի մոտ 200 տեսակներ այժմ արտահանվում են 80 արտասահմանյան երկրներ։ Տասներորդ հնգամյակում հանրապետության արդյունաբերական արտադրանքը կավելանա ևս 46, իսկ գյուղատնտեսության արտադրանքը՝ 24 տոկոսով։

Նախահեղափոխական Հայաստանում չկային ոչ բարձրագույն ուսումնական հաստատություններ, ոչ գիտահետազոտական հիմնարկություններ։ Այժմ հանրապետությունում կա 13 բարձրագույն ուսումնական հաստատություն և բազմաթիվ գիտահետազոտական հիմնարկություն, որոնցում աշխատում են տասնյակ հազարավոր գիտական աշխատողներ, այդ թվում գիտություն-

ների ավելի քան 650 դոկտորներ և մոտ 5.000 թեկնածուներ։ Հայաստանի գիտությունների ակադեմիան դարձել է երկրի ճանաչված գիտական կենտրոններից մեկը։ Հայ գիտնականներն իրենց արժանի ավանդն են ներդնում գիտության հրատապ պրոբլեմների մշակման գործում։

ՀԵՂԱՓՈԽՈՒԹՅԱՆ ՀԱՂԹԱՆԱԿԸ, զարգացած սոցիալիստական հասարակարգի կառուցումը և սոցիալիզմը աստիճանաբար կոմունիզմի վերաճելու լուսավոր հեռանկարը, սովետների երկրի մեծ նվաճումները հասարակական կյանքի բոլոր ոլորտներում, ինչպես կանխատեսել էր Վ. Ի. Լենինը, հսկայական ազդեցություն են ունենում համաշխարհային հեղափոխական պրոցեսի վրա։ Դրանք անհերքելիորեն ապացուցում են, որ մարդկության պատմության արդի դարաշրջանի հասունացած հարցերը կարող են հաջողությամբ լուծվել միայն սոցիալիզմի բազայի վրա։ Հոկտեմբերյան հեղափոխության և սոցիալիզմի կառուցման փորձը վկայում է, որ մեր ժամանակի գլխավոր հեղափոխական ուժը՝ բանվոր դասակարգը, ունակ է իր մարքսիստական կուսակցության ղեկավարությամբ հաստատելու արտադրամիջոցների հանրային սեփականություն և այդ հիմքի վրա վերացնելու մարդու շահագործումը մարդու կողմից, որ սոցիալիզմն աննախընթաց հնարավորություններ է ընձեռում հասարակության տնտեսական, սոցիալ-քաղաքական և հոգևոր պրոգրեսի, աշխատավորների՝ պատմության այդ իսկական կերտողների կենսամակարդակի բարձրացման համար, որ այն առաջին անգամ ստեղծել է աշխատավորների իսկական ժողովրդական իշխանություն։ Ընդսմին, պրոլետարիատի դիկտատուրան, որը նոր տիպի դեմոկրատիա է, կատարելով սոցիալիզմի կառուցման իր պատմական առաքելությունը, զարգացած սոցիալիստական հասարակարգի պայմաններում իր տեղը զիջում է համաժողովրդական սոցիալիստական պետությանը, որտեղ, հասարակության բոլոր անդամների իսկական ազատության պայմաններում, ներդաշնակորեն զուգակցվում են քաղաքացիների իրավունքներն ու պարտականությունները, հասարակության, կոլեկտիվի և անհատի շահերը։ «Սովետական Սոցիալիստական Հանրապետությունների Միությունը,— նշվում է սովետական նոր Սահմանադրության նախագծում,— համաժողովրդական սոցիալիստական պետություն է, որն արտահայտում է երկրի բանվոր դասակարգի, գյուղացիության և մտավորականության, բոլոր ազգերի և ազգությունների կամքն ու շահերը»։

Հոկտեմբերյան հեղափոխության հաղթանակով և սոցիալիզմի կառուցման փորձով այնուհետև ապացուցվել է, որ սոցիալիզմը պատմության մեջ առաջին անգամ ռեալ պայմաններ է ստեղծում ազգային հարցի արդարացի լուծման, ազգային ճնշումը ոչնչացնելու և ժողովուրդների լիակատար հավասարություն հաստատելու համար։

Ազգային հարցի փայլուն լուծման փորձը մեր երկրում ունի հսկայական տեսական և պրակտիկ նշանակություն ո՛չ միայն մյուս սոցիալիստական պետությունների, այլ նաև աշխարհի բոլոր բազմազգ երկրների ժողովուրդների համար։

Հոկտեմբերյան հեղափոխության համաշխարհային պատմական նշանակության արտահայտություններից մեկն էլ այն է, որ նրա հաղթանակն ապացուցեց, թե միայն սոցիալիստական հասարակարգն է ի վիճակի մինչև վերջ լուծելու դարավոր սուր սոցիալական պրոբլեմներից մեկը՝ կանանց ազատագրության պրոբլեմը և ապահովելու կանանց լիակատար իրավահավասարությունը տղամարդկանց հետ կյանքի բոլոր բնագավառներում։

Հոկտեմբերյան հեղափոխության հաղթանակը, սովետական պետության պատմական փորձը նաև վկայում են, որ սոցիալիզմն ու խաղաղությունն անբաժանելի են, որ հասարակական նոր կարգը արտաքին էքսպանսիայի, միլիտարիզմի ու պատերազմների իմպերիալիստական քաղաքականությանը հակադրել է նոր տիպի միջազգային հարաբերություններ, որ մեծ Հոկտեմբերի երկրի արտաքին քաղաքականությունը (որը բխում է սոցիալիզմի բուն էությունից) խաղաղության և ժողովուրդների իրավահավասար համագործակցության քաղաքականություն է, համաշխարհային մասշտաբով ժողովուրդների



հակաիմպերիալիստական պայքարի անշահախնդիր պաշտպանության քաղաքականություն։ Վ. Ի. Լենինը շեշտում էր, որ «...բոլշևիկներն ստեղծում են բոլորովին այլ միջազգային հարաբերություններ, որոնք հնարավորություն են տալիս բոլոր ճնշված ազգություններին ազատվելու իմպերիալիստական ճնշումից» (Երկեր, հ. 31, էջ 600)։ Հաշտության մասին սովետական իշխանության առաջին դեկրետից մինչև խաղաղության ու դրա իրականացման պայքարի ծրագիրը՝ սովետական պետության խաղաղասիրական քաղաքականության վառ հաստատումն է, քաղաքականություն, որի գլխավոր նպատակն է արտաքին քաղաքական բարենպաստ պայմանների ապահովումը հանուն սոցիալիզմի և կոմունիզմի կառուցման, հետևողական պայքարը կայուն խաղաղության և ժողովուրդների անվտանգության համար։

Սոցիալիզմի անհաղթահարելի ուժի, նրա ինտերնացիոնալ առաքելության ամենավառ դրսևորումը եղավ այն, որ երկրորդ համաշխարհային պատերազմի տարիներին Սովետական Միությունը մարդկությանը փրկեց ֆաշիստական ստրկացման սպառնալիքից։ Հակաֆաշիստական պատերազմում սովետական ժողովուրդը ազատագրեց շատ երկրներ, վճռական դեր խաղալով համաշխարհային իմպերիալիզմի հարվածային ուժերի՝ ֆաշիստական Գերմանիայի և միլիտարիստական Ճապոնիայի ջախջախման գործում։ Հոկտեմբերի երկրի պատմական հաղթանակը մարդկության կյանքում առաջացրեց արմատական փոփոխություններ. դրանցից գլխավորներն են՝ սոցիալիզմի համաշխարհային սիստեմի կազմավորումը, իմպերիալիզմի գաղութային սիստեմի փլուզումը, կոմունիստական և դեմոկրատական շարժման դիրքերի աննախընթաց ուժեղացումը կապիտալիստական երկրներում։ Այդ փոփոխությունները, որոնք Հոկտեմբերից սկսած՝ աշխարհի հեղափոխական նորացման շարունակությունն են, պայմանավորեցին միջազգային ասպարեզում սոցիալիզմի և կապիտալիզմի միջև ուժերի հարաբերակցության շեշտակի փոփոխումը՝ հօգուտ սոցիալիզմի։ Այն դուրս եկավ մի պետության շրջանակներից և դարձավ համաշխարհային սիստեմ։ Սոցիալիստական պետությունների միջև ծագեցին իրավահավասար համագործակցության և ընկերական փոխօգնության վրա հիմնված, սկզբունքորեն նոր տիպի հարաբերություններ։ Մեր օրերում եղբայրական սոցիալիստական երկրների համագործակցությունը դարձել է ամենադինամիկ տնտեսական ուժն աշխարհում։ ՏՓԽ-ի երկրների ազգային եկամուտը 1976 թվականին, 1950 թ. համեմատությամբ, աճել է մոտ 7 անգամ, մինչդեռ Եվրոպայի տնտեսական համագործակցության անդամ երկրներինը այդ նույն ժամանակաշրջանում աճել է միայն 3 անգամ, իսկ ԱՄՆ-ում՝ երկու։ Եթե 1950 թվականին Սովետական Միության արդյունաբերական արտադրանքը կազմում էր ԱՄՆ-ի արտադրանքի 30 տոկոսը, 1960-ին՝ 55, 1970-ին՝ 75, ապա 1976 թվականին այդ ցուցանիշն անցավ 80 տոկոսից (տե՛ս «Международная жизнь», 1977, № 6, стр. 146—147)։ Այդ տվյալներն ապացուցում են, որ սոցիալիստական երկրների էկոնոմիկան, շնորհիվ սոցիալիստական սիստեմի առավելությունների, զարգանում է ավելի արագ տեմպերով և կայուն հիմքերի վրա, որ սոցիալիզմը շահում է տնտեսական մրցությունը կապիտալիզմի հետ։

ՀՈԿՏԵՄԲԵՐՅԱՆ ՀԵՂԱՓՈԽՈՒԹՅՈՒՆՆ ուժգին հարված հասցրեց իմպերիալիզմի գաղութային սիստեմին, բացեց ազգային-ազատագրական հեղափոխությունների դարաշրջանը։ Իսկ երկրորդ համաշխարհային պատերազմից հետո տեղի ունեցավ ամոթալի գաղութային սիստեմի փլուզումը։ Ասիայում, Աֆրիկայում և Լատինական Ամերիկայում այժմ կան հարյուրից ավելի սուվերեն ազգային պետություններ, որոնք դարձել են միջազգային քաղաքականության և հակաիմպերիալիստական պայքարի ակտիվ գործոն և որոնցից շատերն արդեն բռնել են սոցիալիստական կողմնորոշման ուղին։

Սոցիալիստական պետությունները հետևողականորեն, անշահախնդիր օգնություն են ցույց տալիս զարգացող երկրներին, օժանդակում նրանց քաղաքական և տնտեսական անկախության ամրապնդմանը։ Որքան էլ իմպերիալիստական ուժերը փորձում են ճնշել ազգային-ազատագրական շարժումները, ձգտում ժողովուրդների վզին փաթաթել նեոգաղութային կարգեր, միևնույնն է՝ նրանց չի հաջողվի ետ շրջել պատմության անիվը։ Գաղութային սիստեմի

վերջնական կրախն անխուսափելի է: Դրա վկայությունն են նաև վերջին տարիների ընթացքում Անգոլայի, Մոզամբիկի և մի շարք այլ աֆրիկական երկրների անկախության հռչակումը, Հարավային Աֆրիկայի ժողովուրդների վճռական պայքարը ՀԱՀ-ի և Ռոդեզիայի ռասիստական վարչակարգերի դեմ և այլն:

Հոկտեմբերյան հեղափոխությունը նշանավորեց համաշխարհային կոմունիստական շարժման ծնունդը: Հեղափոխության հաղթանակի առաջին իսկ տարիներին տասնյակ երկրներում ձևավորվեցին եղբայրական կոմունիստական կուսակցություններ: 1919 թ. ստեղծվեց Կոմունիստական ինտերնացիոնալը՝ միջազգային հեղափոխական շարժման մարտական շտաբը: Կոմունիստական կուսակցությունների գործունեությունն ու ազդեցությունը շատ երկրներում առավելապես ուժեղացավ երկրորդ համաշխարհային պատերազմի տարիներին, երբ նրանք գլխավորում էին իրենց ժողովուրդների հակաֆաշիստական պայքարը հանուն ազգային ազատագրության ու անկախության: Մեր օրերում աշխարհի տարբեր երկրներում գործում են 90 կոմունիստական և բանվորական կուսակցություններ, որոնք ընդգրկում են 50 միլիոն կոմունիստների, ըստ որում նրանցից 5 միլիոնը՝ կապիտալիստական երկրներում: Կոմունիստական շարժումն այժմ դարձել է մեր ժամանակի ամենապրոգրեսիվ և ազդեցիկ քաղաքական ուժը: Այդ շարժման բոլոր ազգային ջոկատների գործունեության կարևորագույն, կյանքում ստուգված սկզբունքն է պրոլետարական ինտերնացիոնալիզմը, որն օրգանապես զուգակցում է ողջ շարժման ընդհանուր և յուրաքանչյուր երկրի առանձնահատուկ շահերը:

Մեր օրերում, երբ ուժերի հարաբերակցությունն ավելի ու ավելի է փոխվում հօգուտ սոցիալիզմի, տեղի է ունենում միջազգային հարաբերությունների ողջ սիստեմի խոր վերակառուցում, «սառը պատերազմից» ու առճակատումից անցում երկրների իրավահավասար համագործակցության՝ սոցիալական տարբեր սիստեմ ունեցող պետությունների խաղաղ գոյակցության սկզբունքի հիման վրա: Եվ այժմ համաշխարհային պատմության մեջ առաջին անգամ ռեալ հնարավորություն է ստեղծվել իրականացնել մարդկության դարավոր երազանքը՝ զինաթափումը և մարդկանց փրկությունը պատերազմի սարսափներից: Իմպերիալիզմի և ջերմամիջուկային պատերազմի սպառնալիքի դեմ, աշխարհի կայուն խաղաղության համար մղվող պայքարում վճռական դեր է վիճակված մեր ժամանակի հեղափոխական երեք հիմնական ուժերին՝ համաշխարհային սոցիալիստական սիստեմին, կապիտալիստական երկրների բանվոր դասակարգին, զարգացող երկրների հակաիմպերիալիստական ուժերին:

Սովետական Միության տնտեսական բուռն զարգացումը, ՏՓԽ-ի անդամ երկրների սերտ համագործակցությունը սոցիալիստական տնտեսական ինտեգրացման ծրագրի շրջանակներում տեղի են ունենում կապիտալիզմի ընդհանուր ճգնաժամի հետագա խորացման, միջիմպերիալիստական հակասությունների ու մրցապայքարի ուժեղացման, կապիտալիստական աշխարհում դասակարգային բախումների սրման հետ միաժամանակ: Այս հակադիր պրոցեսները կապիտալիստական հասարակական սիստեմի նկատմամբ սոցիալիզմի գերազանցության վառ ապացույցն են: Իսկ դա հեղափոխիչ հետևողական ներգործություն է ունենում ոչ սոցիալիստական երկրների աշխատավոր զանգվածների առաջադեմ ուժերի վրա:

Հասարակական երկու սիստեմների սոցիալ-տնտեսական և քաղաքական դրության ու զարգացման տենդենցների համեմատական վերլուծության ֆոնի վրա ավելի ու ավելի ակնհայտ է դառնում, որ կապիտալիզմը ապագայից զուրկ հասարակարգ է, որ սոցիալիզմին է պատկանում ապագան՝ համաշխարհային մասշտաբով: Վաղ թե ուշ, արդի հասարակության զարգացման օբյեկտիվ ընթացքը, կապիտալի երկրների առաջադեմ ուժերի կազմակերպվածության և գիտակցականության աստիճանի անշեղ աճը կհանգեցնեն սոցիալիստական հեղափոխության հաղթանակին՝ բոլոր երկրներում:

ՀԱՄԱՇԽԱՐՀԱՅԻՆ ՀԵՂԱՓՈԽԱԿԱՆ ՊՐՈՑԵՍԻ արագացման համար հսկայական նշանակություն ունի ռեալ սոցիալիստական հասարակարգի կառուցման օրինակի ուժը: «Հոկտեմբերյան հեղափոխությունը,— նշված է «Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխության 60-րդ տարեդարձի մասին» ՍՄԿԿ Կենտկոմի որոշման մեջ,— մի այնպիսի սոցիալ-քաղաքական իրադարձություն է, որի վեհությունն ավելի ու ավելի խոր ու ցայտուն կերպով է բացահայտվում հասարակական առաջընթացի ուղիով մարդկության յուրաքանչյուր նոր քայլի հետ: Հոկտեմբերի հաղթանակի, ռեալ սոցիալիզմի փորձի համաշխարհային պատմական նշանակությունն այն է, որ դրանք տվեցին աշխատավորության շահերի օգտին հասարակության ամենաարդարացի կազմակերպման օրինակ»:

Տնտեսական, քաղաքական ու կուլտուրական զարգացման, աշխատավորների կենսամակարդակի բարձրացման ասպարեզներում սոցիալիզմի առավելությունները, հաջողություններն ու հետագա զարգացման հեռանկարները ոգեշնչող օրինակ են ողջ աշխատավոր մարդկության համար և ցույց են տալիս պատմականորեն հասունացած հեղափոխական վերափոխումների ռեալ հնարավորություններն ու ճանապարհները բոլոր երկրներում:

Այժմ արդեն ո՛չ միայն տեսականորեն, այլև բոլոր սոցիալիստական երկրների պրակտիկ փորձով ապացուցված է, որ սոցիալիզմը ռեալ հումանիզմի հասարակարգ է, ազատագրված աշխատանքի, իսկական դեմոկրատիայի, անհատի իսկական ազատության, ամենաառաջավոր գիտության ու կուլտուրայի, սոցիալական լավատեսության հասարակարգ, որը ժողովուրդներին բերում է խաղաղություն, հավասարություն և եղբայրություն, ռեալ ուղիներ նշում մեր ժամանակի ամենաբարդ ու անհետաձգելի համամարդկային պրոբլեմների լուծման համար: Ահա թե ինչու այժմ աշխատավոր մարդկությունը սոցիալիզմի հետ է կապում իր ամենապայծառ հույսերը և պատրաստվում մեծ Հոկտեմբերի 60-րդ տարեդարձը նշելու որպես բոլոր ժողովուրդների ընդհանուր տոն:

Կասկած չկա, որ ինչքան ավելի մեծ լինեն հաջողությունները սոցիալիստական երկրներում, որքան ավելի հաջողությամբ լուծվեն կոմունիստական հասարակարգի կառուցման խնդիրները, այնքան ավելի ուժեղ կլինի նրանց ազդեցությունը համաշխարհային հեղափոխական պրոցեսի վրա:

Սովետական Միության քաղաքացիները ջերմորեն և մեծ խանդավառությամբ ընդունեցին համաժողովրդական քննարկման ներկայացված ՍՍՀՄ նոր Սահմանադրության նախագիծը: Այդ փաստաթղթում խտացված ձևով արտացոլված են հաղթանակած սոցիալիզմի բոլոր կարևորագույն նվաճումները: Ուստի, այն ոգեշնչող օրինակ է նաև աշխարհի բոլոր ժողովուրդների համար: ՍՄԿԿ Կենտկոմի մայիսյան պլենումում Լ. Ի. Բրեժնևն ասաց. «Կասկած չկա..., որ ՍՍՀՄ նոր Սահմանադրության՝ զարգացած սոցիալիզմի Սահմանադրության, կառուցվող կոմունիզմի Սահմանադրության ընդունումը կլինի ո՛չ միայն պատմական իրադարձություն մեր երկրի համար, այլև հսկայական միջազգային նշանակություն ունեցող իրադարձություն: Նրա կենսագործումը տևական խոր ազդեցություն կունենա մեր հայրենիքի սահմաններից շատ հեռու»: Սովետական Սահմանադրությունը որպես փարոս ու պատմական կողմնորոշիչ է ծառայելու մոլորակի բոլոր ժողովուրդների համար:

Մարդկության հաղթական երթը կապիտալիզմից դեպի սոցիալիզմ, որ սկսվել է մեծ Հոկտեմբերով, ընդլայնվում է, հզորանում ու հաղթանակում: Սոցիալիզմն արդեն հարյուր միլիոնավոր մարդկանց իսկական ներկան է և ողջ մարդկության վաղվա օրը՝ այս է մեր դարաշրջանի հասարակական զարգացման օրինաչափությունը և համաշխարհային հեղափոխական պրոցեսի օբյեկտիվ դինամիկան: Եվ իմպերիալիզմի ու ռեակցիայի ոչ մի ուժ ի վիճակի չէ կանգնեցնելու այդ պրոցեսի անշեղ ընթացքը, որը պատմական անխուսափելիությամբ տանում է դեպի կոմունիստական հասարակական ֆորմացիայի համաշխարհային հաղթանակը:

# ՍՈՑԻԱԼԻԶՄԸ ԵՎ ԱԶԱՏՈՒԹՅՈՒՆԸ

**Գ. Ե. ՄԽԻԹԱՐՅԱՆ**
Փիլիսոփայական գիտությունների դոկտոր, պրոֆեսոր

*ՀԱՄԱՇԽԱՐՀԱՅԻՆ ԵՐԿՈՒ ՍԻՍՏԵՄՆԵՐԻ գաղափարական պայքարի մշտական թեմաներից մեկը «ազատություն» հասկացությունն է։ Մեր օրերում այդ պայքարն առանձնապես սուր բնույթ է ընդունել բուրժուական իդեոլոգների կողմից հրապարակ հանված «մարդու ազատությունների» պաշտպանության արծարծման պատրվակով։*

*Իմպերիալիստական ռազմամոլների, պատերազմի անհրաժեշտության հիմնավորողների ու ժողովուրդների ազատագրական պայքարի թշնամիների համար «մեծ հոգս» է դարձել սովետական երկրի «մարդկանց ազատությունների» հարցը։*

*Անկախ նման կեղծավոր, հրապարակախոսական աղմկարարությունից, հեղափոխական անցման դարաշրջանում միշտ արծարծվում է այդ հարցը, նոր հասարակական ուժերը հիմնավորում են իրենց պայքարի անհրաժեշտությունը՝ մարդու ազատության իդեալներով։ Իսկ իրենց դարն ապրած ուժերի կամ ռեակցիոն կարգերի գաղափարախոսները փորձում են ապացուցել, որ մարդկանց բուն ազատությունը հին կարգի պայմաններում է ապահովվում։ Այդպիսին են գաղափարական պայքարի երկու նկրտումները նաև այժմ՝ կապիտալիզմից կոմունիզմին անցման դարաշրջանում։*

*Իմպերիալիստական բուրժուազիայի ջատագովները, քաղաքական գործիչներն ու հրապարակախոսները, առանձնապես երկրորդ համաշխարհային պատերազմից հետո, մի կողմից ստիպված են խոստովանել, որ Սովետական Միությունը և սոցիալիստական երկրները տնտեսապես մեծ հաջողություններ ունեն, սակայն, մյուս կողմից, պնդում են, թե միասնական պլանային տնտեսության նվաճումները, նրանց փիլիսոփայական լեզվով ասած՝ «խստագույն» կամ «մեխանիկական դետերմինիզմը» մոռացության են տվել «անհատի ազատության» հարցը։ Նրանք անամոթաբար հայտարարում են, որ Արևմուտքի կապիտալի տիրապետության երկրներում իշխում է «ազատությունը» (դա նրանց լեզվով կոչվում է «Ազատ աշխարհ»), իսկ սոցիալիստական երկրներում՝ «տոտալիտարիզմը», «բռնությունը», նույնիսկ «տեռորիզմն» ու մարդկանց անապահով վիճակը։*

*Նախ անհրաժեշտ է պարզել, թե ի՞նչ են հասկանում մեր գաղափարական հակառակորդներն «ազատություն» ասելով։ Ինչպիսի՞ն է ազատության մարքս-լենինյան ըմբռնումը։*

*Բուրժուական գաղափարախոսության համաձայն, ազատությունը մասնավոր սեփականության, հարստության կուտակման և շահագործման ազատություն է։ Այնտեղ, որտեղ խոսքը վերաբերում է մասնավոր սեփականության և մարդու շահագործման վերացմանը, բուրժուազիան աղմկում է կողոպուտի, ազատության վերացման և առհասարակ մարդկության կործանման մասին։ Մեր դարաշրջանում, երբ պատմության փաստերը վկայում են, որ կապիտալիզմը կորցրել է իր կենսունակությունը, հեղափոխական շարժման և գիտատեխնիկական հեղափոխության նվաճումները հաստատում են նոր դարաշրջանի, կոմունիզմի հաղթանակի իրական հնարավորությունները, այս պայմաններում հին աշխարհի գաղափարախոսները դարձյալ ծամծմում են ազատության լոզունգը, այդ հին «ժանգոտած փականը» և դարձնում այն իրենց հոգևոր կռվանը կոմունիզմի դեմ պայքարելու համար։ Նրանք նույնիսկ չեն խորշում դիմելու կրոնի օգնությանը, հայտարարելով, թե ազատության կարելի է հասնել ոչ թե գիտության ու տեխնիկայի կամ սոցիալական վերափոխությունների, այլ կրոնի միջոցով, որ ազատության լուծման հիմքը ոչ թե սոցիալական դետերմինիզմն է, տրամաբանությունը, այլ կրոնն ու անմեկնելի հեղինակությունը։*

Ինչպիսի՞ն է ազատության մարքս-լենինյան ըմբռնումը։ *Դեռևս 1918 թ. գարնանը Վ. Ի. Լենինը քննադատում էր այն սոցիալիստներին, ովքեր մարքսիզմի հիմնադիրների երկերում կարդացել են, որ անցումը կապիտալիզմից կոմունիզմին թռիչք է անհրաժեշտության թագավորությունից ազատության թագավորությունը, սակայն, ըստ էության, չեն հասկացել՝ ինչը ինչին է վերաբերում (տե՛ս Վ. Ի. Լենին, Երկեր, հ. 27, էջ 339)։ Իսկապես, ո՞րն է այդ թռիչքի էությունը, որի իմաստը մեր թեմայի տեսանկյունից հին, բուրժուական ազատության վերացումն է և նոր, պրոլետարական կամ կոմունիստական ազատության իրականացումը։*

*Սովորաբար բուրժուական մտավորականը, որպես ինդիվիդուալիստ, հարցի լուսաբանումն սկսում է անհատի ազատության նկարագրից, անտեսելով կամ երկրորդ պլանի վրա թողնելով ամբողջը, այսինքն՝ սոցիալական համակարգը։ Մինչդեռ հարցի նման ըմբռնումը միակողմանի է։ Իրավացի էին հին իմաստունները, երբ մարդուն բնորոշում էին որպես «հասարակական կենդանի»։ Նրա գոյությունը և կենսագործունեությունը հնարավոր է միայն հասարակության մեջ և հասարակական համակարգի ռեալ պայմաններում։ Ուրեմն, քաղաքացու կամ անհատի ազատության քննարկումը պետք է սկսել տվյալ սոցիալական համակարգի շրջանակներում կամ սոցիալական ազատությունների համակարգում։*

*Մարքս-լենինյան փիլիսոփայությունը հասարակական համակարգը համարում է մարդկային կյանքի, «հասարակական մատերիայի» գոյության ձև, որն ունի իր, մարդկանց կամքից ու գիտակցությունից անկախ գործող, օբյեկտիվ օրենքները։ Այդ նյութական օրենքների հայտնագործման ու գիտական հետազոտության հիմքը դրել են Մարքսն ու Էնգելսը, դրանով իսկ ապացուցելով, որ սոցիոլոգիան նույնպես գիտություն է, որն ունի իր օրենքները, ինչպես և բնական գիտությունները։*

*Մարդկային կյանքն ուսումնասիրող հասարակական գիտությունների ակտիվության սահմանը կամ ազատությունը որոշվում է այն չափով, ինչ չափով նրանք կարողանում են ճանաչել իրենց առարկայի շարժման օրենքները և կիրառել նրանց գործողություններն ամբողջ հասարակության շահերի համեմատ։*

*Դեռևս նախամարքսյան բուրժուական փիլիսոփաները (Սպինոզա, Հեգել) իրավացիորեն բնորոշել են, որ ազատությունը անհրաժեշտության ճանաչումն է։ Եթե այս իմաստուն միտքը փոխադրենք պատմության մատերիալիստական բացատրության ոլորտը, իսկ այդպես են վարվել մարքսիզմի հիմնադիրները, ապա սոցիալական համակարգի կառավարման գործում ազատությունը պետք է դրսևորվի այդ համակարգի օրենքների (անհրաժեշտության) ճանաչման և գործնական կիրառման մեջ։ Այստեղից դժվար չէ եզրակացնել, թե մարքսիստական պատմափիլիսոփայությունն ինչպիսի հզոր գիտական միջոց է սոցիալիզմի (կոմունիզմի) կառուցումը գիտականորեն (ազատորեն) կառավարելու գործում։*

*Անշուշտ, ընթերցողին կարող է հետաքրքրել, թե ինչո՞ւ այդ զենքը չի կարելի օգտագործել կապիտալիստական հասարակարգի գիտական կառավարման համար։ Քննենք այն հնարավորին չափ հանգամանորեն։*

*Կապիտալիստական սիստեմը գիտականորեն, այսինքն՝ հասարակության զարգացման օբյեկտիվ օրենքների բնույթին համապատասխան կառավարել*

# ՍՈՑԻԱԼԻԶՄԸ ԵՎ ԱԶԱՏՈՒԹՅՈՒՆԸ

**Գ. Ե. ՄԽԻԹԱՐՅԱՆ**
Փիլիսոփայական գիտությունների դոկտոր, պրոֆեսոր

*ՀԱՄԱՇԽԱՐՀԱՅԻՆ ԵՐԿՈՒ ՍԻՍՏԵՄՆԵՐԻ գաղափարական պայքարի մշտական թեմաներից մեկը «ազատություն» հասկացությունն է։ Մեր օրերում այդ պայքարն առանձնապես սուր բնույթ է ընդունել բուրժուական իդեոլոգների կողմից հրապարակ հանված «մարդու ազատությունների» պաշտպանության արծարծման պատրվակով։*

*Իմպերիալիստական ռազմամոլների, պատերազմի անհրաժեշտության հիմնավորողների ու ժողովուրդների ազատագրական պայքարի թշնամիների համար «մեծ հոգս» է դարձել սովետական երկրի «մարդկանց ազատությունների» հարցը։*

*Անկախ նման կեղծավոր, հրապարակախոսական աղմկարարությունից, հեղափոխական անցման դարաշրջանում միշտ արծարծվում է այդ հարցը, նոր հասարակական ուժերը հիմնավորում են իրենց պայքարի անհրաժեշտությունը՝ մարդու ազատության իդեալներով։ Իսկ իրենց դարն ապրած ուժերի կամ ռեակցիոն կարգերի գաղափարախոսները փորձում են ապացուցել, որ մարդկանց բուն ազատությունը հին կարգի պայմաններում է ապահովվում։ Այդպիսին են գաղափարական պայքարի երկու նկրտումները նաև այժմ՝* կապիտալիզմից կոմունիզմին անցման դարաշրջանում։

*Իմպերիալիստական բուրժուազիայի ջատագովները, քաղաքական գործիչներն ու հրապարակախոսները, առանձնապես երկրորդ համաշխարհային պատերազմից հետո, մի կողմից ստիպված են խոստովանել, որ Սովետական Միությունը և սոցիալիստական երկրները տնտեսապես մեծ հասումներ ունեն, սակայն, մյուս կողմից, պնդում են, թե միասնական պլանային տնտեսության նվաճումները, նրանց փիլիսոփայական լեզվով ասած՝ «խստագույն» կամ «մեխանիկական դետերմինիզմը» մոռացության են տվել «անհատի ազատության» հարցը։ Նրանք անամոթաբար հայտարարում են, որ Արևմուտքի կապիտալի տիրապետության երկրներում իշխում է «ազատությունը» (դա նրանց լեզվով կոչվում է «Ազատ աշխարհ»), իսկ սոցիալիստական երկրներում՝ «տոտալիտարիզմը», «բռնությունը», նույնիսկ «տեռորիզմն» ու մարդկանց անապահով վիճակը։*

*Նախ անհրաժեշտ է պարզել, թե ի՞նչ են հասկանում մեր գաղափարական հակառակորդներն «ազատություն» ասելով։ Ինչպիսի՞ն է ազատության մարքս-լենինյան ըմբռնումը։*

*Բուրժուական գաղափարախոսության համաձայն, ազատությունը մասնավոր սեփականության, հարստության կուտակման և շահագործման ազատություն է։ Այնտեղ, որտեղ խոսքը վերաբերում է մասնավոր սեփականության և մարդու շահագործման վերացմանը, բուրժուազիան աղմկում է կողոպուտի, ազատության վերացման և առհասարակ մարդկության կործանման մասին։ Մեր դարաշրջանում, երբ պատմության փաստերը վկայում են, որ կապիտալիզմը կորցրել է իր կենսունակությունը, հեղափոխական շարժման և գիտա-*



*տեխնիկական հեղափոխության նվաճումները հաստատում են նոր դարաշրջանի, կոմունիզմի հաղթանակի իրական հնարավորությունները, այս պայմաններում հին աշխարհի գաղափարախոսները դարձյալ ծամծմում են ազատության լոզունգը, այդ հին «ժանգոտած փականը» և դարձնում այն իրենց հոգևոր կռվանը կոմունիզմի դեմ պայքարելու համար։ Նրանք նույնիսկ չեն խորշում դիմելու կրոնի օգնությանը, հայտարարելով, թե ազատության կարելի է հասնել ոչ թե գիտության ու տեխնիկայի կամ սոցիալական վերափոխությունների, այլ կրոնի միջոցով, որ ազատության լուծման հիմքը ոչ թե սոցիալական դետերմինիզմն է, տրամաբանությունը, այլ կրոնն ու անմեկնելի հեղինակությունը։*

Ինչպիսի՞ն է ազատության մարքս-լենինյան ըմբռնումը: *Դեռևս 1918 թ. գարնանը Վ. Ի. Լենինը քննադատում էր այն սոցիալիստներին, ովքեր մարքսիզմի հիմնադիրների երկերում կարդացել են, որ անցումը կապիտալիզմից կոմունիզմին թռիչք է անհրաժեշտության թագավորությունից ազատության թագավորությունը, սակայն, ըստ էության, չեն հասկացել՝ ինչը ինչին է վերաբերում (տե՛ս Վ. Ի. Լենին,* Երկեր, *հ. 27, էջ 339)։ Իսկապես, ո՞րն է այդ թռիչքի էությունը, որի իմաստը մեր թեմայի տեսանկյունից հին, բուրժուական ազատության վերացումն է և նոր, պրոլետարական կամ կոմունիստական ազատության իրականացումը։*

*Սովորաբար բուրժուական մտավորականը, որպես ինդիվիդուալիստ, հարցի լուսաբանումն սկսում է անհատի ազատության նկարագրից, անտեսելով կամ երկրորդ պլանի վրա թողնելով ամբողջը, այսինքն՝ սոցիալական համակարգը։ Մինչդեռ հարցի նման ըմբռնումը միակողմանի է։ Իրավացի էին հին իմաստունները, երբ մարդուն բնորոշում էին որպես «հասարակական կենդանի»։ Նրա գոյությունը և կենսագործունեությունը հնարավոր է միայն հասարակության մեջ և հասարակական համակարգի ռեալ պայմաններում։ Ուրեմն, քաղաքացու կամ անհատի ազատության քննարկումը պետք է սկսել տվյալ սոցիալական համակարգի շրջանակներում կամ սոցիալական ազատությունների համակարգում։*

*Մարքս-լենինյան փիլիսոփայությունը հասարակական համակարգը համարում է մարդկային կյանքի, «հասարակական մատերիայի» գոյության ձև, որն ունի իր, մարդկանց կամքից ու գիտակցությունից անկախ գործող, օբյեկտիվ օրենքները։ Այդ նյութական օրենքների հայտնագործման ու գիտական հետազոտության հիմքը դրել են Մարքսն ու Էնգելսը, դրանով իսկ ապացուցելով, որ սոցիոլոգիան նույնպես գիտություն է, որն ունի իր օրենքները, ինչպես և բնական գիտությունները։*

*Մարդկային կյանքն ուսումնասիրող հասարակական գիտությունների ակտիվության սահմանը կամ ազատությունը որոշվում է այն չափով, ինչ չափով նրանք կարողանում են ճանաչել իրենց առարկայի շարժման օրենքները և կիրառել նրանց գործողություններն ամբողջ հասարակության շահերի համեմատ։*

*Դեռևս նախամարքսյան բուրժուական փիլիսոփաները (Սպինոզա, Հեգել) իրավացիորեն բնորոշել են, որ ազատությունը անհրաժեշտության ճանաչումն է։ Եթե այս իմաստուն միտքը փոխադրենք պատմության մատերիալիստական բացատրության ոլորտը, իսկ այդպես են վարվել մարքսիզմի հիմնադիրները, ապա սոցիալական համակարգի կառավարման գործում ազատությունը պետք է դրսևորվի այդ համակարգի օրենքների (անհրաժեշտության) ճանաչման և գործնական կիրառման մեջ։ Այստեղից դժվար չէ եզրակացնել, թե մարքսիստական պատմափիլիսոփայությունն ինչպիսի հզոր գիտական միջոց է սոցիալիզմի (կոմունիզմի) կառուցումը գիտականորեն (ազատորեն) կառավարելու գործում։*

*Անշուշտ, ընթերցողին կարող է հետաքրքրել, թե ինչո՞ւ այդ զենքը չի կարելի օգտագործել կապիտալիստական հասարակարգի գիտական կառավարման համար։ Քննենք այն հնարավորին չափ հանգամանորեն։*

*Կապիտալիստական սիստեմը գիտականորեն, այսինքն՝ հասարակության զարգացման օբյեկտիվ օրենքների բնույթին համապատասխան կառավարել*

հնարավոր չէ: Դա ո՛չ միայն այն պատճառով, որ պատմական անհրաժեշտությունը (օբյեկտիվորեն գործող օրենքները) չի կարելի այնտեղ ճանաչել, ուսումնասիրել և արդյունքները ինչ-որ չափով կիրառել: Այլև այն, որ այդ համակարգը ներքնապես հակասական է, և դասակարգային անտագոնիզմը, որի ուժով այն մինչև այժմ հարատևում է, այդ հակասությունը հասցրել է իր բարձրագույն աստիճանին: Սկզբնապես, երբ բուրժուազիան կապիտալիզմի ծագման շեմին հեղափոխական էր և պայքարում էր ֆեոդալիզմի դեմ, ինչ-որ չափով արտահայտում էր և՛ աշխատավորների շահերը, և՛ նրանց տանում իր ետևից: Բայց երբ բուրժուազիան անցնում է իշխանության գլուխ, նրա և նոր ձևավորված պրոլետարիատի միջև ծագում է մի նոր դասակարգային անտագոնիզմ, որը մեր օրերում մարդկության հետագա բարգավաճման ու առաջընթացի հետ դարձել է անհամատեղելի: Կապիտալիստական սիստեմը հնարավոր չի կառավարել միասնաբար, ազատորեն, այսինքն՝ գիտականորեն, որովհետև նրանում բացակայում է ինչպես մարդկանց շահերի, այնպես էլ կամքի միասնությունը. սոցիալական սիստեմի ղեկավարման սկզբունքը ինդիվիդուալիզմն է. Նրա հիմքում ընկած է մասնավոր սեփականատիրական շահերի տիրապետությունը և դասակարգային մշտական պայքարը: Նույնիսկ արդի պայմաններում, երբ սոցիալական սիստեմի հիմքն են ոչ թե անհատական, այլ մենաշնորհային ու պետական-մենաշնորհային տնտեսությունները, կապիտալիզմը չի դադարում այդպիսին, այսինքն մասնավոր սեփականատիրական շահերի անհաշտ պայքարի ասպարեզ լինելուց: Այստեղ սոցիալական սիստեմում (բոլոր հասարակական հարաբերություններում) թագավորում է ընդհանուր առմամբ անիշխանականությունն ու մրցակցությունը (փիլիսոփայական լեզվով ասած՝ «տարերային անհրաժեշտությունը»): Քանի դեռ սոցիալական կառավարման հիմքում մասնավոր շահն է իշխում, այնտեղ միասնական նպատակը հասարակության մեջ բացակայում է, և, հետևաբար, ընդհանուր զարգացման վրա իշխում է ոչ թե օրենքի իմացության սկզբունքը, այլ իրար հակասող կրքերի պայքարը, որն էլ հենց փիլիսոփայական լեզվով կոչվում է տարերային անհրաժեշտության տիրապետություն:

Գործնական կյանքում անհատական շահերի բախման և կույր տարերքի գերիշխանության դրսևորման փաստեր են գերարտադրության ճգնաժամերը, գործազրկությունը, ֆինանսական (վալյուտային), էներգետիկ ճգնաժամերը, որոնք մեր օրերում ընդգրկել են ամբողջ Արևմուտքի կապիտալիստական աշխարհը, իրենց ոլորտն առել և ագրարային թույլ զարգացած երկրները: Սկսած 1929 թ., դեռ երբեք կապիտալիստական աշխարհն այսպիսի սուր ու բազմակողմանի ճգնաժամային փուլ չէր ապրել: Իմպերիալիզմի արդի պարագլուխները փորձում են այդ ծանր կացությունից սիստեմը դուրս բերել ռազմական մրցավազքի միջոցով: Սակայն, նախ՝ ռազմական արդյունաբերության աճը և մասսայական ոչնչացման զենքի արտադրությունը սոցիալական սիստեմի անմարդկային, հակահասարակական բնույթն են ցույց տալիս, որովհետև այդ նշանակում է մարդու աշխատանքի թանկագին պտուղները, փոխանակ նրա կարիքներին ծառայեցնելու, զուր քամուն տալ, երբ երկրի վրա դեռևս չի պակասում աղքատությունը, սովը և այլն: Երկրորդ՝ ռազմական մրցավազքն սպառնում է ընդհանրապես մարդկության գոյությանը երկրի վրա: Արդեն այժմ այդ վտանգն առկա է, քանի որ մեծ տերությունների զինանոցում չափից ավելի մեծաքանակ մասսայական ոչնչացման զենք է կուտակվել[1]:

Եվ վերջապես, ռազմական արդյունաբերությունը երբեք չի կարող գիտական կառավարման հիմք ծառայել, քանի որ սոցիալական սիստեմի հակասականությունը մնում է ո՛չ միայն չլուծված, այլ է՛լ ավելի է խորանում, այն նպաստում է, մի կողմից՝ ռազմաարդյունաբերական կապիտալի (այսպես կոչված «ռազմաարդյունաբերական կոմպլեքսի» ) մեծացման, իսկ մյուս կողմից՝ գործազուրկների և աղքատության կուտակման: Անխուսափելի հետևությունն

1 Ինչպես հաղորդում է մամուլը, ԱՄՆ-ի ռազմամոլներն արդեն փորձարկում են մի նոր մասսայական ոչնչացման զենք — «նեյտրոնային ռումբը»:



այն է, որ կապիտալիստական սիստեմը անհամատեղելի է սոցիալական ազատության հետ, քանի որ դրա հիմքում ընկած է մասնավոր շահի տիրապետությունը և դասակարգային անհաշտելի պայքարը:

Դրան հակառակ, սոցիալիստական սիստեմն իր ծագման օրից հնարավորություն է ընձեռում հասարակության զարգացումը գիտականորեն (ազատորեն) կառավարելու: Ինչպե՞ս: Նոր հասարակարգի հիմքը արտադրամիջոցների հանրայնացումն է և հանրային արտադրաեղանակի կազմակերպումը, որի շնորհիվ և նոր տնտեսական սիստեմում ինդիվիդուալիզմի փոխարեն գործում է կոլեկտիվիզմը: Մեկ միասնական նպատակով զարգացող սոցիալիստական սիստեմում բնական է, որ ծագում է շահերի և դրա հիման վրա՝ կամքի և ձգտումների միասնություն: Հասարակության կառավարման ու վերահսկման նոր օրգանները (սոցիալիստական պետությունն ու կոմունիստական կուսակցությունը) հնարավորություն են ստանում այդ միասնական շահերին ենթարկել ինչպես տնտեսության զարգացումը, այնպես էլ աշխատավոր մարդկության եռանդը, էնտուզիազմը, կամքն ու ձգտումները:

Շահագործումից, հարստահարումից զերծ ազատությունը, շահերի միասնությունն ու միասնական նպատակը այն իրական հիմքն են, որ հնարավորություն է ստեղծում հասարակության զարգացումը ենթարկել այդ մեծ նպատակին, իսկ այդ էլ հենց նշանակում է գիտական կառավարում: Այդ անցումը տարերայնությունից ու շահերի մշտական բախումներից դեպի համայնատիրության ու միասնական նպատակի հետապնդում, հանդիսանում է «ազատության թռիչքի» սկիզբը:

Սովետական Միության 60-ամյա փորձը, սոցիալիստական երկրների նվաճումները վկայում են, որ անցումը կապիտալիզմից սոցիալիզմին դա իսկապես որակական թռիչք է դասակարգային բախումներով զարգացող հասարակությունից դեպի ազատության տիրապետությունը, դեպի այնպիսի մի հասարակարգ, որի օբյեկտիվ զարգացումը և մարդկանց գիտակցական ձգտումները համընկնում են: Դա է իրոք հասարակության զարգացման մեջ ազատության տիրապետությունը, որն իրականացվում է սկզբնապես պետության ու կառավարող կուսակցության քաղաքականության, սոցիալական ու տնտեսական զարգացման պլանավորման, կրթության ու դաստիարակության, հասարակության քաղաքացիների կուլտուրական վերափոխման միջոցառումներում:

Սոցիալական ազատության ըմբռնումը, ինչպես երևում է, ունի բավականին իրական և ռեալ բովանդակություն. այն ընդգրկում է հասարակական հարաբերությունների բոլոր բնագավառները: Բոլոր այդ բնագավառները գիտականորեն յուրացնելը և հասարակական գիտակցության վերահսկման ենթարկելը բավականին ծանր, տևական ու դժվարին խնդիր է: Ահա թե ինչու սովետական իշխանության առաջին տարիներին Վ. Ի. Լենինը ամենահիմնական խնդիրը սկզբում համարում էր նոր տնտեսակարգի կազմակերպումը, աշխատանքային նոր կարգապահության արմատավորումը, տնտեսության պլանավորման ու վերահսկման մեխանիզմի ստեղծումը:

Սովետական իշխանության հաղթանակը մեր երկրի աշխատավորությանը շնորհել էր քաղաքական ազատություն, սակայն միմիայն նոր տնտեսական հարաբերությունների հաղթանակը կարող էր ապահովել ու ամրապնդել այն նոր ազատությունը, որն ունակ է իր քաղաքացիներին ընձեռել դասակարգային հակամարտություններից ու շահագործումից զերծ հասարակարգը: Չէ՞ որ սոցիալիզմի հաղթանակի, հասարակության կուլտուրական վերափոխման ու հոգևոր ազատության երաշխիքները ևս վերջին հաշվով պայմանավորվում են սոցիալիստական արտադրաեղանակի և դրա զարգացման հեռանկարների պլանավորման ու նոր տնտեսական նվաճումների շնորհիվ:

Սովետական Միության նվաճումներն այժմ նրան դարձրել են ժողովուրդների խաղաղ զարգացման ու աշխատավորության շահերի պաշտպանության հզոր պատվար ամբողջ աշխարհում: Այդ մարդկության ազատության ներկա պատմության մեծագույն նվաճումն է, որը ձեռք է բերվել նպատակասլաց, մի քանի տասնամյակների քրտնաջան աշխատանքի, համառ պայքարի և գիտա-

կան կառավարման միջոցով: Այժմ երբեմնի հետամնաց Սովետական Ռուսաստանը եղբայրական հանրապետությունների հետ միասին տարեկան արտադրում է (1976 թ. տվյալներով)՝ քարածուխ՝ 712 մլն տոննա, նավթ՝ 520, պողպատ՝ 145 մլն տ., էլեկտրաէներգիա՝ 1,111 մլրդ կվտ/ժամ, գազ՝ 321 մլրդ խմ, ավտոմեքենա՝ 2.025 հազար հատ, տրակտոր՝ 562 հազար և բազմաթիվ արդյունաբերական ու գյուղատնտեսական մեքենաներ ու այլ արտադրամիջոցներ (տե՛ս Экономическая газета, № 5, 1977, стр. 4):

Ազատությունը հասարակության այն իրական ուժն է, որի շնորհիվ նա կարողանում է մի կողմից վերահսկել իր հարաբերությունները բնության հետ (այդ սոցիալական ակտիվությունը մարմնանում է նրա արտադրաուժերի մեջ), մյուս կողմից՝ վերահսկել ու կատարելագործել իր սոցիալական կազմակերպության ձևը, ընձեռելով իր քաղաքացիներին ազատ ու բազմակողմանի զարգացման իրական հնարավորություններ: Նշանակում է իր քաղաքացիների, հասարակության ամեն մի անդամի ազատության հիմնական նախադրյալը իր, հասարակական սիստեմի ազատ զարգացումն է, որը, ինչպես վերը նշվեց, բավականին կոնկրետ բովանդակություն ունի: Այդ հասարակական ընդհանուր մշակութային նվաճումների այն ամբողջությունն է, ամեն մի նոր եկող սերնդի համար արդեն օբյեկտիվացված նախադրյալը, որը, յուրացնելով նախորդ սերունդների կուտակած ժառանգությունը, իր հերթին ներդրում է կատարում դրանում, ժառանգաբար թողնելով այն եկող սերունդներին:

ԱՅԺՄ ԱՆԴՐԱԴԱՌՆԱՆՔ ԱՆՀԱՏԻ ԱԶԱՏՈՒԹՅԱՆԸ: Ինչպես վերը նշվեց, ամեն մի անհատ հանդես է գալիս որոշակի սոցիալական պայմաններում և դաստիարակություն ու կրթություն ստանում է տվյալ սիստեմի բնույթին ու պայմաններին համապատասխան: Ուրեմն, այն հանգամանքը, թե որտեղից է ստանում անհատն իր հասունացման շրջանում որոշակի հոգեբանական կերտվածք, մտածելակերպ, գիտելիքներ ու մասնագիտություն, պայմանավորված է նրա շրջապատով կամ միջավայրով: Իրավացի էին անցյալի մտածողները, երբ ասում էին՝ «միջավայրն է դաստիարակում մարդկանց»:

Այստեղ հիմնական ելակետն այն է, որ անհատի ազատությունը պայմանավորվում է հասարակության, իր դասակարգի գոյության օբյեկտիվ և սուբյեկտիվ պայմաններով. խոսել հասարակությունից դուրս անհատի ազատության մասին, նշանակում է առնվազն կտրվել այն պատմական իրականությունից, որն ամեն մարդու գոյության ու կենսագործունեության հիմքն է:

Ի՞նչ է տալիս կապիտալիստական սիստեմն անհատին, իր քաղաքացիներին, ինչո՞վ է չափվում **նրա քաղաքացիների ազատությունը**: Կարելի է վերջին հարցին շատ կարճ պատասխանել— **նրանց ունեցվածքով**: Ով ապրուստի պայմաններ չունի (աշխատավոր մեծամասնությունը), պետք է տնտեսական կարիքի թելադրանքով վարձու աշխատանք կատարի ունևորների մոտ, նա ազատ չէ տնօրինելու իր ճակատագիրը, և նրա անձնական կյանքը ենթակա է պատահականությունների այն ճակատագրական խաղին, որ այնքան ռեալիստորեն նկարագրված է ամերիկյան նշանավոր գրող Դրայզերի (և ոչ միայն նրա) վեպերում:

**Ի՞նչ է տալիս սոցիալիզմն իր քաղաքացիներին:** Խոսենք փաստերի լեզվով, դիմենք ժողովրդական քննարկմանը ներկայացված ՍՍՀՄ Սահմանադրության նախագծին: Ինչպես հայտնի է, Սահմանադրությունը մեր երկրի, նրա ժողովրդի նվաճումների հանրագումարն է: Սովետական Միության անցած 60-ամյա ուղու այս արձանագրության 6-րդ և 7-րդ գլուխներն ամբողջովին նվիրված են ՍՍՀՄ քաղաքացիների ազատությունների, նրանց իրավունքների ու պարտականությունների այն մակարդակին, որ այսօրվա դրութ ամբ ամեն մի քաղաքացու տնտեսական, քաղաքական, բարոյական ու աշխարհայացքային նկարագրի վկայությունն է: Սոցիալիստական հասարակության նպատակն է, ինչպես բխում է բազմաթիվ հոդվածներից (տե՛ս 39—68), ո՛չ միայն ապահովել բոլոր քաղաքացիներին աշխատանքով, կրթությամբ, հանգստի, բուժման և այլ պայմաններով, այլև ժողովրդական տնտեսության առաջընթացի հետ սիստեմատիկորեն բարձրացնել նրանց կենսամակարդակը, կրթության ու կուլտուրական աճի մակարդակը, դաստիարակել ազատ ու բազմակողմանի զարգացած քաղաքացիներ:



Բացի այդ, տնտեսական պայմանների աճի հետ սոցիալիստական հասարակարգն ապահովում է իր քաղաքացիներին նաև աստիճանաբար ավելացող ազատ ժամանակով: Այժմ սովետական քաղաքացիների աշխատանքային շաբաթի տևողությունը 41 ժամ է: Առանձին ծանր բնույթի բնագավառների համար գոյություն ունի աշխատանքային ավելի կարճատև շաբաթ: Սա դեռևս մեզ համար իդեալական սահման չէ:

Աստիճանաբար ավելացող ազատ ժամանակը քաղաքացիները կարող են ծախսել իրենց անձնական հակումներին համապատասխան, այլ կերպ ասած՝ այնպիսի զբաղմունքների ոլորտում, որը նրանց հոգևոր ունակությունների ազատ զարգացմանն է նվիրված և տնտեսական նպատակներ չի հետապնդում: Կանխատեսելով ապագա կոմունիստական հասարակարգի քաղաքացու աշխատանքի բնույթը, Մարքսը Կապիտալի 3-րդ հատորում հենց այդպիսի աշխատանքի բնագավառը նկատի ունենալով, բնութագրում է այն որպես «իսկական ազատության թագավորություն»:

Ինչպես երևում է ՍՍՀՄ նոր Սահմանադրության նախագծից, մեր հասարակարգի նպատակը սովետական մարդկանց երջանկությունն է իր բազմակերպությամբ: Նախագիծը վկայում է, որ քաղաքացիների, ամեն մի անհատի ազատությունը խարսխվում է ոչ թե իրավական, ձևական հավասարության սկզբունքի վրա, որը բնորոշ է բուրժուական երկրների օրենսդրությանը, այլ ամենից առաջ՝ նրանց կենսապայմանների, տնտեսական ապահովության սկզբունքի վրա: Ինչ արժեք ունեն «քաղաքական ազատությունները», եթե հասարակության անդամները չունեն աշխատանք, ապրուստի պայմաններ, եթե նրանք չեն կարողանում կրթություն ստանալ, եթե բժշկական ծառայությունը շատ թանկ է, ու նրանից կարող են միայն հարուստներն օգտվել և այլն:

Անհատի ազատության իրական հիմքն ամենից առաջ տվյալ հասարակության կողմից նրան տրվող նյութական ապահովվածության աստիճանն է: ԱՄՆ-ի պետական գործիչներն ու ռեակցիոն մամուլը աղմկում են այն մասին, որ իբր Սովետական Միությունում չեն ապահովվում «մարդու ազատությունները»: Նրանք օգտագործում են մի քանի հակասովետական տարրերի այն հերյուրանքները, որ իբր մեր երկրում մարդկանց չեն թողնում ազատ մտածել: Այսպիսի դեպքերում են ասում. «Հանգստացեք, պարոններ, ինքներդ ձեզ նայեցեք, չէ՛ որ դեռ հին հունական իմաստուններն էին ասում՝ ամեն ինչում չափի զգացում պետք է ունենալ»:

Բայց չէ՛ որ միայն ԱՄՆ-ում ավելի քան վեց միլիոն գործազուրկներ կան: Այնտեղ գոյություն ունի ազգային ու ռասայական իրավունքների անօրինակ ոտնահարում, այդ երկրի ներքին կյանքում նեգրական պրոբլեմը հիմնականն է:

Իրենց հակակոմունիստական գաղափարական պայքարում «ազատության» արդի բուրժուական տեսաբանները փորձում են հերքել մարքսիզմ-լենինիզմի ակտիվ դերը կոմունիստական շինարարության մեջ: Ամերիկյան պրագմատիզմի տեսաբան Ս. Հուկն ու տնտեսագետ Ու. Ռոստոուն գտնում են, որ ռուսական բոլշևիկներն ու Լենինը, իբր խախտելով «պատմական դետերմինիզմը», «քաղաքական դետերմինիզմի» միջոցով ստեղծեցին պլանային տնտեսություն: Նրանք ուզում են ասել, որ իբր Լենինն ու մեր կուսակցությունը ոչ թե օբյեկտիվ անհրաժեշտության, այլ քաղաքական կամայականության միջոցով հիմք դրին սոցիալիզմի կառուցմանը: Նրանք չեն ընդունում, որ սոցիալական ազատությունը, որևէ նվաճումի հասնելու համար, կարող է միմիայն իրական հնարավորություններից ելնել: Ինչպե՞ս կարող էին Լենինն ու «ռուսական բոլշևիկները» զուտ կամայականության միջոցով հասնել արդի մեծ նվաճումներին, կառուցել սոցիալիստական հասարակարգ, եթե դրա համար մեր երկրում չլինեին անհրաժեշտ նախադրյալներ:

Բուրժուական սոցիոլոգիայի տեսաբաններից Հարվարդի համալսարանի (ԱՄՆ) արդեն պատվավոր պրոֆեսոր Թ. Պարսոնսն իր բազմաթիվ աշխատու-

*թյուններում քննադատում է ազատության մարքսիստական տեսությունը, որը, ըստ նրա, քանի որ բխում է օբյեկտիվ անհրաժեշտությունից, ուրեմն ոչ թե ազատության, այլ ֆատալիզմի տեսություն է: Ըստ պարոն Պարսոնսի, ազատությունը կապ չունի սոցիալական միջավայրի հետ: Այն վարքի նորմ է, որը տրվում է մարդուն դաստիարակության ու կրթության միջոցով, բայց մարդիկ դրա պատճառական բացատրությունը, ծագումն իմանալ չեն կարող:*

*Ազատությունը Պարսոնսի սոցիոլոգիական տեսության մեջ (որը կոչվում է «գործողության տեսություն») զուտ անհատական ակտիվության տարր է ներկայացվում և իր հիմքում ո՛չ միայն կապ չունի սոցիալական միջավայրի հետ, այլև անիմանալի կանխակալ սկզբունք է:*

*Ըստ նրա տեսության, ստացվում է, որ անհատը պետք է նախապես տրրված վարքի նորմին համապատասխան վարվի, որտեղ բոլոր անհատների գործողությունները հանգում են մի ընդհանուր խնդրի, այն է՝ սիստեմի պահպանման, որը նրա տեսության նպատակն է և կոչվում է «հավասարակշռություն»: Այլ կերպ ասած, անհատի ազատության նպատակը նրա հայացքներում, ըստ էության, դառնում է անազատություն, քանի որ այն ծառայում է վարձու ստրկության պահպանմանը:*

*Եվ այդ բոլորից հետո Թ. Պարսոնսը քննադատում է մարքսիզմի հայտնի դրույթը՝ «պրոլետարիատի դիկտատուրայի միջոցով» ազատության թռիչքի կազմակերպման մասին: Կուսակցության և պետության կողմից տարվող աշխատանքը, նոր հասարակական սիստեմի ստեղծումը գիտակցական-պլանային վերահսկման ենթարկելու գործում պարոն Պարսոնսն ու նրա կոլեգաները համարում են ոչ թե ազատ գործունեություն, ոչ թե սոցիալական ազատության դրսևորում, այլ զուտագույն կամայականություն:*

*Մինչդեռ բոլորովին այլ են արդյունքները: Մեր արդի նվաճումները, որոնք հանրագումարի են բերվում ՍՄԿԿ XXV համագումարի որոշումներում և նոր Սահմանադրության նախագծում, այն մեծ պլանները, որոնք կանխատեսում են մեր զարգացման մոտ ապագան և հեռանկարները, ցույց են տալիս, որ ոչ թե կամայականությունն է մեր զարգացման բանալին, այլ իրական շարժման օրենքների իմացությունը, ժողովրդական զանգվածների կենսական պահանջմունքների ուսումնասիրությունն ու նրանց բավարարման եղանակների մշակումը:*

*ՄԱՐՔՍ-ԼԵՆԻՆՅԱՆ ՓԻԼԻՍՈՓԱՅՈՒԹՅՈՒՆՆ իր սոցիալական դերի իրականացման, իր գործունեության ելակետային սկզբունքը համարում է այն ճըշմարտությունը, որ պատմության հիմնական կերտողը աշխատավոր ժողովուրդն է: Այն կուսակցությունը, որն իր առջև խնդիր է դրել հեղափոխականորեն վերափոխել հասարակական կյանքը և կառուցել աշխատավոր մարդկանց շահերին համապատասխան «մի նոր աշխարհ», իր գործունեության մեջ միշտ հետևում է աշխատավոր զանգվածների օբյեկտիվ շարժմանը, նրանց աճող պահանջմունքների բավարարմանը, կենդանի կապ պահպանում նրանց հետ: Զարգացած սոցիալիզմի պայմաններում աշխատավոր մարդիկ որակապես փոխվում են: Մի կողմից՝ գիտատեխնիկական հեղափոխության նվաճումներն արմատապես վերափոխում են մարդկանց աշխատանքային կարողությունները, փորձն ու հմտությունը, ձևավորվում են նոր տիպի աշխատավորներ, որոնք բարձր մասնագիտական կրթություն ու որակավորում են ստանում: Մյուս կողմից՝ վերափոխվում են նաև նրանց հոգևոր մակարդակն ու քաղաքացիական ակտիվությունը: Ժողովրդական զանգվածները դառնում են իրենց պատմության ակտիվ, գիտակից կառուցողները, նրանք ո՛չ միայն գիտակցում են իրենց աշխատանքի հասարակական նշանակությունը, այլև մասնակցում երկրի կառավարմանը, հանդես գալիս քննադատական դիտողություններով ու առաջարկություններով:*

*Շատ մեծ քննական վերլուծություն պետք չէ հասկանալու համար, որ այսպիսի քաղաքացիական ակտիվությունը բնորոշ է միայն այն երկրի ժողովրդական լայն զանգվածներին, որտեղ հասարակական ընդհանուր շահերի և նրա ամեն մի անդամի անձնական շահի միջև անհաշտելի հակասություններ չկան և* դրա շնորհիվ զարգացման ընդհանուր տենդենցը և յուրաքանչյուր մարդու նպատակը, կամքն ու ձգտումները համընկնում են: *Այդ հիման վրա է, որ մեր հասարակության մեջ, որպես նրա զարգացման ներքին օրինաչափություն, ծագում և արմատավորվում է* ինքնաքննադատությունը: Այն սոցիալական ազատության նոր դրսևորումներից է *և համաժողովրդական բնույթ ունի: Իրենց սեփական շարժման օրինաչափությունները գիտակցող աշխատավոր մարդկանց ինքնաքննադատության մեջ դրսևորվում է ո՛չ միայն նրանց քաղաքացիական ակտիվությունը. սոցիալական ու անհատական իմաստով այդ նշանակում է* նաև ինքնակառավարման և ինքնատիրապետության *նոր հատկանիշների ակտիվ դրսևորում: Ինչպես հայտնի է, նոր Սահմանադրության նախագծում խրախուսվում է սովետական մարդկանց այդպիսի հատկանիշների արմատավորումն ու զարգացումը: Նախագծի 7-րդ գլխի 49-րդ հոդվածում որոշակիորեն ասվում է, որ ՍՍՀՄ ամեն մի քաղաքացի իրավունք ունի պետական օրգաններում և հասարակական կազմակերպություններում հանդես գալ նրանց գործունեության բարելավման վերաբերյալ իր առաջարկություններով, քննադատել նրանց աշխատանքում եղած թերությունները: Պաշտոնատար անձինք պարտավոր են հաշվի առնել այդ դիտողությունները: Եվ որ ոչ պակաս կարևոր է, քննադատության ճնշումը և քննադատներին հետապնդելը պետականորեն արգելվում է:*

*Որպես սոցիալիստական դեմոկրատիայի և սովետական մարդու ազատության ակնհայտ դրսևորում, կարելի է մատնանշել նոր Սահմանադրության նախագծի համաժողովրդական քննարկումը մամուլում, ռադիոյով ու հեռուստատեսությամբ, ինչպես նաև ընդհանուր ժողովներում:*

*Զարգացած սոցիալիզմի երկրում ժողովրդական ազատությունների բոլոր նվաճումները հնարավոր չէ թվարկել ու բնութագրել: Միմիայն թշնամիները կարող են բամբասել և չնկատել ազատության այն մեծ թռիչքը, որ կատարել է մեր ժողովուրդը անցած 60 տարիների ընթացքում, տարիներ, որոնց մի զգալի մասը նա նվիրել է արտաքին թշնամիների դեմ զինված պայքարին:*

*Կոմունիստական շինարարության ընթացքում մեր երկրի ձեռք բերած ամենամեծ նվաճումը, նրա* ազատության պաշտպանության իսկական երաշխիքը իմը ժողովուրդն է, նոր, սովետական մարդը: *Ինչպես ՍՄԿԿ XXV համագումարում, այնպես էլ այս տարվա մայիսյան պլենումում Լ. Ի. Բրեժնևը, որպես նոր Սահմանադրության մեջ վավերագրված մեծ նվաճում, նշում է այն փաստը, որ* սովետական ժողովուրդը, որպես սոցիալական նոր հանրություն, *մեր պատմական զարգացման այս կարճատև շրջանի արդյունքն է, որն իր կյանքում իրականացրել է Կ. Մարքսի ու Ֆ. Էնգելսի* Կոմունիստական կուսակցության մանիֆեստի *թևավոր դրույթը՝ «յուրաքանչյուրի ազատ զարգացումը բոլորի ազատ զարգացման պայմանն է»: Սովետական մարդու ազատությունների, իրավունքների և պարտականությունների հավաստումը նոր Սահմանադրության նախագծում վկայում է մեր ժողովրդի անցած փառապանծ ուղու մասին: Սոցիալիզմի պայմաններում անհատական ազատությունն ընդհանուր ազատության կոնկրետ արտահայտությունն է, որը ո՛չ միայն չի նվազեցնում անհատի ակտիվությունը, նախաձեռնությունն ու ստեղծագործական կարողությունները, այլ ընդհակառակը, պարունակում է ներքևից եկող ակտիվության բոլոր դրական դրսևորումները՝ որպես հասարակության էությունից բխող նորարարություն: Ինչպես XXV համագումարի, այնպես էլ նոր Սահմանադրության նախագծի քննարկման նյութերում նշվում է այն փաստը, որ մեր երկրի 60-ամյա ուղու հանրագումարն է նոր,* սովետական մարդը, «...որ կարողացավ ազատությունը նվաճելուց հետո այն պաշտպանել ամենածանր մարտերում» **(ՍՄԿԿ XXV համագումարի նյութեր, *էջ 131*):**

*Ինչպես երևում է, երկու սիստեմների գաղափարական պայքարը դեռևս տևական է լինելու: Սակայն որքան էլ այն տևի, ապագան աշխատավոր մարդկության է, քանի որ նրա գոյությունը, մարդկության ազատության ու երջանկության ձգտումը ուրիշ այլ ճանապարհ չունի, քան կոմունիզմի հաղթանակը:*

խատող մարդուն, բոլորովին այլ՝ ներկայացնել ժամանակակից էլեկտրոնային հաշվիչ մեքենաների կառավարման վահանակի մոտ կանգնած, խոշոր ձեռնարկության տեխնոլոգիական պրոցեսները վարող մարդու խոհերը, ապրումները, զգացմունքները: Մենք գործ ունենք խիստ անհատական օբյեկտների հետ— մարդկանց հետ. մարդը՝ այդ ամբողջ և անկրկնելի աշխարհն է, տիեզերքը»:

Մարդու հոգևոր աշխարհի բարդությանը, գիտատեխնիկական հեղափոխության պայմաններում նրա հասարակական փոխհարաբերություններին, մարդ—հասարակություն—արտադրություն, ղեկավար—ենթակա կապերին, գրականության և նրա հերոսների դաստիարակչական դերին էր նվիրված «Լիտերատուրնայա գազետա»-ի կազմակերպած «կլոր սեղանը», որին մասնակցում էին ակադեմիկոս Վ. Համբարձումյանը, քննադատ Յու. Անդրեևը և վրաց արձակագիր Գ. Փանջիկիձեն: Խոսելով մարդու վեհության, նրա հոգևոր արժույքների մասին՝ Վ. Համբարձումյանը շեշտեց. «Մենք տեսնում ենք, որ երկիրը, ֆիզիկական առումով, երկնային մարմիններից ամենաչնչինն է՝ աստղերի գալակտիկայի և այլնի համեմատությամբ: Բայց եկեք զննենք հարցը մյուս կողմից: Չէ՛ որ մարդը, որն ապրում է այդ աննշան ավազահատիկի վրա, ունակ է մտածելու, և նրա միտքն արդեն հասել է հեռավոր գալակտիկաներին: Նա սովորել է համակողմանի ինֆորմացիա ստանալ դրանց կազմության մեխանիզմի մասին: Նշանակում է՝ մարդը հզոր է, քանզի հզոր են նրա գործերը: Գնահատելով մարդու հոգևոր հզորությունը, հատկապես նրա՝ շրջակա բնությունը ճանաչելու վիթխարի ունակությունը, համոզվում ենք, թե որքան կարող է նա...». Որպես արվեստի կողմից գիտնականների հոգեբանության խոր ըմբռնման լավագույն օրինակ Վ. Համբարձումյանը նշում է *Մեկ տարվա ինն օրը* կինոնկարը. «Իմ անձնական փորձն ասում է,— շեշտում է ակադեմիկոսը,— որ մարդկանց հասկանալն ավելի դժվար է, քան աստղային աշխարհի երևույթների ըմբռնումը» (տե՛ս «Литературная газета», 25 սեպտեմբերի, 1974 թ.):

Գրական երկերի հերոսները կյանքի իմաստը փնտրում են աշխատանքում և սխրանքներում: Հանքերում, տափաստաններում, կառույցներում, ռազմի դաշտում մարդն առանձնանում է, հոգեպես աճում, վերափոխվում, դառնում անհատ:

Իր ելույթներից մեկում՝ ներկայացնելով *Սևանի լուսաբացը* վեպի հերոսին՝ հորատող Գևորգ Դալլյանին, Ս. Խանզադյանը նշել է. «Երե իրականության մեջ հաճախ ենք հանդիպում այսպիսի մարդկանց, ապա գրականության մեջ, իմ կարծիքով, նրանք դեռևս քիչ են»:

Միանգամայն ճիշտ նշվեց Հայաստանի կոմունիստական կուսակցության Կենտկոմի՝ 1976 թ. հոկտեմբերյան պլենումում. «Արվեստագետների պարտքն է կերտել բարձր գաղափարայնությամբ, գեղարվեստական մեծ արժանիքներով աչքի ընկնող ստեղծագործություններ, որոնք մարդկանց սնունդ տան խորհրդածությունների և հետևությունների համար, օգնեն նրանց ճիշտ դիրքավորում ունենալու, հարստացնեն նրանց հոգևոր աշխարհը, մոբիլիզացնեն աշխատանքային նոր սխրանքների»:

Ռեալ հումանիզմի՝ սոցիալիզմի հասարակարգի գլխավոր արժեքը աշխատավոր մարդն է, որի ստեղծարար ջանքերով ծաղկում ու հզորանում է մեր սոցիալիստական հայրենիքը և այդ նվիրական գործում մեծ ու բազմաբովանդակ են գեղարվեստական գրականության անելիքները:

Սովետական գրողները, ջերմորեն արձագանքելով ՍՄԿԿ Կենտկոմի՝ «Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխության 60-րդ տարեդարձի մասին» որոշմանը, կաշխատեն իրենց ստեղծագործություններում «վառ կերպով ցույց տալ սովետական մարդկանց աշխատանքային և քաղաքական ակտիվությունը կոմունիստական շինարարության հոյակապ պլանների կենսագործման, կուսակցության XXV համագումարի պատմական որոշումների կատարման պայքարում, բանվոր դասակարգի, կոլտնտեսային գյուղացիության և ժողովրդական մտավորականության անձնվեր աշխատանքի սոցիալական հսկայական նշանակությունը, ըստ ամենայնի պրոպագանդել կուսակցության տնտեսական ստրատեգիան և սոցիալական քաղաքականությունը»:




# ՎԵՐԱՓՈԽՈՒՄՆԵՐԻ ԵՎ ԲԱՐԳԱՎԱՃՄԱՆ ՈՒՂԻՈՎ

**Պ. Ռ. ԱՐԶՈՒՄԱՆՅԱՆ**
ՀՍՍՀ պետպլանի նախագահի տեղակալ,
գյուղատնտեսական գիտությունների դոկտոր

**Ա. Կ. ԱՅՐՈՒՄՅԱՆ**
Տնտեսական գիտությունների դոկտոր

*ՍՈՎԵՏԱԿԱՆ ԺՈՂՈՎՈՒՐԴԸ, ողջ առաջադեմ մարդկությունը պատրաստվում են հանդիսավորությամբ նշելու մեծ Հոկտեմբերի վաթսունամյակը: «Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխության 60-րդ տարեդարձի մասին» ՍՄԿԿ Կենտկոմի որոշման մեջ տրված է աշխարհում առաջին սոցիալիստական պետության ստեղծման ու զարգացման գործում կոմունիստական կուսակցության, սովետական ժողովրդի մղած պայքարի արդյունքների խոր վերլուծությունը:*

*Մեր երկրի ժողովուրդները Հոկտեմբերյան հեղափոխության վաթսունամյակը դիմավորում են եղբայրական բարեկամության, համակողմանի համագործակցության իրադրության մեջ, հասարակության սոցիալիստական վերափոխման գործում ձեռք բերած աչքի ընկնող արդյունքներով: Հոկտեմբերյան հեղափոխությունը բացառիկ կարևոր դեր կատարեց մեր երկրի բոլոր ժողովուրդների ճակատագրում: Մարդկության պատմության մեջ նա բացեց նոր դարաշրջան՝ կապիտալիզմի խորտակման և նոր, սոցիալիստական հասարակարգի հաստատման դարաշրջանը: Հոկտեմբերյան հեղափոխությունը շեշտակի շրջադարձ առաջացրեց մեր երկրի բոլոր ազգերի ու ժողովուրդների ստեղծագործական ուժերի զարգացման գործում:*

*ՍՄԿԿ XXV համագումարում տված հաշվետու զեկուցման մեջ Լ. Ի. Բրեժնևն ասաց. «Մենք ստեղծել ենք նոր հասարակարգ, մի այնպիսի հասարակարգ, որի նմանը մարդկությունը դեռ չէր իմացել: Դա անճգնաժամ, մշտապես աճող էկոնոմիկայի, սոցիալիստական հասուն հարաբերությունների, իսկական ազատության հասարակարգ է: Դա մի հասարակարգ է, որտեղ տիրապետում է գիտական մատերիալիստական աշխարհայացքը: Դա մի հասարակարգ է, որն անսասանորեն վստահ է ապագայի, կոմունիստական*

լուսավոր հեռանկարներին։ Մեր առջև բաց են հետագա համակողմանի առաջադիմության անծայրածիր հեռաստանները» (ՍՄԿԿ XXV համագումարի նյութերը, էջ 130—131)։

Սովետական պետության գոյության վաթսուն տարում, որոնց մոտ երկու տասնամյակը մեր ժողովրդին պարտադրված պատերազմների և վերականգնման տարիներն են, անճանաչելիորեն փոխվել է երկրի ժողովրդական տնտեսությունը։ Բավական է ասել, որ այժմ երկու և կես օրում երկրի արդյունաբերությունն արտադրում է նույնքան արտադրանք, որքան արտադրում էր ամբողջ 1913 թվականին, գյուղատնտեսական արտադրանքի ծավալն աճել է 4,4 անգամ։

***

Սովետական Հայաստանը՝ մեծ Հոկտեմբերի ծնունդը, ժողովրդի ազգային վերածննդի փայլուն օրինակներից մեկն է։ Սովետական իշխանության հաստատումից հետո երիտասարդ հանրապետության առջև ծառացավ մի բարդ խնդիր՝ կարճ ժամկետում վերացնել էկոնոմիկայի դարավոր հետամնացությունը, ստեղծել արտադրամիջոցների հասարակական սեփականության վրա հիմնված արտադրության նոր, սոցիալիստական եղանակ, ապահովել ժողովրդական տնտեսության բոլոր ճյուղերի անընդմեջ հարաճուն զարգացումը և ժողովրդի նյութական ու կուլտուրական մակարդակի անշեղ բարձրացումը։

Սոցիալ-տնտեսական արմատական վերափոխումներ են տեղի ունեցել նաև Հայաստանի գյուղատնտեսության բնագավառում։ Այն ավելի լավ պատկերացնելու և գնահատելու համար բերենք միայն մի քանի տվյալներ, որոնք բնութագրում են ժողովրդական տնտեսության այդ կարևոր ճյուղի վիճակը նախահեղափոխական ժամանակաշրջանում։

Մինչև սովետական իշխանության հաստատումը, Հայաստանը եղել է ագրարային երկիր։ Բնակչության 89 տոկոսը զբաղվում էր գերազանցապես գյուղատնտեսությամբ։ Ամբողջ համախառն արտադրանքի մեջ 1913 թվականին արդյունաբերության բաժինը, ներառյալ և տնայնագործական ձեռնարկությունները, կազմում էր 23, իսկ գյուղատնտեսությանը՝ 77 տոկոս։

Անցյալում Հայաստանի գյուղատնտեսության համար բնորոշ էր ագրոտեխնիկայի չափազանց ցածր մակարդակը՝ պրիմիտիվ տեխնիկայով։ Գյուղատնտեսության միակ շարժիչ ուժը բանող անասունն էր։ Ցանքատարածությունները զբաղված էին հիմնականում հացահատիկային կուլտուրաներով (89,2 տոկոսը), որը պայմանավորված էր գյուղացիների ձգտումով՝ սակավահողության պայմաններում ապահովել ընտանիքի պահանջմունքներն առաջին հերթին սեփական հացով։ Միակողմանի հացահատիկային տնտեսությունը, հողագործության չափազանց ցածր տեխնիկայի առկայությամբ, պայմանավորում էր գյուղատնտեսական կուլտուրաների բերքատվության անընդհատ անկումը։ Հացահատիկային կուլտուրաների միջին բերքատվությունը 1909—1913 թթ. կազմում էր հեկտարից 5,8 ցենտներ։ Շատ ցածր մակարդակի վրա էր գտնվում նաև անասնապահությունը։

Արտադրության սոցիալիստական սիստեմը և ժողովրդական տնտեսության ղեկավարման գործում Սովետական Միության կոմունիստական կուսակցության վարած տնտեսական քաղաքականությունը նպաստեցին գյուղատնտեսության տնտեսական քայքայման վերացմանն ու նրա հետագա անընդմեջ զարգացմանը։ Ձեռնարկված միջոցառումների շնորհիվ Հայաստանում կարճ ժամանակամիջոցում գյուղատնտեսությունը հասավ 1913 թվականի մակարդակին, իսկ արդեն 1928 թվականին այն գերազանցեց ավելի քան 10 տոկոսով։

Սակայն մանր, մասնատված գյուղացիական տնտեսության պայմաններում պահանջվեց կատարել հսկայական աշխատանք՝ լուծել գյուղատնտեսության սոցիալ-տնտեսական վերակառուցման ամենադժվարին խնդիրներից մեկը՝ կոլեկտիվացումը, որը սոցիալիստական հեղափոխության կարևորա-



գույն բաղկացուցիչ մասն էր։ Գյուղի արմատական վերակառուցման հիմքում դրվեց լենինյան նշանավոր կոոպերատիվ պլանը։

Խոշոր սոցիալիստական գյուղատնտեսական ձեռնարկությունների՝ սովխոզների և կոլտնտեսությունների կազմակերպումը լայն հնարավորություններ ստեղծեց գյուղատնտեսության արտադրաուժերի զարգացման համար։

Ծանր ինդուստրիայի, մեքենաշինության, քիմիական և արդյունաբերության մի քանի այլ ճյուղերի զարգացումը երկրում նպաստեց գյուղատնտեսության նյութատեխնիկական բազայի նշանակալի ամրապնդմանը, նրա վերելքի գլխավոր ուղու՝ ինտենսիվացման իրականացմանը։ Գյուղատնտեսության նյութատեխնիկական ապահովման մասշտաբներն առանձնապես մեծ չափով աճեցին ՍՄԿԿ Կենտկոմի 1965 թվականի մարտյան պլենումից հետո. պլենումի մշակած միջոցառումներն ուղղված էին գյուղատնտեսության տեխնիկական վերազինման, էլեկտրիֆիկացման, հողերի մելիորացման, քիմիացման, արտադրության մեջ գիտության ու առաջավոր պրակտիկայի նվաճումների լայն արմատավորման նպատակներին։

Գյուղատնտեսության զարգացման տեմպերի արագացումն ապահովելու, դրա արդյունավետությունը բարձրացնելու և սոցիալ-տնտեսական մյուս խնդիրները լուծելու համար պահանջվեցին պետական և կոլտնտեսային կապիտալ ներդրումների հարաճուն ծավալներ։ Վերջին տասը տարում Հայաստանի գյուղատնտեսության բնագավառում կատարված կապիտալ ներդրումների ծավալը գերազանցեց 1,5 մլրդ ռուբլուց, որը մոտավորապես երկու անգամ ավելի էր մինչև 1965 թվականը կատարված բոլոր ներդրումներից։ Հայաստանի գյուղատնտեսությունը դարձավ ժամանակակից տեխնիկայով հագեցված, բարձր մեքենայացված արտադրություն։ Բավական է նշել, որ վարելահողի յուրաքանչյուր 22 հեկտարին ընկնում է մեկ տրակտոր (15 ուժայինի վերածված), հացահատիկային ցանքսերի 110 հեկտարին՝ մեկ կոմբայն։ Միայն 1971—1975 թթ. հանրապետության գյուղատնտեսությունն ստացել է 7,8 հազար տրակտոր, 8,7 հազար բեռնատար ավտոմոբիլ, մեծ քանակությամբ այլ տեխնիկա և սարքավորումներ, ներառյալ և անասնապահության արտադրապրոցեսների մեքենայացման համար նախատեսված սարքավորումները։

Էլեկտրիֆիկացման զարգացման մեծ մասշտաբների շնորհիվ էլեկտրաէներգիան դարձել է գյուղատնտեսության տեխնիկական առաջընթացի և գյուղական բնակչության կուլտուր-կենցաղային պայմանների բարելավման կարևոր գործոն։

Գյուղատնտեսության մեջ կատարված տեխնիկական հեղափոխության բնույթի մասին են վկայում էներգետիկ ռեսուրսների կառուցվածքի տվյալները։ Այսպես, եթե նախասովետական շրջանում Հայաստանի գյուղատնտեսության միակ շարժիչ ուժը բանող անասունն էր, ապա 1975 թ. էներգետիկ ռեսուրսների շարքում մեխանիկական և էլեկտրական շարժիչները կազմում էին 99,9 տոկոս։ Դա նշանակում է, որ բանող անասունի բաժինը (մեքենայական ուժի վերածված) 1913 թվականի 100 տոկոսի դիմաց այժմ կազմում է մեկ տոկոսից էլ պակաս։ 1975 թվականին հանրային արտադրության էներգազինվածությունը, վարելահողերի 100 հեկտարի հաշվով, կազմեց 438 ձիաուժ։

Արտադրության տեխնիկական հագեցումը հեշտացրեց գյուղատնտեսության աշխատողների գործը, բարձրացրեց աշխատանքի արտադրողականությունը, նպաստեց աշխատանքների կատարմանն ավելի սեղմ ժամկետներում և ավելի բարձր որակով։ Այդ ամենն իրենց հերթին ապահովեցին գյուղատնտեսական կուլտուրաների բերքատվության և համախառն բերքի աճը։

Գյուղատնտեսության ինտենսիվացման կարևորագույն գործոններից մեկը հողերի ոռոգումն է։

Վ. Ի. Լենինը, բացառիկ նշանակություն տալով ոռոգմանը, 1921 թվականին Ադրբեջանի, Վրաստանի, Հայաստանի, Դաղստանի, Լեռնականների հանրապետության կոմունիստ ընկերներին ուղղված նամակում ուշադրություն հրավիրեց իռիգացիայի՝ որպես հարուստ երկրամասի արտադրա-

ումների զարգացման աղբյուրի վրա։ «Ոռոգումը հատկապես կարևոր է,— գրում էր Լենինը,— հողագործության ու անասնապահության ինչ գնով էլ լինի բարձրացնելու համար»։ Եվ, այնուհետև. «Ոռոգումն ամենից ավելի է պետք և ամենից ավելի կվերստեղծի երկիրը, կվերածնի նրան, կթաղի անցյալը, կամրապնդի անցումը դեպի սոցիալիզմ» (Երկեր, հ. 32, էջ 404)։

Հայաստանի տարածքի մեծագույն մասում, առանձնապես վեգետացիոն շրջանում, մթնոլորտային տեղումների շատ սահմանափակ քանակության պայմաններում գյուղատնտեսական արտադրության զարգացման և մասնագիտացման մակարդակը զգալի չափով կախված է ոռոգելի ջրով հողերի ապահովված լինելուց։

Հին ջրանցքները վերականգնելու և նորերը կառուցելու նպատակով ծավալված լայն աշխատանքների շնորհիվ արդեն 1928 թ. ոռոգվող հողատարածությունները կազմում էին 110 հազար հեկտար՝ 1913 թ. 97 հազար և 1919 թ. 60 հազար հեկտարի դիմաց։

Սովետական տարիներին Հայաստանում կառուցվել են մեծ թվով նորագույն տիպի ջրանցքներ։ Դրանք են՝ ամենից առաջ Շիրակի ջրանցքը՝ 11,7 հազար հեկտար ոռոգման տարածությամբ, Հոկտեմբերյանինը՝ 25 հազար, Արտաշատինը՝ 28,5 հազար, Արզնի—Շամիրամինը՝ 25 հազար, Էջմիածնինը՝ 22 հազար, Ստորին Հրազդանինը՝ 10 հազար հեկտար։ Կառուցվել են խոշոր ջըրհան կայաններ ու ջրամբարներ. աշխատանքներ են սկսվել Արարատյան հարթավայրի հողերն աղազրկելու և դրանք գյուղատնտեսական շրջանառության մեջ դնելու ուղղությամբ։

Ջրատնտեսային շինարարության մեջ պետական մեծ միջոցների ներդրման շնորհիվ ոռոգելի հողատարածությունը գերազանցել է 300 հազար հեկտարից, ջրարբիացվել են մոտավորապես 370 հազար հեկտար ամառային արոտավայրեր, մեծ տարածությունների վրա տարբեր տեսակ միջոցառումներ են կիրառվում բնական արոտավայրերի տեխնիկական վիճակը բարելավելու համար և այլն։

Կարևոր նշանակություն տալով հողի բերրիության մշտական բարձրացմանը, կոմունիստական կուսակցությունը և սովետական կառավարությունը մեծ ուշադրություն են դարձնում երկրում գյուղատնտեսության քիմիացման միջոցներ արտադրող արդյունաբերության զարգացման տեմպերն արագացնելու խնդրին։ Վերջին երկու հնգամյակում զգալիորեն մեծացել են այդ արդյունաբերության զարգացման համար կատարված կապիտալ ներդրումների ծավալները։ Դրա շնորհիվ տարեցտարի զգալիորեն աճում են հանքային պարարտանյութերի և քիմիացման այլ միջոցների մատակարարումները գյուղատնտեսությանը։ 1975 թ. Հայաստանի գյուղատնտեսությունն ստացել է 362 հազար տոննա պայմանական միավոր պարարտանյութ՝ 1965 թ. 142 հազար տոննայի փոխարեն։

Գյուղատնտեսության ինտենսիվացման կարևոր գործոն են արտադրության մասնագիտացումն ու համակենտրոնացումը։ Եթե նախասովետական շրջանում որոշ պայմանների ու պատճառների հետևանքով բացառվում էր արտադրության անբանական հատկանիշներ ունեցող գյուղատնտեսության ռացիոնալ մասնագիտացման հնարավորությունը, ապա Սովետական Հայաստանում, առանձնապես վերջին 12 տարում, զգալի փոփոխություններ տեղի ունեցան գյուղատնտեսական արտադրության տեղաբաշխման, մասնագիտացման ու համակենտրոնացման գործում։

Այդ միջոցառումների իրականացման համար ակտիվ ներգործություն են ունենում գյուղատնտեսության նյութատեխնիկական բազայի սիստեմատիկ ամրապնդումը, արտադրանքի գնումների առաջադրանքների պետական պլանավորման սիստեմի բարելավումը, արդյունաբերական հիմքի վրա պետական խոշոր անասնապահական կոմպլեքսների, թռչնաբուծական ֆաբրիկաների, ջերմոցային տնտեսությունների շինարարությունը, միջտնտեսային կոոպերացման զարգացումը։ Առավել խոշոր օբյեկտներից հարկավոր է նշել Եղվարդի անասնապահական կոմպլեքսը՝ տարեկան 10 հազար գլուխ խոշոր եղ-



ջերավոր անասունների մատղաշի բտման կարողությամբ, Սովետաշենի խոզաբուծական ֆաբրիկան՝ 24 հազար գլխի համար և Թալինի երկու խոզաբուծական ֆաբրիկաները՝ 24 հազար և 54 հազար գլխի համար, տարեկան 185 մլն ձու և 11 հազար տոննա թռչնի միս արտադրող թռչնաբուծական ֆաբրիկաները։

Ձեռնարկված միջոցառումների շնորհիվ հնարավորություն ստեղծվեց ավելի լրիվ ու ռացիոնալ օգտագործել բարենպաստ պայմանները՝ ընդհանուր միութենական մասնագիտացման ճյուղերը՝ խաղողագործությունը, պտղաբուծությունը, բանջարաբուծությունը, ծխախոտագործությունը և եթերային յուղի արտադրությունը զարգացնելու և այդ բազայի վրա գինու-կոնյակի, պահածոների և ծխախոտի արդյունաբերությունն զգալիորեն բարելավելու համար։

Նկատի ունենալով գյուղատնտեսական մթերքների բնագավառում եղած տեղական պահանջմունքները, հանրապետությունում մեծ աշխատանք է կատարվել նաև մսի, կաթի, բանջարեղենի, բոստանային կուլտուրաների, կարտոֆիլի, խաղողի, պտուղների, ձվի և այլ մթերքների նկատմամբ բնակչության հարաճուն պահանջարկն ապահովելու նպատակով։ Միաժամանակ, մասնագիտացման պլանով մեծ հաջողություններ են ձեռք բերվել հացահատիկի, մսի, ձվի և գյուղատնտեսական այլ մթերքների արտադրության գործում։

Գյուղատնտեսության զարգացման այդպիսի ընթացքի շնորհիվ ամեն տարի պլանաչափորեն, պարենային ապրանքների միջհանրապետական ապրանքաշրջանառության ծավալներն ընդլայնելով ավելանում է գինու-կոնյակի, պահածոների, ծխախոտի արդյունաբերության արտադրանքի, եթերային յուղի, շվեյցարական պանրի, ինչպես նաև խաղողի, մրգերի ու բանջարեղենի արտահանումը երկրի խոշոր քաղաքները։ Միաժամանակ ապահովվում են հանրապետության բնակչության պահանջմունքները շուտ փչացող սննդամթերքների բնագավառում։ Աշխատանքի տերիտորիալ բաժանման կարգով ներմուծվում է որոշ գյուղատնտեսական մթերքների պակասող մասը։

Գյուղատնտեսական արտադրության առաջավոր ճյուղեր դարձած խաղողագործության և պտղաբուծության առանձնահատուկ տեղը հանրապետության գյուղատնտեսության մեջ պայմանավորված է ո՛չ միայն բնական բարենպաստ պայմանների առկայությամբ, այլև տնտեսական բարձր արդյունավետությամբ։ Սովետական իշխանության տարիներին խաղողի և պտղատու այգիների տարածությունը հանրապետությունում ընդլայնվել է գրեթե 7 անգամ և հասել 88 հազար հեկտարի, բարձրացել է բերքատվությունը, ավելացել խաղողի ու պտուղների արտադրությունը։ Հայաստանում աճեցվում են խաղողի, դեղձի և ծիրանի բարձրորակ տեսակներ։ Իրենց հատկություններով ընդհանուր ճանաչում են գտել Հայաստանի կոնյակները և դեսերտային գինիները։ 1975 թ. ընդհանուր միութենական արտադրության մեջ Հայաստանի կոնյակների տեսակարար կշիռը կազմեց 14, տեսակավոր գինիներինը՝ 10 տոկոս։

Հայաստանի դաշտավարության էքստենսիվ, միակողմանի զարգացումը նախասովետական շրջանում միայն հացահատիկի արտադրությամբ, սովետական իշխանության տարիներին փոխարինվեց մասնագիտացված ինտենսիվ հողագործության կազմակերպմամբ։ 1913 թ. համեմատությամբ, ընդլայնվել է ցանքատարածությունը, արմատապես բարելավվել դաշտավարության կառուցվածքը, ագրոտեխնիկան և հողագործությունը ժամանակակից տեխնիկական հիմքի վրա փոխադրելու շնորհիվ զգալիորեն բարձրացել է գյուղատնտեսական կուլտուրաների բերքատվությունը և ավելացել համախառն արտադրանքը։

Տեխնիկական կուլտուրաների շարքում կարևոր տեղ է գրավում ծխախոտը։ 1975 թ. ապահովվեց 15,6 հազար տոննա ծխախոտի տերևի արտադրություն։ Այս կուլտուրան, բառի էությամբ, զարգացել է միայն սովետական իշխանության տարիներին, քանի որ 1913 թ. արտադրվել էր ընդամենը 70 տոննա,

և այն էլ ցածրորակ։ Նոր կուլտուրաներ են նաև շաքարի ճակնդեղն ու եթերայուղային կուլտուրան՝ խորդենին։ Դրանց հումքի վերամշակումն իրականացվում է հանրապետությունում կառուցված ծխախոտի ֆաբրիկաներում, շաքարի և եթերայուղերի գործարաններում։

Բանջարաբուծության նշանակալի զարգացումը նպաստեց բնակչությանը բանջարեղեն մատակարարելու գործի բարելավմանը և պահածոների արդյունաբերության հումքային ռեսուրսների անընդմեջ ավելացմանը։ Բնակչության մեկ շնչի հաշվով, 1975 թ. արտադրվել է 110 կգ բանջարեղեն և 27 կգ բոստանային կուլտուրա։

Որոշակի են հաջողությունները անասնապահության զարգացման գործում։ 1916 թ. համեմատությամբ, կովերի գլխաքանակն ավելացել է 18 տոկոսով, ոչխարներինը՝ 2, խոզերինը՝ 11 անգամ։ Նախասովետական շրջանի համեմատությամբ, աննախընթաց զարգացել է թռչնաբուծությունը։ Էականորեն բարելավվել է խոշոր եղջերավոր անասունների հոտի կառուցվածքը։ Եթե 1916 թ. գոյություն ունեցած բացարձակ պրիմիտիվ տեխնիկայի պատճառով հարկ էր լինում պահել մոտ 250 հազար գլուխ բանող եզ, ապա ներկայումս, գյուղատնտեսական և տրանսպորտային աշխատանքների մեքենայացման շնորհիվ հիմնականում բուծվում են մթերատու անասուններ։ Սակավաթիվ բարելավված անասունների փոխարեն, որ այն ժամանակ բերում էին Ռուսաստանից վերաբնակեցվածները, այժմ անասունների գերակշիռ մասը (ավելի քան 90 տոկոսը) ցեղային է ու բարելավված։ Զգալիորեն բարձրացել է անասունների մթերատվությունը։

Արմատական փոփոխություններ են տեղի ունեցել անասնապահության կերային բազայի զարգացման գործում։ 1913 թ. համեմատությամբ, կերային կուլտուրաների տարածություններն ավելացել են 44 անգամ։ Անասունների կերային բաժինը համալրվել է սիլոսով, կերային արմատապտուղներով, համակցված, կենդանական ծագում ունեցող կերով և այլն։

Սովետական իշխանության տարիներին հայկական գյուղում տեղի ունեցած սոցիալ-տնտեսական արմատական վերափոխումների շնորհիվ շեշտակիորեն ավելացել է գյուղատնտեսական մթերքների արտադրությունը։ Այդ բանը երևում է ստորև բերված աղյուսակի տվյալներից։

Հայկական ՍՍՀ-ում գյուղատնտեսական արտադրանքի արտադրության աճը սովետական իշխանության տարիներին *(հազար տոննա)*

| | 1913 թ. | 1975 թ. | 1975 թ.՝ 1913 թ. նկատմամբ (անգամ) |
|---|---|---|---|
| Հացահատիկ | 174 | 296 | 1,7 |
| Ծխախոտ | 0,07 | 15,6 | 222,0 |
| Շաքարի ճակնդեղ | — | 154 | — |
| Բանջարեղեն և բոստանային կուլտուրաներ | 47,4 | 377 | 8,0 |
| Կարտոֆիլ | 47,4 | 190 | 4,2 |
| Խաղող | 58,5 | 206 | 3,5 |
| Պտուղներ | 14,7 | 161 | 11,0 |
| Միս (կենդանի քաշով) | 33,5 | 112 | 3,3 |
| Կաթ | 129 | 411 | 3,2 |
| Բուրդ | 2,3 | 4,9 | 2,1 |
| Ձու (մլն հատ) | 54,0 | 353 | 6,6 |

Սովետական իշխանության տարիներին Հայաստանի գյուղատնտեսության զարգացման ընդհանուր ցուցանիշն ամբողջ համախառն արտադրանքի արժեքն է, որը 1973 թ. համադրելի գներով 1913 թ. մակարդակը գերազանցել է գրեթե 6,7 անգամ և կազմել 683,2 մլն ռուբլի։



Գյուղատնտեսական արտադրության այդպիսի աճը գյուղատնտեսության սոցիալիստական սիստեմի առավելությունների վառ վկայությունն է։ Դա Սովետական Միության կոմունիստական կուսակցության քաղաքական ու կազմակերպական վիթխարի աշխատանքի, գյուղի աշխատավորների անձնվեր աշխատանքի արդյունքն է։ Այդ աշխատավորներն անճանաչելիորեն փոխվել են և հսկայական եռանդով, գիտելիքներով ու հմտություններով նորանոր հաջողություններ են ձեռք բերում կուսակցության առաջադրած խնդիրների լուծման գործում։

Մեծ նվաճում էր գյուղի աշխատավորների բարեկեցության նշանակալի աճը։ Գյուղացիների ռեալ եկամուտներն ամբողջ երկրում, միջին հաշվով, ավելացել են 14 անգամ։ Գյուղատնտեսության և միջհանրապետական ապրանքաշրջանառության զարգացումը, գյուղական բնակչության ռեալ եկամուտների բարձրացման պայմաններում, նպաստեց սննդամթերքների սպառման նշանակալի աճին և կառուցվածքի որակական բարելավմանը, ձեռք բերվող արդյունաբերական ապրանքների հարաճուն ծավալին։ Քաղաքի և գյուղի միջև եղած սոցիալ-տնտեսական և կուլտուր-կենցաղային տարբերությունների վերացման ուղղությամբ հետևողականորեն կիրառվող կուրսն ապահովեց վիթխարի փոփոխություններ այդ բացառիկ կարևոր գործում։ Ըստ էության, գյուղում տեղի ունեցավ կուլտուրական հեղափոխություն։ Լրիվ վերացվել է գյուղացիների անգրագիտությունը, ամենուրեք իրականացվում է ընդհանուր պարտադիր միջնակարգ ուսուցումը, այն ժամանակ, երբ 1914—1915 ուսումնական տարում Հայաստանի գյուղական դպրոցներում սովորում էր ընդամենը 27 հազար աշակերտ։ Մեծ թվով գյուղական երիտասարդներ ավարտել են կամ սովորում են բարձրագույն ուսումնական հաստատություններում, տեխնիկումներում, մասնագիտացված դպրոցներում և ուսումնարաններում, մի բան, որ բոլորովին չկար Հայաստանում մինչև սովետական կարգերի հաստատումը։ Մասնագետներից բացի, սոցիալիստական գյուղատնտեսության մեջ աճել են հիանալի կադրեր, որոնք տիրապետել են բարձր մեքենայացված խոշոր գյուղատնտեսական արտադրությունը ղեկավարելու մեթոդներին։

Գյուղատնտեսության ղեկավարման սիստեմը հետևողականորեն կատարելագործելու և հայրենական գիտությունը հարստացնելու նպատակով Հայաստանում ստեղծվել է գյուղատնտեսական ինստիտուտ և գյուղատնտեսական գիտահետազոտական հիմնարկությունների լայն ցանց։

Արմատական փոփոխություններ են տեղի ունեցել նաև գյուղի բժշկական սպասարկման բնագավառում։ Ընդհանուր առմամբ անճանաչելիորեն փոխվել է գյուղի դեմքը։

Սրանք են ընդհանուր գծերով Հայկական ՍՍՀ գյուղատնտեսության բնագավառում տեղի ունեցած սոցիալ-տնտեսական արմատական վերափոխումները մեծ Հոկտեմբերի վաթսունամյակի նախօրյակին։

***

Մեծ Հոկտեմբերի հիսունամյակին նվիրված հանդիսավոր նիստում կարդացած զեկուցման մեջ ընկեր Լ. Ի. Բրեժնևն ասաց. «Սովետական մարդկանց համար ձեռք բերված արդյունքները արդեն կատարված աշխատանքի չափանիշը չեն միայն։ Դրանք միաժամանակ այն բնագիծն են, որի բարձունքներից մենք նայում ենք ապագային, որոշելով մեր խնդիրներն ու հեռանկարները» (Լ. Ի. Բրեժնև, Լենինյան կուրսով, հ. 2, էջ 135)։

Այժմ հանրապետությունում, ամբողջ երկրում կատարվող ողջ աշխատանքն ուղղված է կուսակցության XXV համագումարի պատմական որոշումների հաջող կենսագործմանը, տասներորդ հնգամյակի պլանների կատարմանը, արդյունաբերական և գյուղատնտեսական արտադրության հետագա աճի ապահովմանը, տեխնիկական առաջընթացի արագացմանը, աշխատանքների արդյունավետության և որակի բարձրացմանը, ժողովրդի կյանքի նյութական և կուլտուրական մակարդակի անշեղ վերելքին։

Կուսակցության XXV համագումարի մշակած կոմպլեքսային ծրագրում և

«Միջտնտեսային կոոպերացման և ագրոարդյունաբերական ինտեգրացման բազայի վրա գյուղատնտեսական արտադրության մասնագիտացումն ու համակենտրոնացումը է՛լ ավելի զարգացնելու մասին» ՍՄԿԿ Կենտկոմի որոշման մեջ նշված են գյուղատնտեսության զարգացման գլխավոր ուղղությունները: Այդ փաստաթղթերում արտահայտված է մեր կուսակցության կուրսը՝ գյուղատնտեսությունը դարձնել սոցիալիստական էկոնոմիկայի առաջավոր ճյուղ և գյուղերը վերածել քաղաքատիպ բնակավայրերի՝ համապատասխան բնակարանային և կուլտուր-կենցաղային պայմաններով:

Այս ամենի շնորհիվ հանրապետության գյուղատնտեսության բնագավառում մեծ խնդիրներ են լուծվելու տասներորդ հնգամյակում: Ընդունված պլանի համաձայն նախատեսված է 1980 թ. 1975 թ. համեմատությամբ գյուղատնտեսության համախառն արտադրանքի ծավալը մեծացնել 24,9 տոկոսով և հասցնել 853 մլն ռուբլու: Գյուղատնտեսական արտադրանքի արտադրության հետագա աճը լրիվ ապահովվելու է աշխատանքի արտադրողականության բարձրացման հաշվին:

Գյուղատնտեսության զարգացման այդպիսի բարձր մակարդակի հասնելու համար նախատեսված են 1.310 մլն ռուբլու կապիտալ ներդրումներ, որը անցած հնգամյակում կատարված ներդրումների ծավալը կգերազանցի 404 մլն ռուբլով կամ 44,6 տոկոսով: Այդ միջոցները օգտագործվելու են նյութատեխնիկական բազայի հետագա նշանակալի զարգացման, գյուղատնտեսության առջև դրված խնդիրների կոմպլեքսային լուծման համար: Տասներորդ հնգամյակում գյուղատնտեսությունը կստանա 7.800 տրակտոր, 10 հազար բեռնատար ավտոմոբիլ, 5 հազար տրակտորների կցասայլ, հացահատիկային 800 կոմբայն, 900 էքսկավատոր և շատ ուրիշ տեխնիկա ու սարքավորում: 1980 թվականին հանքային պարարտանյութերի մատակարարումը կհասնի մինչև 510 հազար տոննայի, որը, 1975 թ. համեմատությամբ, 41 տոկոսով ավելի է: Զգալի աշխատանքներ են կատարվելու հողերի մելիորացման և ոռոգման սիստեմների վերակառուցման նպատակով: Ընթացիկ հնգամյակում նախատեսված է ընդլայնել խաղողի և պտղատու այգիների տարածությունները, կառուցել պետական անասնապահական կոմպլեքսներ, թռչնաբուծական ֆաբրիկաներ, ջերմոցային տնտեսություններ, ավելի զարգացնել միջտնտեսային կոոպերացիան և ագրոարդյունաբերական ինտեգրացիան:

Մեծ ուշադրություն է հատկացվում գյուղի սոցիալական զարգացմանը՝ որպես ՍՄԿԿ-ի արդի փուլի ագրարային քաղաքականության բաղկացուցիչ մասի: Գյուղերում զգալիորեն ընդլայնվում է բնակելի տների, դպրոցների, ակումբների և մշակույթի տների, նախադպրոցական հիմնարկությունների, կենցաղային սպասարկման ձեռնարկությունների շինարարությունը, առևտրական ցանցը:

Կենսագործելով ՍՄԿԿ XXV համագումարի որոշումները, Հայաստանի, ինչպես և ամբողջ Սովետական Միության գյուղատնտեսությունը թևակոխել է զարգացման նոր աստիճան: Լավ ցուցանիշներով է ավարտվել տասներորդ հնգամյակի առաջին տարին: 1976 թ. Հայաստանում գյուղատնտեսության համախառն արտադրանքի աճը բավական բարձր էր՝ 6,5 տոկոս՝ տասներորդ հնգամյակի պլանով նախատեսված աճի տարեկան միջին տեմպերի 4,4 տոկոսի և 1975 թ. 2,9 տոկոսի դիմաց: Հնգամյակի առաջին տարում համախառն արտադրանքի ծավալը, նախորդ տարվա համեմատությամբ, մեծացել է ավելի քան 44 մլն ռուբլով և կազմել է 727,4 մլն ռուբլի:

Տասներորդ հնգամյակի պլանների կատարման արդյունքները նոր, ավելի բարձր բնագծերի կհասցնեն գյուղատնտեսությունը՝ նյութական արտադրության այդ կարևոր ճյուղը:

Հոբելյանական այս օրերին Սովետական Հայաստանում, ինչպես և երկրի մյուս հանրապետություններում, օրինական հպարտությամբ հանրագումարի են բերվում Սովետական Միության կոմունիստական կուսակցության և սովետական ժողովրդի վիթխարի աշխատանքի արդյունքները երկրի արմատական վերափոխման և էկոնոմիկայի ու կուլտուրայի բուռն ծաղկման գործում:

# ԱՐՀՄԻՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ԳԼԽԱՎՈՐ ԽՆԴԻՐԸ

**Լ. Գ. ՍԱՀԱԿՅԱՆ**
ՀԱՄԽ-ի նախագահ

ՍՈՎԵՏԱԿԱՆ ԺՈՂՈՎՈՒՐԴԸ, կոմունիստական կուսակցության ղեկավարությամբ, կենսագործում է ՍՄԿԿ XXV համագումարի նախանշած սոցիալ-տնտեսական մեծ ծրագիրը, նոր բնագծեր նվաճում երկրի հետագա բարգավաճման ու հզորացման ճանապարհին: Այն ամենը, ինչով մենք այսօր հպարտանում ենք,— արդյունաբերական հզոր պոտենցիալը, գյուղատնտեսական խոշոր արտադրությունը, գիտատեխնիկական հեղափոխության նվաճումները, զարգացած սոցիալիստական հասարակարգի ստեղծումը,— ձեռք է բերվել աշխատավորների արարչագործ ջանքերի շնորհիվ: Այդ մեծ հաղթարշավում կարևոր դեր է խաղացել և շարունակում է խաղալ սոցիալիստական մրցությունը, որը դարձել է մեր կյանքի տնտեսական և սոցիալական առաջընթացին նպաստող հզոր շարժում: Դա իր արտահայտությունն է գտել նաև ՍՍՀՄ Նոր Սահմանադրության նախագծում, ուր ասվում է. «Հենվելով աշխատավորների ստեղծագործական ակտիվության, սոցիալիստական մրցության, գիտատեխնիկական առաջընթացի նվաճումների վրա, պետությունն ապահովում է աշխատանքի արտադրողականության աճը, արտադրության արդյունավետության և աշխատանքի որակի բարձրացումը, ժողովրդական տնտեսության դինամիկ և համամասնական զարգացումը»:

Նոր Սահմանադրության հռչակումը կդառնա կարևոր ուղենիշ մեր երկրի տնտեսական և քաղաքական կյանքում: Սահմանադրության նախագծում օրենսդրական կերպով սևեռված են զարգացած սոցիալիզմի փուլի կարևոր նվաճումները: Այն նոր հեռանկարներ է բացում ոչ միայն ժողովրդի կյանքի նյութական ու կուլտուրական մակարդակի բարձրացման, այլև նրա ստեղծագործական ուժերի ծաղկման համար: Այդ ամենի իրականացման կարևոր գործոն է նաև սոցիալիստական մրցությունը: ՍՍՀՄ Սահմանադրության նախագծի լայն քննարկումը նոր թափ է հաղորդել մրցողների ստեղծագործական ուժերին, կրկնապատկել նրանց ջանքերը Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխության 60-րդ տարեդարձի առթիվ ստանձնած սոցիալիստական պարտավորությունները պատվով կատարելու համար:

Սոցիալիստական մրցության կազմակերպումն ու ծավալումը կուսակցությունը համարում է արհմիությունների գլխավոր խնդիրը: Մեր պարտքն է պատշաճ կերպով լուծել այն, հերոսական աշխատանքի մղել մեր հանրապետության բանվորների և կոլտնտեսականների, մասնագետների ու ծառայողների բազմահազարանոց բանակին:

ՍՄԿԿ XXV համագումարի առաջադրած խնդիրների լուծման, սոցիալիստական մրցության լայն ծավալման, նրա ձևերի ու մեթոդների կատարելագործման, աշխատավորական կոլեկտիվների նախաձեռնության զարգացման և ակտիվության բարձրացման գործում նոր ազդակ հանդիսացան ՍՍՀՄ արհմիությունների XVI համագումարի որոշումները, համագումարում ՍՄԿԿ Կենտ-

կոմի գլխավոր քարտուղար Լ. Ի. Բրեժնևի արտասանած ճառի դրույթներն ու հետևությունները։ Համագումարում ամենայն որոշակիությամբ շեշտվեց սոցիալիստական մրցության նոր դերը. «...արդի փուլում սոցիալիստական մրցությունը,— ասաց Լ. Ի. Բրեժնևը,— որակապես նոր գծեր, նոր առանձնահատկություններ է ձեռք բերում։ Այսօր մրցությունն անբաժանելի է գիտատեխնիկական հեղափոխությունից։ Այն ավելի ու ավելի մեծ չափով է կենտրոնացվում արդյունավետության և որակի պրոբլեմների շուրջը։ Այն կոչված է ապահովելու ժողովրդատնտեսական ամենալավ վերջնական արդյունքների ձեռքբերումը։ Այն ամենասերտ կերպով կապված է հանդիպական պլանների հետ, որոնց մեջ այնպես վառ կերպով արտահայտվում են միլիոնների նախաձեռնությունն ու անձնվեր աշխատանքը»։

ՍՈՑԻԱԼԻՍՏԱԿԱՆ ՄՐՑՈՒԹՅԱՆ նոր դերի խոր ընկալումը, կուսկազմակերպությունների կողմից մրցության գործի պատշաճ կազմակերպումը, էկոնոմիկայի ու երկրի սոցիալական զարգացման կուրսի հետևողական կիրառումը, կազմակերպական ու քաղաքական աշխատանքի արմատական բարելավումը, արտադրական կոլեկտիվների բարձր խանդավառությունն ապահովեցին տասներորդ հնգամյակի հաջող մեկնարկը։ Դրա առաջին արդյունքը եղավ 1976 թվականի ժողովրդատնտեսական պլանների հաջող կատարումը, որի համար մեր հանրապետությունը պարգևատրվեց ՍՄԿԿ Կենտկոմի, ՍՍՀՄ Մինիստրների սովետի, ՀԱՄԿԽ-ի և ՀամԼԿԵՄ Կենտկոմի փոխանցիկ կարմիր դրոշով։ Ուրախացնող են նաև ընթացիկ տարվա առաջին կիսամյակի արդյունքները։ Հանրապետության արդյունաբերությունը գերակատարել է արտադրանքի թողարկման ու իրացման, գյուղատնտեսությունը՝ անասնապահական մթերքների մթերումների պետական առաջադրանքները։

Հիրավի, զգալի գործ է արված։ Առաջադրված խնդիրների մասշտաբայնությունը, տնտեսավարության նկատմամբ արհմիությունների ազդեցության ուժեղացումն ավելի են բարձրացրել նշանակությունը այնպիսի կարևոր լծակների, ինչպիսիք են ներքին ռեզերվների ինտենսիվ որոնումն ու օգտագործումը, աշխատանքային կարգապահության ամրապնդումը, սոցիալիստական մրցության զարգացումը։ Ընթացիկ հնգամյակի անցած մեկուկես տարվա փորձը հիմք է տալիս ասելու, որ սոցմրցության նոր բովանդակությունն ու կատարելագործված ձևերը զգալի չափով նպաստել են արդի փուլում կուսակցության տնտեսական ու սոցիալական քաղաքականության գլխավոր խնդիրների լուծմանը։ Կյանքը համոզիչ կերպով վկայում է, որ մրցության լենինյան գաղափարները զարգացած սոցիալիզմի պայմաններում, մասսաներին տոգորելով ստեղծագործական մեծ եռանդով, դառնում են հզոր ուժ, այդ քաղաքականության կիրառման վճռական, բարձրարդյունավետ միջոց։

Կուսակցական կազմակերպությունների ղեկավարությամբ հանրապետության արհմիությունները մշտապես կատարելագործում են սոցիալիստական մրցության կազմակերպման ու ծավալման ձևն ու մեթոդները՝ առանձնահատուկ ուշադրություն նվիրելով արտադրության արդյունավետության ու աշխատանքի որակի բարձրացմանը։ Տեղերում կուսակցության պահանջներին համեմատ վերանայվել են սոցիալիստական մրցության պայմանները, սահմանվել ստանձնած պարտավորությունների կատարման վերահսկման արդյունավետ մեթոդներ։

Արհմիությունների հանրապետական խորհուրդն իր գործունեության ընթացքում հանրապետական ու շրջանային կոմիտեների, տեղական կազմակերպությունների ուշադրությունը մշտապես սևեռում է սոցմրցության կազմակերպման ձևերի ու մեթոդների կատարելագործման, կոլեկտիվների համախմբման ու մոբիլիզացման, ստանձնած պարտավորությունների կատարման գործում արհմիութենական սկզբնական և արտադրամասային կազմակերպությունների դերի բարձրացման վրա։ ՀԱՄԽ-ին առընթեր ստեղծվել և գործում է սոցիալիստական մրցության պրոբլեմների գիտամեթոդական խորհուրդ, որտեղ ընդգրկված են գիտնականներ, արտադրության նորարարներ, կուսակցական, արհմիութենական, կոմերիտական և տնտեսական աշխատողներ։



Խորհուրդը քննարկում և մշակում է առաջարկներ՝ ուղղված սոցիալիստական մրցության կազմակերպման ձևերի ու մեթոդների կատարելագործմանը, աշխատանքի նկատմամբ կոմունիստական վերաբերմունքի շարժման տարածմանը։ Այն հանրապետության գունավոր մետալուրգիայի և էլեկտրատեխնիկական արդյունաբերության ձեռնարկություններում ուսումնասիրել է արտադրության արդյունավետության բարձրացման նպատակով բարոյական և նյութական խրախուսման կիրառումը, տվել համապատասխան հանձնարարականներ։ Այժմ խորհուրդն ուսումնասիրում է երիտասարդ բանվորների և կոմերիտական-երիտասարդական կոլեկտիվների շրջանում սոցմրցության կազմակերպման և ծավալման հարցերը։

Կուսակցական կազմակերպությունների գլխավորությամբ և տնտեսական ղեկավարների աջակցությամբ արհմիութենական կազմակերպությունները կիրառում են մրցության կազմակերպման զանազան ձևեր։ Հատկանշական է, որ մրցության-համագործակցության պայմանագիր են կնքվել ոչ միայն անհատական մրցության մասնակիցների, այլև բրիգադների, հերթափոխությունների, արտադրամասերի, ձեռնարկությունների և տնտեսությունների, քաղաքների ու շրջանների միջև։ Զարգանում է Հայաստանի աշխատավորների սոցմրցությունը Վրաստանի, Ադրբեջանի և Ռոստովի մարզի աշխատավորների հետ։

Տասներորդ հնգամյակի առաջին տարիները դարձան նոր փուլ՝ սոցիալիստական մրցության, աշխատանքի նկատմամբ կոմունիստական վերաբերմունքի շարժման զարգացման գործում։ Մրցողների շարքերն զգալիորեն ընդլայնվել են։ Մրցության մասնակիցների թիվն այժմ հասել է 800 հազար մարդու, նրանցից 356 հազարը մասնակցում է աշխատանքի նկատմամբ կոմունիստական վերաբերմունքի շարժմանը։ Բայց, ինչպես այդ մասին արհմիությունների համագումարում նշել է Լ. Ի. Բրեժնևը, «...այստեղ գլխավորը ոչ թե քանակն է, այլ որակը։ Ուստի, շնորհելով կոմունիստական աշխատանքի բրիգադների ու հարվածայինների բարձր կոչումներ, հարկավոր է միշտ առաջնորդվել լենինյան այն ցուցումով, որ «այդքան պատվավոր անունը պետք է նվաճել երկար ու համառ աշխատանքով, նվաճել իսկական կոմունիստական շինարարության ասպարեզում ապացուցված գործնական հաջողությամբ»։

Մրցողների ողջ եռանդն ուղղված է ՍՄԿԿ XXV համագումարի որոշումների կենսագործման, Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխության 60-րդ տարեդարձը բարձր ցուցանիշներով դիմավորելու նպատակին։ Համաժողովրդական այդ պայքարին նոր լիցք հաղորդեց «Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխության 60-ամյակի մասին» ՍՄԿԿ Կենտկոմի որոշումը։ Հանրապետության արդյունաբերության աշխատողները պարտավորվել են, ի պատիվ մեծ տոնի, արտադրանքի իրացման և կարևոր արտադրատեսակների թողարկման պլանը կատարել դեկտեմբերի 27-ին։ Մեծ Հոկտեմբերի 60-ամյակի առթիվ կթողարկվի տասնյակ միլիոն ռուբլու արտապլանային արտադրանք, կյուրացվի 200 նոր արտադրատեսակների արտադրություն, 210 արտադրատեսակ կներկայացվեն որակի պետական նշանով ատեստավորման։

ՍՈՑԻԱԼԻՍՏԱԿԱՆ ՄՐՑՈՒԹՅՈՒՆԸ նպաստում է աշխատավորների ակտիվության բարձրացմանն ու նախաձեռնության զարգացմանը։ Մրցության ընթացքում է, որ առաջավոր բանվորները, կոլտնտեսականներն ու կոլեկտիվները հանդես են գալիս հանրային արտադրության արդյունավետության և աշխատանքի որակի բարձրացմանը նպաստող հայրենասիրական նախաձեռնություններով։ Արհմիություններն ամեն կերպ աջակցում են դրանց լայն տարածմանն ու արմատավորմանը։ Հանրապետության արհմիությունների խորհրդի նախագահությունը հավանություն է տվել Երևանի ալյումինի գործարանի Վ. Պետրոսյանի ղեկավարած գլանողների բրիգադի «Երկու տարվա առաջադրանքը՝ 1977 թվականի նոյեմբերի 7-ին» նախաձեռնությանը։ Բրիգադը խոստացել է ընթացիկ տարում պիտանի արտադրանքի ելքը ավելացնել երկու տոկոսով և դրա հաշվին թողարկել 30 տոննա բարձրորակ արտադրանք, տնտեսել երեք

հազար ռուբլու հումք ու նյութեր, 150 հազար կիլովատ ժամ էլեկտրաէներգիա, լինել օրինակելի արտադրությունում և հասարակական կյանքում:

Զարգացնելով ալյումինագործների նախաձեռնությունը՝ Քաջարանի պղնձամոլիբդենային կոմբինատի մետալուրգները, «Երարդշին» տրեստի շինարարները, Ձերժինսկու անվան հաստոցաշինական գործարանի և «Հայքիմմեքենա» արտադրական միավորման փականագործ-հավաքողների, Կիրովականի քիմիական գործարանի ապարատավարների բրիգադները կոչ արեցին մրցություն ծավալել՝ երկու տարվա պլանները մեծ Հոկտեմբերի 60-րդ տարեդարձի օրը կատարելու համար:

Այժմ հանրապետությունում տասներորդ հնգամյակի երկու տարվա առաջադրանքը ժամկետից շուտ կատարելու նշանաբանով են աշխատում արտադրության 24 հազար առաջավորներ: Հատկապես արժեքավոր է «Հայէլեկտրալույս» արտադրական միավորման փորձը: Արհմիությունների խորհուրդը քննարկել և լայնորեն արմատավորելու համար երաշխավորել է այս միավորման կոլեկտիվի նախաձեռնությունը՝ տասներորդ հնգամյակի պլանները ժամկետից շուտ կատարելու և մեծ Հոկտեմբերի 60-ամյակը արժանավայել ձևով դիմավորելու վերաբերյալ: Միավորման կոլեկտիվը ձգտում է ժամկետից շուտ նվաճել հնգամյակի վերջնական բնագծերը և պայքարում այն բանի համար, որպեսզի արտադրության արդյունավետության որակական շատ ցուցանիշներով ապահովի բարձր մակարդակ: Հատկանշական է, որ միավորումում մրցությունը կազմակերպվում է կոնկրետ պարտավորությունների հիման վրա՝ ներքևից վերև, բանվորական տեղից, բրիգադից մինչև ձեռնարկությունն ամբողջությամբ վերցրած: Այստեղ ծնունդ առած ամեն մի նախաձեռնություն արմատավորվում, տալիս է որոշակի արդյունք: Արհմիութենական կոմիտեն և նրա հանձնաժողովներն ամեն կերպ աջակցում են ինչպես մրցության ծավալմանը, այնպես էլ նախաձեռնությունների արմատավորմանը:

ՏԱՍՆԵՐՈՐԴ ՀՆԳԱՄՅԱԿԻ առաջադրանքների կատարման համար մղվող պայքարի որակական կարևոր առանձնահատկություն է բանվորների և ինժեներատեխնիկական աշխատողների, արտադրական և գիտական կոլեկտիվների, գիտահետազոտական ինստիտուտների և կոնստրուկտորական բյուրոների կոմպլեքսային սոցմրցությունը: Արտադրական շատ կոլեկտիվներ գիտական հիմնարկությունների հետ կնքել են ստեղծագործական փոխօգնության պայմանագրեր և հաջողությամբ պայքարում են գիտատեխնիկական կարևոր խնդիրների լուծման համար:

Ամբողջությամբ վերցրած հնգամյակի պլանը կատարելու կայուն երաշխիք ստեղծելու նպատակով կուսակցությունը խնդիր է դրել դուրս գալ ավելի առաջավոր բնագծեր նրա երկրորդ և երրորդ տարիներին: Այս առնչությամբ ավելի է աճում հանդիպական պլանների հիման վրա ծավալված սոցմրցության նշանակությունը: Իսկ հանդիպական պլաններում, ինչպես ասաց ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար Լ. Ի. Բրեժնևը արհմիությունների XVI համագումարում, ավելի վառ են արտացոլվում միլիոնների նախաձեռնությունը և անձնուրաց աշխատանքը:

Կարելի է բերել շատ օրինակներ, երբ ձեռնարկությունների կոլեկտիվները հաջողությամբ մշակում ու կատարում են ընթացիկ տարվա և ամբողջությամբ վերցրած հնգամյակի՝ իրենց հանդիպական պլանները: Միայն 1976 թվականին նրանք լրացուցիչ թողարկել են ավելի քան 80 միլիոն ռուբլու արտադրանք: Հատկանշական է, որ հիմնական ուշադրությունը սևեռվել է որակական ցուցանիշներին, քանի որ լրացուցիչ արտադրանքը թողարկվել է ներքին ռեզերվների բացահայտման և արդյունավետ օգտագործման հաշվին: Հանդիպական պլանների մշակման և կատարման գործում որոշակի փորձ են կուտակել Երևանի ալյումինի, Կիրովականի ճշգրիտ հաստոցների գործարանները, «Հայէլեկտրալույս» արտադրամիավորումը, Վ. Ի. Լենինի անվան մետաքսի կոմբինատը, Լենինականի Ջկալովի անվան կարի ֆաբրիկան և այլ ձեռնարկություններ:

Սակայն ոչ միշտ է, որ հանդիպական պլանների մշակման ու կատարման ժամանակ հաշվի են առնվում բոլոր հնարավորություններն ու ռեզերվները:



էական թերություն է նաև այն, որ արդյունաբերական ձեռնարկությունների զգալի մասը մինչև այժմ չի մշակել հանդիպական պլաններ:

Հետաքրքրական է հարակից ձեռնարկությունների սոցմրցությունը: Դրա ցայտուն օրինակը կարող են տալ Երևանի կոշիկի «Մասիս» և Ստ. Շահումյանի անվան կաշվի արտադրամիավորումները: Նրանց կոլեկտիվները լարում են իրենց ջանքերը, որպեսզի ավելացնեն արտադրությունը, բարելավեն որակը, ընդլայնեն վերջնական արդյունքի՝ կոշիկի տեսականին: Նրանք կնքել են երկկողմանի պայմանագիր և հաջողությամբ կենսագործում են այն: Եվ եթե այսօր կոշկագործների արտադրանքը բարի համբավ է վայելում, ապա դրանում կա նաև համասեռ ձեռնարկության գործնական աջակցության անմիջական արդյունքը՝ հիմնված բարոյական պարտավորությունների և սոցիալիստական փոխօգնության վրա:

Լայնորեն զարգացնելով հարակից ձեռնարկությունների սոցմրցությունը կոոպերացված մատակարարումների պլանների անվերապահ կատարման համար, արհմիութենական կազմակերպությունները միաժամանակ մրցանակային տեղերի թեկնածուների կազմից հանում և մրցանակից զրկում են այն կոլեկտիվին, որը չի կատարում իր պայմանագրային պարտավորությունները: Ըստ էության, այստեղ հարկ է կիրառել տույժի միջոցներ նաև վարչական առումով:

ՏԱՍՆԵՐՈՐԴ ՀՆԳԱՄՅԱԿԸ հռչակված է որպես բարձր արդյունավետության ու որակի հնգամյակ: Այդ գլխավոր խնդրի լուծմանը նպաստելու համար արհմիությունների խորհուրդն ստեղծել է որակի ու հուսալիության հանրապետական գիտատեխնիկական խորհուրդ՝ հինգ սեկցիաներով: Նրա հիմնական խնդիրն է մեթոդական և գործնական օգնություն ցույց տալ ձեռնարկություններին, սոցմրցության բոլոր մասնակիցներին՝ թողարկվող արտադրանքի որակն արմատապես բարելավելու և հուսալիությունն ապահովելու գործում: Խորհրդի ակտիվ մասնակցությամբ Հայաստանի կոմկուսի Կենտկոմը, Մինիստրների սովետը և արհմիությունների խորհուրդն անցած տարի անցկացրին գիտագործնական կոնֆերանս՝ «Թողարկվող արտադրանքի տեխնիկական մակարդակի և որակի բարձրացման եղանակները» թեմայով: Դրան մասնակցում էին հանրապետության արդյունաբերական ձեռնարկությունների ու կազմակերպությունների ավելի քան 1.200 ներկայացուցիչներ, գիտնականներ ու մասնագետներ, ինչպես նաև հյուրեր՝ ՍՍՀՄ պետական ստանդարտների կոմիտեից, Լվովի և Գորկու մարզերից: Կոնֆերանսի մշակած հանձնարարականներն արժանացան ՀԿԿ Կենտկոմի բյուրոյի հավանությանը և ուղարկվեցին հանրապետության բոլոր ձեռնարկություններին ու կազմակերպություններին, գերատեսչություններին ու մինիստրություններին՝ ի ղեկավարություն:

Արտադրանքի որակի համար մղվող պայքարը դարձել է սոցմրցության մասնակիցների գլխավոր խնդիրներից մեկը: Ղեկավարվելով որակի կառավարման կոմպլեքսային համակարգ ստեղծելու՝ Լվովի կուսկազմակերպության փորձի վերաբերյալ ՍՄԿԿ Կենտկոմի որոշմամբ և հանրապետական առաջին գիտագործնական կոնֆերանսի հանձնարարականներով, արդյունաբերական ձեռնարկությունների կոլեկտիվները մշակել և իրականացնում են արտադրանքի տեխնիկական մակարդակի և որակի բարձրացման մի շարք միջոցառումներ: Դրա վկայությունը 1976 թվականին 430 արտադրատեսակի որակի պետական նշան շնորհելն է: Ներկայումս թողարկվում է 850 տեսակի բարձր կարգի արտադրանք, որը կազմում է ամբողջ արտադրանքի 10 տոկոսը: Երեք անգամ նվազել է երկրորդ տեսակի և չատեստավորված արտադրանքի քանակը:

Այժմ հանրապետության 100-ից ավելի ձեռնարկություններ և միավորումներ լվովցիների օրինակով մշակում և հաջողությամբ ներդնում են արտադրանքի որակի կառավարման կոմպլեքսային համակարգ, իսկ «Էլեկտրոն» արտադրամիավորումը, զարգացնելով և կատարելագործելով լվովյան մեթոդը, մշակել և իրականացնում է արտադրության բարձր արդյունավետության և աշխատանքի որակի կոմպլեքսային սիստեմ՝ ձեռնարկության ստանդարտի բազայի վրա: Միավորումում մշակված անթերի արտադրանքի մեթոդը բո-

վանդակում է կոլեկտիվի և նրա առանձին անդամների աշխատանքի որակի մակարդակի կոնկրետ գնահատականը, որը որոշվում է նախատեսված գործակցի օգնությամբ։ Ներկայումս միավորումում լրիվ կերպով կիրառվում է «Որակի և հուսալիության համար պատասխանատու են բոլորը» սկզբունքը։ Այս փորձն ուշադրության արժանի է և արմատավորվում է հանրապետության նաև ուրիշ ձեռնարկություններում։ Պետք նշել, որ այժմ հանրապետության 15 ձեռնարկությունների թողարկած արտադրանքի ավելի քան կեսը բարձր կարգի է, իսկ 90 ձեռնարկություններ պարտավորվել են հնգամյակում 2,5—3 անգամ ավելացնել բարձրակարգ արտադրանքի բաժինը արտադրության ընդհանուր ծավալում։

ԼԱՅՆՈՐԵՆ ԾԱՎԱԼՎՈՒՄ է սոցմրցությունը նաև խնայողության ռեժիմի կիրառման համար։ Դա, ինչպես շեշտեց ՍՄԿԿ XXV համագումարը, ժողովրդական տնտեսության զարգացման կարևոր պայման է։ Արտադրական կոլեկտիվները և մրցության անհատ մասնակիցներն ստանձնում են աշխատանքային ու նյութական ռեսուրսները խնայողաբար օգտագործելու և տնտեսելու վերաբերյալ լուրջ պարտավորություններ, հանդես գալիս խնայողությանն ուղղված հայրենասիրական նախաձեռնություններով, կազմակերպում են այդ խնդրին նվիրված ստուգատեսներ և մրցույթներ։

Հատկանշական է կոմերիտմիության և նյութատեխնիկական մատակարարման մարմինների հետ արհմիությունների անցկացրած համամիութենական հասարակական ստուգատեսը։ Այս միջոցառման արդյունավետությունը տասներորդ հնգամյակում բարձրանում է նրանով, որ ստուգատեսի ծրագրով դրա մասնակիցների համար սահմանվել են հումքի, նյութերի և վառելիքաէներգետիկ ռեսուրսների օգտագործման ցուցանիշներ։ ՀԱՄԽ-ի նախագահության որոշմամբ և ստուգատեսի պայմաններին համապատասխան՝ ձեռնարկություններում և կազմակերպություններում ստեղծվել են ստուգատեսային հանձնաժողովներ՝ արտադրության առաջավորների, կուսակցական ակտիվի, արհմիութենական, կոմերիտական աշխատողների և ժողովրդական վերահսկողության խմբերի անդամների մասնակցությամբ։ Լայն արձագանք է գտել մի շարք արդյունաբերական ձեռնարկությունների, շինարարական-մոնտաժային, գիտահետազոտական և նախագծային-կոնստրուկտորական կազմակերպությունների նախաձեռնությունը՝ խնայողության համար սոցիալիստական գործարար մրցություն ծավալելու, «Խնայողությանը՝ գիտատեխնիկական և ինժեներական երաշխիք» նշանաբանով համագործակցության պայմանագրեր կնքելու վերաբերյալ։

Շատ ձեռնարկությունների կոլեկտիվներ հումքի, նյութերի և վառելիքաէներգետիկ ռեսուրսների խնայողաբար օգտագործման նպատակով պայմանագրեր են կնքել ստեղծագործական համագործակցության և գիտատեխնիկական ու ինժեներատնտեսագիտական համատեղ միջոցառումների մշակման և իրականացման մասին։ Այսպես, «Երարդշին» համաշինարարական և «Հայկազմտեխշին» տրեստները համատեղ մշակած կոմպլեքսային միջոցառումների իրականացմամբ ձգտում են տնտեսել զգալի քանակությամբ հումք, նյութեր, կրճատել աշխատանքային ծախսերը։ «Երարդշին» տրեստը միաժամանակ ստեղծագործական համագործակցության պայմանագիր ունի շինարարության և ճարտարապետության հայկական գիտահետազոտական ինստիտուտի հետ։ Դրանով նախատեսվում է մշակել և թողարկել թեթև և պարզեցրած երկաթբետոնյա կառուցվածքներ՝ 90 հազար ռուբլու տնտեսական արդյունավետությամբ։ Հանրապետության ժողովրդական տնտեսությունում ստուգատեսի շնորհիվ խնայվել է 65,5 միլիոն կիլովատ-ժամ էլեկտրաէներգիա, հազար տոննա սև և գունավոր մետաղ, մեծ քանակությամբ ցեմենտ և հումքի ու նյութերի այլ տեսակներ։

Սակայն սննդի, շինանյութերի, տեղական արդյունաբերության մինիստրությունների և այլ շինարարական կազմակերպություններում ու առանձին սովխոզներում նկատվում են անտնտեսվարության, շինանյութերի, մետաղի, վառելիքի, հանքային պարարտանյութերի կորուստների փաստեր։ Նյութական



շատ արժեքներ կորչում կամ փչանում են փոխադրման ու պահպանության ընթացքում։ Իսկ դա նշանակում է, որ արհմիութենական տեղական կոմիտեները լիովին չեն մոբիլիզացնում մրցողների ջանքերը, բոլոր միջոցները չեն ձեռնարկում խնայողության առթիվ ստանձնած պարտավորությունները անթերի կատարելու համար։ Նրանց խնդիրն է մշտապես հիշել ՍՄԿԿ XXV համագումարի կարևոր հետևությունը. «Ճիշտ հաշվել և արդյունավետ օգտագործել յուրաքանչյուր ռուբլին, աշխատանքի յուրաքանչյուր ժամը, արտադրանքի յուրաքանչյուր տոննան, մինչև վերջ արմատախիլ անել անտնտեսվարությունն ու թափթփվածությունը՝ սա մեր կուսակցության պարտքն է, որովհետև մենք խնայում ենք հանուն մեզ համար ամենաթանկ բանի՝ հանուն հայրենիքի հարստության և հզորության, մեր ժողովրդի բարեկեցության և բարգավաճման» (ՍՄԿԿ XXV համագումարի նյութերը, էջ 67)։

ՍՍՀՄ ԱՐՀՄԻՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ XVI համագումարն առանձնահատուկ կերպով նշեց արհմիութենական կազմակերպությունների դերը գյուղատնտեսության հետագա զարգացման գործում։ Այսօր սոցիալիստական մրցության վերաբերյալ համագումարի նոր պահանջների կատարումը դարձել է նաև մեր հանրապետության գյուղատնտեսության աշխատողների գլխավոր խնդիրներից մեկը։ Նրանք իրենց ժողովներում լայնորեն քննարկել են գյուղատնտեսության բնագավառի աշխատողներին ուղղված ՍՄԿԿ Կենտկոմի նամակը և ստանձնել սոցիալիստական նոր պարտավորություններ, հանդես եկել մի շարք նոր նախաձեռնություններով, որոնք հետամտել են արտադրության արդյունավետության բարձրացման, հողագործական և անասնապահական մթերքների ավելացման նպատակը։ Կոլտնտեսականները, սովխոզների բանվորները, գյուղատնտեսության մասնագետները տասներորդ հնգամյակում սոցիալիստական մրցություն են ծավալել հողագործության և անասնապահության կուլտուրայի հետագա բարձրացման, ֆերմաների կոմպլեքսային մեքենայացման, ներքին ռեզերվների մոբիլիզացման, հողային ռեսուրսների ռացիոնալ օգտագործման համար։

Արհմիութենական կազմակերպությունները որոշակի դեր են խաղում գյուղի աշխատավորների սոցմրցության կազմակերպման, նրանց ստանձնած պարտավորությունների կատարման, հայրենասիրական նախաձեռնությունների լայն տարածման ու արմատավորման գործում։ Հրազդանի շրջանի տնտեսությունները, նախորդ տարիներին ապահովելով գյուղատնտեսական մթերքների արտադրության բարձր մակարդակ, ընթացիկ տարում աշխատում են «Արդյունավետության և որակի համար պատասխանատու է յուրաքանչյուրը» նշանաբանով։ Նրանք խոստացել են հնգամյա պլանով 1980 թվականի համար նախատեսված շատ բնացքներ նվաճել այս տարի։

Կրասնոսելսկի շրջանի աշխատավորները պարտավորվել են գիտության և առաջավոր փորձի լայն ներդրմամբ, արտադրության մեքենայացմամբ, աշխատանքի կազմակերպման կատարելագործմամբ տասներորդ հնգամյակի պետական պլանները կատարել չորս տարում։

Ախուրյանի շրջանի ճակնդեղագործները պայքարում են հողի բերրիության բարձրացման, տեխնիկայի ռացիոնալ օգտագործման, աշխատանքի կազմակերպման ձևերի կատարելագործման միջոցով հեկտարից 500 ցենտներ շաքարի ճակնդեղի բերք ստանալու համար։

Ամեն մի ծառից, վազից, ամեն մի հեկտար այգուց առավելագույն հատույցում, «Տասներորդ հնգամյակում գերազանց որակի այգի»— այսպիսի կոչով են պայքարի ելել Նոյեմբերյանի շրջանի Արճիս գյուղի սովխոզի պտղաբույծները։ Այդ կոչը լայն պաշտպանություն գտավ հանրապետությունում։ Հատկանշական է, որ Արճիսում ստեղծվել է որակի հատուկ բյուրո։ Այն լայն հեղինակություն ունի տնտեսությունում։ Նրա անդամները բանվորներ, գյուղատնտեսներ, կուսակցական ու արհմիութենական ակտիվիստներ են։

Շատ են գյուղական աշխատավորների լավ գործերն ու նախաձեռնությունները, որոնք ծավալվում են կոլտնտեսություններում՝ արհմիութենական կազմակերպությունների աճին զուգընթաց։ Աստիճանաբար ուժեղանում է արհ-

միութենական կազմակերպությունների ազդեցությունը տնտեսավարման ողջ պրակտիկայի վրա։ Իսկ դա պահանջում է մեկանից արմատապես բարելավել նրանց աշխատանքը, բարձրացնել նրանց պատասխանատվությունը։ Մինչդեռ այս մարզում կան լուրջ թերություններ։ Գյուղատնտեսության և մթերումների աշխատողների արհմիության հանրապետական կոմիտեն, առանձին արհմիության շրջկոմներ հետևողական աշխատանք չեն տանում պլանների և ստանձնած սոցպարտավորությունների կատարման, կարգապահության ամրապնդման գործում տեղական բոլոր արհմիութենական կազմակերպությունների դերը բարձրացնելու համար։ Լուրջ թերություններ կան գյուղական աշխատավորների սոցմրցության ծավալման ասպարեզում։ Այստեղ նկատվում են այդ գործի կազմակերպման ձևական տարրեր. հաճախ ուշացումով են ամփոփվում մրցության արդյունքները, ոչ բոլոր տեղերում է ապահովվում դրա հրապարակայնությունը։

ՍԿԶԲՈՒՄ ՍՈՎՈՐԵՑՆԵԼ ՄՆԱՑԱԾ ՄԱՍՆՈՒԹՅԱՆԸ, ապա և բոլոր աշխատավորներին, աշխատել այնպես, ինչպես արտադրության առաջավորները— սա է սոցմրցության գլխավոր խնդիրներից մեկը։ Հարկավոր է համակողմանի ուսումնասիրել և լայնորեն ներդնել սոցմրցության, տնտեսական ղեկավարման, պլանավորման և կառավարման լավագույն փորձը, ընդհանրացնել այն նորը, որը ծնվում է մրցության ընթացքում։ Ի դեպ, արհմիութենական շատ կոմիտեների աշխատանքի պրակտիկան վկայում է, որ մեզ դեռևս չի հաջողվել վերացնել սոցմրցության կազմակերպման մի շարք լուրջ թերություններ, առանձին ձեռնարկություններում ու տնտեսություններում չեն հաղթահարվել սոցպարտավորությունների մշակման և ընդունման, դրանց կատարման արդյունքների ամփոփման ձևական երևույթները։ Կան փաստեր, երբ պարտավորությունները տնտեսապես չեն հիմնավորվում, դրանք չեն ամրապնդվում կազմակերպական-տեխնիկական մտածված միջոցառումներով, խախտվում են մրցության արդյունքների ամփոփման, պարգևների հանձնման ժամկետները։ Այդ ամենի հետևանքով հանրապետության արդյունաբերական 35 ձեռնարկություններ, այդ թվում Երևանի տրիկոտաժի ֆաբրիկան, Լենինականի հղկող հաստոցների, «Էլեկտրակենցաղսարք», Կալինինոյի արծնապատ ամանեղենի, Հոկտեմբերյանի պահածոյի գործարանները և այլն, չկատարեցին արտադրանքի իրացման ընթացիկ տարվա առաջին կիսամյակի պլանները։ Հանրապետությունում դեռևս անհրաժեշտ ձևով չի զարգացել հաշվիչ տեխնիկայի օգտագործմամբ սոցմրցության արդյունքների ամենօրյա ամփոփման պրակտիկան։

Մրցության կազմակերպման ասպարեզում արհմիություններին վերապահված մեծ դերը նրանց առաջադրում է նոր խնդիրներ՝ ակտիվորեն մասնակցել արտադրության կառավարմանը, կազմակերպական, մասսայական-քաղաքական աշխատանք ծավալել մրցողների շրջանում, զարգացնել նրանց նախաձեռնությունը, նրանց դաստիարակել աշխատանքի նկատմամբ կոմունիստական վերաբերմունքի ոգով։ Հայաստանի արհմիությունները, ղեկավարվելով սոցիալիստական մրցության կազմակերպման վերաբերյալ կուսակցության XXV համագումարի և ՍՍՀՄ արհմիությունների XVI համագումարի պահանջներով, արմատապես կբարելավեն իրենց գործունեությունն այդ ասպարեզում։ Նրանց առաջնահերթ խնդիրն է՝ անհրաժեշտ հետևություններ անել սոցմրցության կազմակերպման գործում եղած թերություններից, ուսումնասիրել ու լայնորեն արմատավորել մրցության կազմակերպման լավագույն փորձը, կատարելագործել նրա ձևերն ու մեթոդները, հարստացնել բովանդակությունը, այն ուղղել հնգամյակի գլխավոր խնդրի անվերապահ կատարմանը՝ արդյունավետության և որակի բարձրացմանը։

—•—

# ԱՇԽԱՏԱՎՈՐՆԵՐԻ ԲԱՐԵԿԵՑՈՒԹՅԱՆ ՀԱՄԱՐ

**Ա. Ա. ԳԵՎՈՐԳՅԱՆ**
ՀՍՍՀ թեթև արդյունաբերության մինիստր

ԹԵԹԵՎ ԱՐԴՅՈՒՆԱԲԵՐՈՒԹՅՈՒՆՆ արդեն իսկ արտադրության բնույթով առաջնակարգ տեղ է գրավում ժողովրդական տնտեսության այն ճյուղերի մեջ, որոնք անմիջականորեն կամ միջնորդավորված ձևով ի սպաս են դրված բնակչության բարեկեցության բարձրացմանը՝ կուսակցության տնտեսական ստրատեգիայի գերագույն նպատակի իրականացմանը։ Թեթև արդյունաբերության այդ առանձնահատուկ դերով պետք է բացատրել այն մեծ ուշադրությունը, որ կոմունիստական կուսակցությունն ու սովետական կառավարությունը նվիրում են այս ճյուղի զարգացմանը։

Ի տարբերություն արդյունաբերական այլ ճյուղերի, թեթև արդյունաբերությունը նախասովետական Հայաստանի էկոնոմիկայում որոշակի կշիռ ուներ։ Կարելի է նշել հատկապես գորգագործությունն ու կաշեհումքի վերամշակումը։ 1912 թվականին Երևանի նահանգի 574 գյուղերում տնայնագործությամբ էին զբաղվում 6.674 գորգագործուհի, կաշեհումքի մշակմամբ՝ 225 մարդ, որոնք աշխատում էին 37 արհեստանոցներում։ Նահանգում կային բամբակազտիչ ոչ մեծ գործարաններ, որոնցում աշխատում էր մոտ 1.000 մարդ, մետաքսաթել արտադրող մի քանի մանր արհեստանոցներ, ուր ընդգրկված էր 490 բանվոր։

Այսպիսին էր Հայաստանի թեթև արդյունաբերությունը, որը, սակայն, լրիվ քայքայվեց 1917—1920 թվականներին, դաշնակցության տիրապետության շրջանում։

Պետք է նշել, որ այդ ճյուղում տիրապետողը արհեստագործական-տնայնագործական արտադրությունն էր, և, հասկանալի է, Հայաստանի թեթև արդյունաբերությունը չէր կարող մրցակցել ցարական Ռուսաստանի կենտրոնական շրջանների համեմատաբար ավելի զարգացած արդյունաբերության հետ։

ԹԵԹԵՎ ԱՐԴՅՈՒՆԱԲԵՐՈՒԹՅԱՆ, ինչպես և ժողովրդական տնտեսության մյուս ճյուղերի իրական վերելքն սկսվեց սովետական իշխանության հաստատումից հետո միայն։ Կոմունիստական կուսակցությունը և սովետական կառավարությունը միջոցներ ձեռնարկեցին գյուղատնտեսության, մասնավորապես բամբակագործության ու անասնաբուծության արագ զարգացման համար, իսկ դրանք, ինչպես հայտնի է, հումքի բազա են թեթև արդյունաբերության համար։ Մինչև 1925 թ. կառուցվեցին և շահագործման հանձնվեցին Երևանի ու Հոկտեմբերյանի, իսկ ավելի ուշ՝ Արտաշատի բամբակազտիչ գործարանները։ Բամբակաթելի արտադրությունը 1924 թվականին կազմում էր 900 տոննա, իսկ 1925 թվականին այն հասավ 3.270 տոննայի՝ նախապատերազմյան մակարդակից 1,5 անգամ ավելի։ Դրանով իսկ դրվեց հանրապետության տեքստիլ արդյունաբերության հիմքը։

Անասնաբուծության զարգացման շնորհիվ Երևանի կաշվի գործարանը 1926 թվականին արդեն թողարկում էր 140 տոննա կոշտ և 5,8 մլն ք. դմ. խրոմի կաշի։

Բամբակազտման և կաշվի արդյունաբերության զարգացման հետ մեկտեղ,

Լենինականում կառուցվում էր առաջին տեքստիլ ֆաբրիկան, որը շահագործման հանձնվեց 1924 թվականին։ Այդ ձեռնարկության համար տեխնիկական բազա հանդիսացան ՌՍՖՍՀ Իվանովո-Վոզնեսենսկի տեքստիլագործների նվիրած սարքավորումները։ Այնուհետև Հայաստանի արտադրական կոոպերացիայից ֆաբրիկային հանձնվեցին «Վելիկան» տիպի 25 և տրիկոտաժե վերնահագուստի թողարկման 35 մեքենաներ։ Հանրապետությունում, այդպիսով, հիմնադրվեց նաև տրիկոտաժի արտադրությունը։

Հաջորդ տարիներին տրիկոտաժի և գուլպա-նասկեղենի արտադրությունները կազմեցին առանձին ինքնուրույն ձեռնարկություններ, իսկ տեքստիլ ֆաբրիկայի բազայի վրա ստեղծվեց Լենինականի Մայիսյան ապստամբության անվան տեքստիլ կոմբինատը։

Հայաստանում սովետական իշխանության հաստատումից հետո արհեստագործները միավորվեցին արհեստագործական կոոպերացիայի արտելներում, որոնց բազայի վրա առաջին և երկրորդ հնգամյակի տարիներին ստեղծվեցին կարի ու կոշկեղենի պետական ֆաբրիկաներ։

Եվ այսպես, օր-օրի հասակ էր առնում հանրապետության թեթև արդյունաբերությունը։ 1928 թվականի համեմատությամբ, բամբակի թելի արտադրությունը 1940 թվականին արդեն աճել էր 3,1, մանվածքի արտադրությունը՝ 16,3, գործվածքեղենինը՝ 11,7, գուլպա-նասկեղենինը՝ 15,6, կոշկեղենինը՝ 15 անգամ և այլն։ Զգալիորեն ընդլայնվել էր նաև արտադրանքի տեսականին։

Հայրենական մեծ պատերազմի տարիներին թեթև արդյունաբերության ճյուղերի արտադրանքը մի փոքր պակասեց։ Եվ դա հասկանալի է. ռազմաճակատ մեկնեցին ֆաբրիկաների բազմաթիվ աշխատողներ, որոշ ձեռնարկություններ սկսեցին արտադրանք թողարկել ռազմաճակատի համար։ Ժողովրդական սպառման ապրանքների թողարկումը, նախապատերազմյան 1940 թ. համեմատությամբ, 1945 թվականին միջին հաշվով կրճատվել էր 30—40 տոկոսով։

Հետպատերազմյան առաջին հնգամյակը նշանավորվեց վերականգնման և ճյուղի զարգացման նոր փուլով։ Կառուցվում էին նոր գործարաններ, սարքավորվում էին գործող ձեռնարկությունները, լայն պայքար էր ծավալվել աշխատանքի ու սարքավորումների արտադրողականության բարձրացման, նոր արտադրատեսակների յուրացման համար։ Այդ տարիներին շահագործման հանձնըվեցին Երևանի մահուդի ֆաբրիկան և նուրբ բրդյա գործվածքեղենի կոմբինատը։ Դրանով իսկ փաստորեն հանրապետությունում հիմք դրվեց բրդեղենի արտադրության արդյունաբերությանը։ Գործարկվեցին նաև Կիրովականի ու Գորիսի տրիկոտաժի ֆաբրիկաները, Քանաքեռի № 4 և Երևանի № 6 կոշիկի ֆաբրիկաները։

Ժողովրդական սպառման ապրանքների նկատմամբ բնակչության պահանջմունքները բավարարելու նպատակով, պետական կապիտալ ներդրումների հաշվին հետագայում կառուցվեցին և շահագործման հանձնվեցին այնպիսի խոշոր ձեռնարկություններ, ինչպիսիք են Վ. Ի. Լենինի անվան մետաքսի կոմբինատը (1952 թ.), Երևանի ձեռնոցների ֆաբրիկան (1960 թ.), Իջևանի գորգագործական կոմբինատը (1964 թ.), Լենինականի մանածագործական ֆաբրիկայի սանդերքամանվածքի նոր արտադրաշենքը (1967 թ.) և այլն։ Շատ ձեռնարկություններ վերակառուցվեցին, հագեցվեցին ժամանակակից տեխնիկայով։ Հետագա տարիները թեթև արդյունաբերության համար բնութագրական են այն առումով, որ նկատելիորեն մեծացավ ճյուղի «գործունեության շառավիղը»։ Սովետական Հայաստանի շատ շրջաններում ստեղծվեցին միավորումների և խոշոր ֆաբրիկաների մասնաճյուղեր։

ՀԱՆՐԱՊԵՏՈՒԹՅԱՆ ԹԵԹԵՎ ԱՐԴՅՈՒՆԱԲԵՐՈՒԹՅԱՆ ՄԵՋ քանակական ու որակական փոփոխությունները հատկապես ակնառու էին վերջին հնգամյակներում։ Հաջողությամբ կատարվեցին ութերորդ հնգամյակի պլանային առաջադրանքները։ Իններորդ հնգամյակում ապահովվեց արդյունաբերական արտադրանքի ծավալի 28,2 տոկոս աճ։ Աշխատանքի արտադրողականության



աճը կազմեց 16,2 տոկոս, արդյունաբերական արտադրանքի աճի 72,2 տոկոսն ապահովվեց աշխատանքի արտադրողականության բարձրացման հաշվին։

Իններորդ հնգամյակի տարիներին առանձնահատուկ ուշադրություն նվիրվեց գործող արտադրական կարողությունների ընդլայնմանն ու նորերի ստեղծմանը։ Ալավերդում կառուցվեցին կարի, Երևանում՝ կաշվի գալանտերեայի և նորաձև կոշկեղենի ֆաբրիկաներ, Հոկտեմբերյանում շահագործման հանձնվեց ֆուրնիտուրայի փորձնական գործարանը, Լենինականում և Կիրովականում գործարկվեցին կոշիկի, Սպիտակում և Արթիկում՝ տրիկոտաժի նոր ֆաբրիկաները։

Արտադրանքի թողարկումն ավելացնելու և որակը բարելավելու նպատակով վերակառուցվեցին Երևանի «Արագած» բամբակեղենի արտադրամիավորումը, բրդյա գործվածքեղենի կոմբինատը, Ստ. Շահումյանի անվան կաշվի արտադրամիավորումը, սկսվեց Մասիսի ոչ գործվածքային կտորեղենի, Երևանի մահուդի ֆաբրիկաների, Լենինականի գուլպա-նասկեղենի արտադրական միավորման վերակառուցումը և այլն։

Հայկական ՍՍՀ թեթև արդյունաբերության մինիստրության սիստեմում մեծ աշխատանք է կատարվել արդյունաբերության կառավարումը կատարելագործելու նպատակով։ ՍՍՀՄ Մինիստրների սովետի հաստատած գլխավոր սխեմայի համաձայն, արտադրության մասնագիտացման և համակենտրոնացման նպատակով, ինչպես նաև տերիտորիալ նպատակահարմարությունից ելնելով, մինիստրության մանր, սակավազոր ձեռնարկությունները միացվեցին համասեռ խոշոր ձեռնարկություններին։ Այդ աշխատանքի հիմնական փուլն ավարտվեց 1976 թվականին։

Առաջներում գոյություն ունեցող «Հայգորգ», կոշիկի «Մասիս» և Ստ. Շահումյանի անվան կաշվի միավորումներից բացի, գործող ձեռնարկությունների հիման վրա ստեղծվել են 10 նոր արտադրական միավորումներ՝ Լենինականի Մայիսյան ապստամբության անվան բամբակագործվածքային, Երևանի «Արագած» բամբակեղենի, Մյասնիկյանի անվան տրիկոտաժի, տրիկոտաժե ձեռնոցների, Սովետաշենի տրիկոտաժի և Լենինականի գուլպա-նասկեղենի, Երևանի «Գարուն» և Կ. Ցետկինի անվան, Լենինականի և Կիրովականի կարի արտադրական միավորումները։

Այսպիսով, անցյալում եղած 50 ձեռնարկությունների փոխարեն մինիստրության սիստեմում այժմ գործում են ըստ առանձին արտադրատեսակների և արտադրախմբերի մասնագիտացված 30 արտադրական միավորումներ, կոմբինատներ ու խոշոր ձեռնարկություններ։

Եթե նախքան կառավարման կատարելագործման հիմնական փուլի ավարտումը (1974 թ.) մեկ արտադրական միավորին (ձեռնարկությանը, միավորմանը) բաժին էին ընկնում 12 միլիոն 230 հազար ռուբլու տարեկան համախառն արտադրանք և 1.110 մարդուց բաղկացած արտադրական անձնակազմ, ապա այս տարի այդ ցուցանիշները համապատասխանաբար կկազմեն 26 միլիոն 700 հազար և 2.055։ Ձեռնարկված միջոցները տվեցին հսկայական տնտեսական արդյունք։ Բավական է ասել, որ 1975 թվականից սկսած մեր բոլոր արտադրական միավորումներն ու ձեռնարկությունները սիստեմատիկաբար կատարում և գերակատարում են իրենց հիմնական պլանային առաջադրանքները։

ՀԱՆՐԱՊԵՏՈՒԹՅԱՆ ԹԵԹԵՎ ԱՐԴՅՈՒՆԱԲԵՐՈՒԹՅԱՆ մինիստրության ձեռնարկությունների առջև հսկայական խնդիրներ են դրված տասներորդ հնգամյակում։ Թողարկվող արտադրանքի որակի բարելավման, տեսականու ընդլայնման և արդյունավետության բարձրացման հետ մեկտեղ, ճյուղի ձեռնարկությունների աշխատողները պետք է 1975 թ. համեմատությամբ ժողովրդական սպառման ապրանքների արտադրությունը 1980-ին ավելացնեն 37,4 տոկոսով։ 1976 թվականի և այս տարվա առաջին կիսամյակի արդյունքները ցույց տվեցին, որ թեթև արդյունաբերության աշխատողների ավելի քան 65 հազարանոց բանակը հաջողությամբ կլուծի իր առջև դրված խնդիրները։ Պլանով նախատեսված էր համախառն արտադրանքի տարեկան աճ ապահովել 6,6 տոկոսով,

մինչդեռ 1976 թվականին այդ ցուցանիշը կազմեց 11,2 տոկոս. պլանից ավելի թողարկվեց 37,8 մլն ռուբլու արտադրանք։ Այս տարվա առաջին կիսամյակում աճի տեմպերը կազմեցին 7,5 տոկոս, իսկ գերպլանային արտադրանքը՝ 16,8 մլն ռուբլի։ Մեր մինիստրության ձեռնարկություններն արդյունաբերական արտադրանքի թողարկումը 1980 թվականին կհասցնեն մեկ միլիարդ ռուբլու։ Հնգամյակի վերջին տարում սպառողները կստանան ավելի քան 124 մլն քառակուսի մետր բամբակե, բրդե և մետաքսե գործվածք, երկու մլն քառակուսի մետր գորգ ու գորգեղեն, 57 մլն զույգ գուլպա-նասկեղեն, 75 մլն կտոր տրիկոտաժեղեն, 200 մլն ռուբլու կարի արտադրանք, 13 մլն զույգ կոշիկ և այլ ապրանքներ։

Այսօր թեթև արդյունաբերության աշխատողների կարևորագույն խնդիրն է՝ ըստ ամենայնի բարելավել արտադրանքի որակը և ընդլայնել տեսականին։ Այս խնդիրների լուծման նպատակով մինիստրության ձեռնարկություններում մեծ աշխատանք ծավալվեց հատկապես մեր մինիստրության ձեռնարկությունների կողմից թողարկվող կոշկեղենի, կարի և տրիկոտաժե արտադրանքի որակը բարելավելու և տեսականին ընդլայնելու միջոցառումների վերաբերյալ Հայաստանի կոմկուսի Կենտկոմի և ՀՍՍՀ Մինիստրների սովետի 1973 թվականի հոկտեմբերի 23-ի որոշման հրապարակումից հետո։

Որոշումը լայնորեն քննարկվեց կուսակցական կազմակերպությունների, ձեռնարկությունների կոլեկտիվների ժողովներում և մինիստրության կոլեգիայի ընդլայնված նիստում, նշվեցին թողարկվող արտադրանքի որակի արմատական բարելավման և տեսականու ընդլայնման կոնկրետ միջոցառումներ։ Այդ նպատակով մեծ աշխատանք կատարվեց ձեռնարկությունների տեխնիկական վերազինման՝ բարոյապես հնացած ու մաշված սարքավորումները նորերով փոխարինելու, նոր տեխնիկան և առաջավոր տեխնոլոգիան արմատավորելու ասպարեզում։ Ճյուղի ձեռնարկություններում իններորդ հնգամյակի տարիներին տեղակայվել են ավելի քան 13 հազար միավոր տեխնոլոգիական սարքավորումներ և գրեթե 60 տոկոսով նորացվել են գործող սարքավորումները։

Յուրացվել են նոր տեխնոլոգիական պրոցեսներ։ Ահա դրանցից մի քանիսը. բրդե գործվածքի արտադրությունը՝ բրդի և «նիտրոն» պոլիակրիլ-նիտրիլային մանրաթելի խառնուրդից, կոշիկի երեսացու կաշիների մշակումը պոլիմերների ջրային դիսպերսիաներով՝ առանց նիտրոներկերի կիրառման, սոսնձով ամրացվող կոշիկի արտադրությունը՝ նախապես մշակված ներբանների կիրառմամբ, ԲԴ—200 պնևմամանածագործական մեքենաներով բամբակե մանվածքի արտադրությունը և մանելու-ոլորելու համատեղ պրոցեսի տեխնոլոգիայի յուրացումը ՊԿ—100 մեքենաների վրա, տրիկոտաժե պաստառների դաջումը ֆոտոֆիլմտպագրիչ մեքենաներով, զանազան գործվածքների արտադրությունը անմաքոք, պնևմատիկ և պնևմառապիրային ջուլհակային հաստոցների վրա, տրիկոտաժե վերնահագուստի համար նախշերով տրիկոտաժե գործվածքների արտադրությունը «Մուլտիկոմետ» և «Մուլտիկարատ» մեքենաների վրա...

Այս և շատ այլ տեխնոլոգիական պրոցեսների արմատավորման նպատակն է եղել շեշտակի բարելավել արտադրվող ապրանքների որակը։

Կատարելագործվում են նաև առևտրական կազմակերպությունների հետ մեր կապերը։ Սպառողի պահանջմունքները համակողմանիորեն հաշվի առնելու և բավարարելու նպատակով է տոգորված «Առևտրի հետագա զարգացման միջոցառումների մասին» ՍՄԿԿ Կենտկոմի և ՍՍՀՄ Մինիստրների սովետի վերջերս ընդունած որոշումը, որով լուրջ խնդիրներ են դրվում ոչ միայն առևտրական կազմակերպությունների, այլև լայն սպառման ապրանքների արտադրությամբ զբաղվող արդյունաբերական ձեռնարկությունների առջև։

Ելնելով այդ որոշման պահանջներից, մենք առևտրի մինիստրության հետ միասին մշակում ենք աշխատանքի նոր ձևեր՝ ձեռնարկությունների ղեկավարների և առևտրական կազմակերպությունների ներկայացուցիչների գործարար հանդիպումներ ու խորհրդակցություններ, հարցերի համատեղ ուսումնասիրում և այլն, որոնց նպատակն է ճշգրտել ապրանքների նկատմամբ պահան-



չարկը և համապատասխան շտկումներ մտցնել արտադրական պլաններում։ ՍՄԿԿ Կենտկոմի և ՍՍՀՄ Մինիստրների սովետի որոշմամբ ժողովրդական սպառման ապրանքների արտադրությամբ զբաղվող մինիստրությունների առջև խնդիր է դրվում ստեղծել ֆիրմային խանութներ, իսկ հանրախանութներում և արդյունաբերական ապրանքների խոշոր խանութներում՝ սեկցիաներ ու բաժիններ, դրանցում կազմակերպելով տվյալ հանրապետության տերիտորիայում գտնվող արտադրական միավորումների և արդյունաբերական ձեռնարկությունների ապրանքների վաճառքը։

Մեր մինիստրությունը հանրապետության երեք խոշորագույն քաղաքներում՝ Երևանում, Լենինականում և Կիրովականում, արդեն նման ֆիրմային խանութներ է ստեղծել, որոնք հաջողությամբ պրոպագանդում են թեթև արդյունաբերության ձեռնարկությունների արտադրանքի լավագույն նմուշները։ Ինչ վերաբերում է պահանջարկի ուսումնասիրմանը, ապա կարելի է ասել, որ այդ խանութները յուրատեսակ սոցիոլոգիական հետազոտության կենտրոնների դեր են կատարում։

ՍՄԿԿ XXV ՀԱՄԱԳՈՒՄԱՐԸ հատկապես շեշտեց ժողովրդական սպառման ապրանքների արտադրությունն ընդլայնելու և որակը բարելավելու խնդրի վիթխարի կարևորությունը, դրա քաղաքական ու տնտեսական նշանակությունը։ Թեթև արդյունաբերության աշխատողներն իրենց թողարկած արտադրանքի որակի վերաբերյալ արված խիստ քննադատությունը համարում են սովետական մարդկանց բարեկեցության հետագա բարձրացման նկատմամբ կուսակցության մեծ հոգատարության վկայությունը։

Կուսակցության XXV համագումարից հետո հրապարակվեց ՍՄԿԿ Կենտկոմի և ՍՍՀՄ Մինիստրների սովետի՝ «1976—1980 թթ. մասսայական սպառման ապրանքների արտադրության և դրանց որակի բարձրացման միջոցառումների մասին» որոշումը։ Մեր հանրապետության թեթև արդյունաբերության աշխատողների ջանքերն այժմ ամբողջովին ուղղված են ինչպես կուսակցության XXV համագումարի, այնպես էլ ՍՄԿԿ Կենտկոմի ու ՍՍՀՄ Մինիստրների սովետի հիշյալ որոշման պահանջներն իրագործելու նպատակին։ Գործնական միջոցառումներ են կիրառվում, որպեսզի ժողովրդական սպառման ապրանքները լինեն գրավիչ, նորաձև ու բարձր որակի, բավարարեն գնորդների պահանջմունքները։

ՍՄԿԿ Կենտկոմի և ՍՍՀՄ Մինիստրների սովետի որոշումը լայնորեն քննարկվեց ձեռնարկությունների կոլեկտիվների ու կուսկազմակերպությունների ժողովներում, մշակվեցին գործողությունների կոնկրետ պլաններ։ Երևանի կոշիկի «Մասիս» արտադրական միավորման կուսակցական կազմակերպությունը, քննարկելով այդ որոշումը, լուրջ միջոցառումներ մշակեց արտադրանքի որակի բարելավման և տեսականու ընդլայնման նպատակով։ Այդ միավորումը հանրապետությունում առաջիններից մեկը ձեռնամուխ եղավ որակի կառավարման կոմպլեքսային սիստեմի ներդրմանը, որը լուրջ խթան հանդիսացավ և շատ բանով որոշիչ եղավ արտադրանքի որակի բարձրացման գործում։

Միավորման կուսկոմիտեի նախաձեռնությամբ շաբաթական մեկ անգամ գլխամասային ֆաբրիկայում անցկացվում է որակի օր։ Բարձրացվել է ամբողջ ինժեներատեխնիկական և ղեկավար աշխատողների պատասխանատվությունը արտադրանքի որակի և տեսականու բարելավման նկատմամբ։ Միավորման սիստեմում աշխատող կոմունիստները գտնվում են բարձր որակի արտադրանք թողարկելու համար մղվող պայքարի առաջին գծում։ Գլխամասային ֆաբրիկայի № 1 արտադրամասի կարող բանվոր, Աշխատանքային կարմիր դրոշի շքանշանակիր Ս. Հովհաննիսյանը, նախապատրաստական արտադրամասի բանվորուհի, ՀՍՍՀ Գերագույն սովետի դեպուտատ Քնարիկ Սողոմոնյանը, կարող № 1 արտադրամասի բանվորուհի, կուսբյուրոյի քարտուղար Սեդա Հովհաննիսյանը և ուրիշ կոմունիստներ միավորումում հայտնի են որպես բարձր որակով արտադրանք թողարկող բանվորներ և բազմիցս արժանացել են խրախուսանքի։ Կոմունիստ, ձևող արտադրամասի բանվոր Ռիգա Հովհաննիսյանի

նախաձեռնությամբ միավորման սիստեմում ծավալվեց անձնական դրոշմանիշով աշխատելու շարժումը:

Կուսակցական կազմակերպության և դիրեկցիայի համատեղ գործունեությունը հիանալի արդյունք տվեց: Միավորման արտադրած կոշիկների 19,5 տոկոսն այժմ թողարկվում է որակի պետական նշանով, իսկ 54,4 տոկոսը՝ «Ն» ինդեքսով: Վերջերս միավորումն արժանացավ ՍՍՀՄ Մինիստրների սովետի պետական ստանդարտների կոմիտեի և ՀԱՄԿԽ-ի դիպլոմի՝ 1976 թվականին որականիշով արտադրանքի թողարկման բնագավառում ձեռք բերած արդյունքների համար:

Ճյուղի ձեռնարկությունների կուսկազմակերպությունների, բոլոր կոմունիստների համար գործողության մարտական ուղեցույց է «Մոսկվայի մարզի թեթև արդյունաբերության ձեռնարկություններում կոլեկտիվների աշխատանքի բարձր արդյունավետության և որակի համար սոցիալիստական մրցության զարգացման ուղղությամբ մարզային կուսակցական կազմակերպության աշխատանքի մասին» ՍՄԿԿ Կենտկոմի որոշումը: Նրանում առաջադրված խնդիրների ոգով մեր ձեռնարկությունների կուսկազմակերպություններն այժմ մշակում են միջոցառումների լայն ծրագիր՝ կոլեկտիվների աշխատանքի արդյունավետության և որակի բարձրացման գործում մրցության դերի ուժեղացման նպատակով:

ՎԵՐՋԻՆ ՏԱՐԻՆԵՐԻՆ ՀԱՆՐԱՊԵՏՈՒԹՅԱՆ թեթև արդյունաբերության սիստեմում հսկայական միջոցներ են հատկացվել արտադրության վերակառուցման, նոր, բարձր արտադրողական սարքավորումների ներդրման համար: Այս առումով որոշակի գործ է կատարված Երևանի նուրբ-բրդյա գործվածքների կոմբինատում: Այստեղ միայն 1973—1977 թթ. ներդրվել են ավելի քան 300 միավոր մեքենասարքավորումներ: Հիմնովին վերասարքավորվել է մանվածքային արտադրամասը. տեղադրվել են բարձր արտադրողականությամբ նոր մեքենաներ, բարելավվել են տեխնոլոգիական շատ պրոցեսներ: Նոր տեխնիկայի և տեխնոլոգիայի ներդրման շնորհիվ կոմբինատը, որը տարիներ շարունակ ետ էր մնում, զգալիորեն բարձրացրել է ինչպես արտադրության տեխնիկատնտեսական ցուցանիշները, այնպես էլ արտադրանքի որակը: Կոմբինատը կատարում և գերակատարում է պլանային առաջադրանքները և այս տարվա մայիս ամսից արդեն թողարկում է որականիշով մեկ արտադրատեսակ:

Սովետական իշխանության տարիներին թեթև արդյունաբերության բուռն վերելքի հետ ստեղծվեցին և աճեցին արտադրական հիանալի կոլեկտիվներ, որոնք ընդունակ են լուծելու արտադրական ու տեխնիկական ամենաբարդ հարցերը: Կիրովականի Կամոյի անվան տրիկոտաժի ֆաբրիկայի կոլեկտիվը բաղկացած է 4.500 մարդուց: Դա գրեթե հավասար է նախասովետական Հայաստանի բոլոր բանվորների կեսին: Այս կոլեկտիվը, բարձր պահելով սոցիալիստական մրցության դրոշը, 1976 թ. արտադրանքի իրացման պլանը կատարել է ավելի քան 104 տոկոսով, իսկ այս տարվա առաջին կիսամյակինը՝ մոտ 103 տոկոսով: Ձեռնարկության արտադրանքի 6,5 տոկոսը թողարկվում է պետական որականիշով: Միայն այս տարվա վեց ամսում ձեռնարկությունը յուրացրել է յոթ նորաձև տրիկոտաժեղենի արտադրությունը:

Լենինականի բամբակագործական արտադրական միավորման ջուլհակուհի Կլարա Սարգսյանն արդեն կատարել է ընթացիկ հնգամյակի երեք տարվա առաջադրանքը և աշխատում է 1979 թվականի հաշվին:

Տասներորդ հնգամյակում հանրապետության թեթև արդյունաբերությունը պետք է առավել մեծ չափով բավարարի գերազանց որակի արտադրանքի նկատմամբ բնակչության պահանջարկը, շարունակ ընդլայնի և նորացնի արտադրանքի տեսականին: Բնակչության հարաճուն պահանջմունքներն առաջադրում են նոր խնդիր՝ հասնել արտադրության նոր, տեխնիկական ավելի բարձր մակարդակի, որն ապահովի արտադրանքի որակի բարձրացումը քիմիական մանրաթելերի ու թելերի, պոլիմերային նյութերի, բարձրորակ ներկերի լայն կիրառման հաշվին:

Նախատեսվում է թեթև արդյունաբերության զարգացման համար ընթա-



ցիկ հնգամյակում կատարել 155 մլն ռուբլու կապիտալ ներդրումներ, որից 40 միլիոնը կհատկացվի ձեռնարկությունների տեխնիկական վերազինմանը: Դրա շնորհիվ երկիրը մեր ձեռնարկություններից հնգամյակում կստանա մոտ հինգ միլիարդ ռուբլու լայն սպառման ապրանքներ:

Ինններորդ հնգամյակում ստեղծված արտադրական-տեխնիկական լավ բազան յուրատեսակ հիմք դարձավ որակի կառավարման կոմպլեքսային սիստեմ ստեղծելու և որակի բարձր կատեգորիայի ապրանքների թողարկումն զգալիորեն ավելացնելու համար: Դա հնարավորություն ընձեռեց արդեն հնգամյակի վերջին տարիներին որոշակի տեղաշարժեր կատարել այդ ասպարեզում: Եթե մինիստրությունը 1973 թվականին առևտրական ցանցին տվել է 2 մլն ռուբլու պետական որականիշով 14 անուն արտադրանք, ապա 1975 թվականին այն արդեն մատակարարել է 36,3 մլն ռուբլու՝ 83 անուն արտադրանք: Ընդ որում, մեր որոշ արտադրատեսակներ՝ մանկական, տղամարդկանց և կանացի նրբագեղ կոշիկները, կանացի տրիկոտաժե սպիտակեղենը, ձեռքի և մեքենական արտադրության գորգերը, ճանաչման են արժանացել միութենական շուկայում:

Արտադրանքի որակի արմատական բարելավման նպատակով տասներորդ հնգամյակում նախատեսվող կոմպլեքսային միջոցառումները հնարավորություն կընձեռեն պետական որականիշով ապրանքների արտադրությունը մինչև 1980 թվականը հասցնել ավելի քան 200 մլն ռուբլու կամ, 1975 թվականի 5,2 տոկոսի փոխարեն, դրանց տեսակարար կշիռը հասցնել 22 տոկոսի: Տասներորդ հնգամյակի առաջին տարվա աշխատանքի արդյունքները ցույց տվեցին, որ այդ ծրագիրը ռեալ է և կարող է իրականացվել: Պլանով նախատեսված 50 մլն ռուբլու փոխարեն, որակի բարձր կատեգորիայի արտադրանքը կազմեց 62,8 մլն ռուբլի, կամ ամբողջ ապրանքային արտադրանքի 8,1 տոկոսը, իսկ այս տարի այդ ցուցանիշը կհասնի 10,2 տոկոսի: Այս ամենը լավ երաշխիք են մինչև տարվա վերջը պետական որականիշով արտադրանքի թողարկումը ավելի քան 80 մլն ռուբլու հասցնելու համար:

Հնգամյակի առաջին տարում ձեռք բերած հաջողությունների համար ինչպես մինիստրությունը, այնպես էլ շատ արտադրական միավորումներ արժանացան ՍՍՀՄ թեթև արդյունաբերության մինիստրության և ճյուղային արհմիության Կենտկոմի դիպլոմների և փոխանցիկ կարմիր դրոշի:

Այժմ ճյուղի բոլոր արտադրական կոլեկտիվները պայքարում են գլխավոր խնդրի՝ հնգամյակի երկրորդ տարվա առաջադրանքների անթերի կատարման համար: Երևանի «Գարուն» կարի արտադրական միավորման կոլեկտիվի օրինակով հանրապետության շատ ձեռնարկություններ աշխատում են «Հոկտեմբերի 60-ամյակին՝ ապրանքային արտադրանքի ընդհանուր ծավալի 60 տոկոսի չափով որակի բարձր կատեգորիայի արտադրանք» նշանաբանով:

Սովետական պետության գերագույն նպատակը, ինչպես այդ մասին հըստակորեն ասված է ՍՍՀՄ նոր Սահմանադրության նախագծում, աշխատավորների կյանքի նյութական ու կուլտուրական մակարդակի բարձրացումն է: Սոցիալիստական հասարակարգը, նշված է նախագծում, ապահովում է սովետական քաղաքացիների կենսապայմանների անընդհատ բարելավումը՝ սոցիալ-տնտեսական և կուլտուրական զարգացման ծրագրերի կատարման համեմատ: Թեթև արդյունաբերության աշխատողները գիտակցում են կուսակցության սոցիալական քաղաքականության այս ելակետային պահանջների իրականացման ասպարեզում իրենց ունեցած չափազանց մեծ դերը և իրենց ծանրակշիռ ավանդն են ներդնում ժողովրդի բարեկեցության բարձրացման շնորհակալ գործում:

# ԵԿԵԼ ԵՆ ԲԱՄ, ԲԱՄ-Ն Է ԵԿԵԼ...

Ռ. Ս. ՀԱՄԲԱՐՅԱՆ

### ԲԼՈՑԿԻՆ ՁԵՌՆՈՑ Է ՆԵՏՈՒՄ

ՏԻՆԴԱՅԻ ՀՅՈՒՍԻՍԱՅԻՆ ՄԱՍՈՒՄ, Ամուր—Յակուտիա խճուղուց տայգայի մշտադալար մի շերտով անջատված է գողտրիկ մի ավան: Եթե տայգայի այդ շերտը չհիշեցներ կիպարիսների ծովափնյա ճեմուղի, արժեր զոհաբերել՝ մի այլ գեղեցկություն բացելու համար. այդ կլիներ № 116 մեքենայացված շարասյան (ՄՇ) տարածքը: Ներդաշնակ շարքերով կանգնած են ներկված տնակները, ճաշարանի մոտ փոքր, բարեկարգ հրապարակն է, քիչ վերև՝ մարզադահլիճը: Այս ՄՇ-ն Տինդայում հանգրվանած առաջին շինարարական կազմակերպությունն է, որ կառուցել է սեփական մարզադահլիճ, կազմակերպել իր մարզական ու գեղարվեստական ինքնագործունեության խմբակները: Ինչո՞ւ մի ուրիշը չունի նման օջախ: Կպատասխանեն՝ ժամանակ չկա, ազատ ձեռքեր չկան: Չբավարարող, անհամոզիչ պատասխան: Մյուս կազմակերպություններն ավելի զբաղված չեն, քան № 116 մեքշարասյունը:

— Պատկերացրեք, սկզբում մենք էլ տրտընջում էինք աշխատող ձեռքերի պակասի համար,— ասում է ՄՇ-ի արհկոմի նախագահ Անատոլի Նիկոլաևիչ Ժուրավլյովը,— դեսուդեն էինք ընկնում, մարդ փնտրում: Մի կերպ հավաքում, բերում էինք, բայց մյուս օրը փախչում էին: Արդեն ավանդույթներ ունեցող մեքշարասյունը, որ կազմավորվել էր 71-ին, հեռավորարևելյան աշխատանքի փորձ ուներ (Խաբարովսկում ավտոխճուղի էինք կառուցում) և 73-ի մայիսին փոխադրվել էր ԲԱՄ, կազմալուծվում էր մեր աչքի առաջ: Ուզում եմ ասել, որ լավ ղեկավարը շատ բան կարող է անել: ՄՇ-ի պետ նշանակվեց վաստակաշատ շինարար Լեոնիդ Սիդնևը, և մեր գործերն սկսեցին շտկվել: Նրա նշանաբանն էր՝ ոգևորել մարդկանց և փոխանցել այդ ոգևորությունը: Նոր աշխատող վերցնելիս մենք այժմ ընտրություն ենք կատարում: ՄՇ-ն այնքան համբավավոր է, որ նրա կոլեկտիվի անդամ դառնալը պատիվ է: 1974-ին մեր մեքշարասյունը սոցմրցման հաղթող ճանաչվեց և առաջինը ԲԱՄ-ում արժանացավ ՍՄԿԿ Կենտկոմի, ՍՍՀՄ Մինիստրների սովետի, ՀԱՄԿԽ-ի և ՀամԼԿԵՄ Կենտկոմի փոխանցիկ կարմիր դրոշին: 75-ին ՄՇ-ն պլանները կատարեց սեպտեմբերի 10-ին, մինչև տարվա վերջը լրացուցիչ կատարելով 600 հազար ռուբլու աշխատանք: Այդ ժամանակ մենք կառուցում էինք ԲԱՄ—Տինդա հատվածի՝ Յանկանի լեռնանցքին հարող կիլոմետրերի հողապաստառը: 76-ին մեզ նոր հատված տվեցին Տինդա—Բերկակիտ գծում: Խոստացել էինք գնացքին դեպի Նագոռնայա կայարանը ճանապարհ տալ մինչև դեկտեմբերի 25-ը: Գնացքը Նագոռնայա հասավ 19-ին...

...Յոթանասունյոթի մասին պատմելու հարկ չկա: Բամական մամուլի գարնանային էջերից չի իջնում Անաստասի Վիկտորովիչ Բլոցկու անունը: Նա մեքշարասյանը բերեց մի նոր առաջնություն՝ դառնալով Ն. Զլոբինի մեթոդի անդրանիկ կիրառողը ԲԱՄ-ում: Բլոցկին ձեռնոց նետեց դժվարին ու անհայտին: 85 հոգուց բաղկացած նրա բրիգադը երկաթուղու շինարարության մի քանի գործողություն է կատարում: Սկսելով զերո ցիկլից՝ հատված տայգան արմատախիլ անելուց, ուրվագծում է հողապատնեշը, հարթեցնում այն, կառուցում ջրատար անցքեր: Նրա բրիգադն իր աշխատանքով հաստատում է, որ քաղաքացիական շինարարության մեջ իրեն արդարացրած բրիգադային կապալի զլոբինյան մեթոդը լիովին կիրառելի է նաև երկաթուղային շինարարության բնագավառում: Այն բարձրացնում է կոլեկտիվի ամեն մի անդամի շահագըրգռությունը աշխատանքի վերջնական արդյունքի համար, ամենքին համակում մեծ պատասխանատվությամբ: Բրիգադի անդամները հոգածու տանտիրոջ նման են վերաբերվում ամեն մի գրամ նյութին, աշխատանքային րոպեին, մեքենային: Դրա շնորհիվ բրիգադը 1976-ի պլանները կատարեց 136 տոկոսով, աշխատանքի ինքնարժեքն իջեցնելով 35 հազար ռուբլով: Կենտրոնական ԲԱՄ-ում նրա օրինակին հետևող 44 բրիգադներ կատարել են մոտ 4 միլիոն ռուբլու արժողությամբ աշխատանքներ, նախատեսվածից պակաս ծախսելով 20 հազար մարդ-օր:

Ընդ որում, և սա ուզում ենք հատկապես շեշտել, կապալով վերցված աշխատանքը բրիգադները կատարել են պայմանագրային ժամկետներից միջին հաշվով 10 օր շուտ՝ իրենց անդամների համար ապահովելով բարձր աշխատավարձ: Վաստակի հավելումը ստացվել է հենց նրա շնորհիվ, որ կատարման ժամկետը կրճատվել է՝ պահանջված որակի պահպանմամբ:

— Դժվարությունները չպետք է խանգարիչ պատճառ դառնան բրիգադային կապալի մեթոդի տարածմանը,— Տինդայում գտնվելու օրերին հայտարարեց սոցիալիստական աշխատանքի հերոս Նիկոլայ Զլոբինը:— Կարևորը սկըսելն է: Կարծում եմ, որ այդ մեթոդը ԲԱՄ-ում իրեն կարդարացնի այնպես, ինչպես արդարացրել է այլ տեղերում, այլ կառույցներում:

Գործն սկսված է: Սկսել է 116 ՄՇ-ի բրիգադավար Բլոցկին: Նա է վերստին հաստատել մեթոդի կենսունակությունը, արժանացել հաղթողի պատվին: 1976-ին «Օգոնյոկ» հանդեսը Ո՞վ կլինի առաջինը նշանաբանով մրցույթ էր հայտարարել այն բրիգադների միջև, որոնք մայրուղում հաստատում են զլոբինյան մեթոդի ճըշմարտացիությունը: Ամբողջ ԲԱՄ-ում դրանց թիվը հասնում է 150-ի: Բլոցկու ղեկավարած բրիգադը հավասարը չունեցավ՝ գլխավորելով շահած կոլեկտիվների հնգյակը:

### ԱՆԱԿՆԿԱԼՆԵՐԻ ՕՐ

ԲԱՄ-ը համամիութենական կոմերիտական հարվածային կառույց է:

Խնդրում եմ ինձ հասցնել Նագոռնայա՝ դեպի հյուսիս, Յակուտիա ձգվող գծի հանգրվաններից մեկը, նպատակ ունենալով հանդիպել երիտասարդ բամականներին:

Մյուս օրը, վաղ առավոտյան, նստում եմ բենզատար մեքենայի խցիկը՝ 50 աստիճան սառնամանիք է (մորթե գդակով եմ, տաք ձեռնոցներով, ծնկներիս՝ էլի մի մուշտակ...). ընդամենը երկու ճանապարհային տհաճ արկածից հետո հասնում ենք մի վայրի, որտեղ ամրացված վահանն ազդարարում է՝ «№ 116 ՄՇ-ի աշխղեկություն»:

Մտնում ենք կարմիր անկյուն՝ տաքանալու: Աչքիս զարնում է մի լուսանկար. երիտասարդ տղան կանգնել է փոքր ԲԱՄ-ի գծուղին պատկերող պլակատի ֆոնին. մակագրությունն է՝ «Առա՛ջ, դեպի Բերկակիտ»:

— Սա պլակա՞տ է, թե՞ իսկական մարդ:

— Ե՛վ, պլակատ է, և՛ իսկական: Մեր Վալերին է: Կանգնել է պլակատի առաջ ու լուսանկարվել:

Բամական երկտարյա կենսագրությամբ 22-ամյա վարորդ Վալերի Կուրբատովը օրինակ ծառայելու իրավունք է նվաճել: Ռյազանցի տղայի կյանքում ամեն ինչ հստակ է, որոշակի. դպրոց, բանակ, կոմերիտական ուղեգրով ԲԱՄ, ապա և նրա ամենացրտաշունչ տեղամասը՝ Յակուտիա: Իր բարեկամների «մինչև ե՞րբ» հարցին Վալերին պատասխանում է այս լուսանկարով...

— Իսկ հետո՞,— հարցնում ենք նրան:

— Շատ հեռու չգնանք,— կատակում է նա,— ում հետ ձեզ ուզում եմ ծանոթացնել, մոտիկ է: Նա է իսկական բամականը:

Փոքր անց մենք սեղմում ենք Վլադիմիր Միրոնովսկու ձեռքը: Աշխղեկության մեխանիկը նույնպես կոմերիտական ուղեգրով է ժամանել ԲԱՄ՝ Ղազախստանից: Վալերին այսպես է բնորոշում նրան. «Մեքենան ախտորոշում է ձայնից: Ախտորոշում է անսխալ, բուժում անսխալ»:

Բայց պարզվում է, որ Վլադիմիրն էլ իսկական բամական չէ:

— Մենք ղեղնակտուցնե՛ր ենք,— ասում է նա,— ես ձեզ կծանոթացնեմ արժանավոր մարդկանց հետ:

Եվ ծանոթացնում է.

— Պինյաև Անատոլի, կոմերիտական, էքսկավատորավար, Ամուրի մարզային սովետի դեպուտատ:

— Դյումենկո Անատոլի, նույնպես էքսկավատորավար, աշխղեկության արհկոմի նախագահ, բազում պարգևների կավալեր:

Մենք դուրս ենք գալիս հանրակացարանի պատշգամբ: Ներքևում տարածված է Տինդա—Բերկակիտ գծի Նագոռնայա կայարանը: «Տարածվել» բառը շռայլություն է. Նագոռնայան բաղկացած է մի քանի երկարուկ հանրակացարանից, ճաշարանից, ակումբից և երկու խանութից: Այն տարածվելու է հետո, ավելի ուշ:

Աշխղեկությունը պատրաստում է 262-ից մինչև 268 և 286-ից մինչև 288 կիլոմետրերի երկաթուղային հողաթումբը: Պետք է սեփական աչքով տեսնել իմանալու համար, թե գերմարդկային որպիսի՜ ջանքեր է պահանջում 8 կիլոմետրանոց հողաթմբի ստեղծումը: Մայրուղին անցնում է նախալեռնային և լեռնային գոտով: Այստեղ փխրուն հող չկա: Եթե քար չէ կամ ժայռ, ապա սառցակալած ապար է: Այն մանրացնելու համար պայթեցնում են, փշրում, վարում... Ամռանը դեռ ոչինչ: Ձմռանն այդ աշխատանքը տասնապատիկ ծանր է:

Նստելով Վալերիի «Մագիրուսը», մեկնում ենք աշխատավայրը: «Մագիրուսի» խցիկում տաք է, լավ է ջերմացվում, և պատուհաններն էլ չեն սառցակալում: Վալերին մի վերնաշապկով է: Շրջանցելով բլուրը, դուրս ենք գալիս մի հրապարակ, ուր վխտում են ինքնաթափ մեքենանե-

րը: Հրապարակի մեջտեղում բարձրանում է մի հողաբլուր, որի վրա բանում են ամբարձիչները: Ասես միրաժ լինի: Չյան առատությունն ու սաստիկ ցուրտը թույլ չեն տալիս հավատալ, որ այստեղ եռուզեռ է, մարդիկ են աշխատում:

Մառախուղը՝ ձմեռային սաստիկ ցրտի բանբերը, պատել է տայգան: Ո՛չ, միրաժ չկա, և եթե սա հանքավայր է, ապա այստեղ սոսկ հող են արդյունահանում: Սարը տաշում են մի ձոր լցնելու համար: Էքսկավատորավար Անատոլիները բեռնում են, իսկ Վալերին փոխադրում է:

Ինձ սպասում էր մի նոր անակնկալ:

— Ճանաչո՞ւմ եք այս երիտասարդին,— հարցնում է Վլադիմիր Միրոնովսկին՝ ամենագետ մեխանիկը,— ձեր հայրենակիցն է:

— Ոչ,— խոստովանում եմ:

— Դե՛հ, ծանոթացեք: Ռազմիկ Թովմասյան, աբովյանցի: Ավտովարորդ է, մեր աշխդ՚նկությունից: Իմ բարեկամն է: Խնդրեմ, ահա լուսանկարվել ենք ամռանը, լողանալուց հետո: Ամռանը մեզ մոտ շոգը երբեմն 35 աստիճանի է հասնում:

Վոլոդյան ցույց է տալիս մի այլ լուսանկար:

— Այս ընկերների՞ն էլ չեք ճանաչում: Բոլորը Հայաստանից են: Կենտրոնում համեստորեն ժպտացողը մեր շարասյան անվանի բրիգադավարներից է՝ Վարուժան Միքայելյանը: Մենք նրան «Վասյաջան» ենք ասում: Վաղը կծանոթացնեմ...

## ՄԵՐՈՆՔ

«Լուսանկարն արված է անցյալ տարվա հոկտեմբերին, Տինդա—Բերկակիտ հատվածի 286-րդ կիլոմետրում, երբ շինարարները հարվածային հերթափոխի էին կանգնել՝ «Յակուտսկին հանձնենք կոմերիտմիության ծնունդի օրը» նշանաբանով: Այն ժամանակ Միքայելյանի ղեկավարած բրիգադը հողահանույթով վերացնում էր մի ժայռաբլուր, որն սպառնում էր փակել գծադրի շարժումը դեպի Նագոռնայա: Պակասում էին հորատող հաստոցները: Բրիգադի տերիտորիայում գտնվող կիսակառույց երկու կամուրջներն զգալիորեն երկարացնում էին հողափոխադրման ճանապարհը: Վրա հասավ սառնամանիքը: Բայց և այդ պայմաններում բրիգադը պահպանում էր աշխատանքի բարձր տեմպերը, օրինակ էր տալիս ինքը՝ բրիգադավարը— 116-րդ մերքենայացված շարասյան վարորդ Վարուժան Սուրենի Միքայելյանը: Անհատական մրցության մեջ նա արժանացել է «Իր մասնագիտության լավագույնին» պատվո դրոշի»:

Ամուրի մարզի բամական տարածքում գտնվող Ձելտուլակի շրջանում լույս տեսնող «Ավանգարդ» թերթից է այս մեջբերումը: Լրագրի էջից ժպտում է Վարուժանը՝ մորթե մեծ գդակով:

ԲԱՄ-ում ավտոբուսային երթևեկություն չկա: Մեզ տուն՝ Տինդա բերեց Վարուժանը՝ իր «Մագիրուսով»: Նագոռնայայից դուրս եկանք երեկոյան ժամը 7-ին. անցնելու էինք 103 կիլոմետր: Վարուժանը գիտեր, որ անհանգիստ եմ իր հետադարձի համար: Բայց չուզեց գիշերել Տինդայում: «Գործ կա», վճռական ասաց: Եվ ահա նա գրում է. «Ես այդ օրը շատ լավ տեղ հասա, գիշերվա ժամը 12-ին գործատեղում էի, մինչև 3-ը աշխատեցի... Ի՞նչ գրեմ, էլի այնպես ցուրտ ու քամի, ոչի՜նչ, մերը երկրորդ ձմեռն է, սովորել ենք»:

Ահա մի մարդ, որը, երբ հարկավոր է, գիշերցերեկ չի ճանաչում: Գիտե ուրախ ծիծաղել, կատակել, քեֆ անել՝ երբ առիթ կա. այդպես էլ, նրա միջոցով, իր ռուս ընկերներն իմացան, թե ինչ բան է «ջանը» և Վարուժանին վերակընքեցին ռուսականն ու հայկականը միացրած— «Վասյաջան»:

— Որտե՞ղ է Վասյաջանը:

— Վասյաջանին դիմեք...

— Միակ մարդը, որ կկարգավորի այդ գործը, Վասյաջանն է:

Վասյաջանն արդեն հատուկ անուն է, որ սիրով արտաբերում են նրա բրիգադի 33 անդամները և բոլոր նրանք, ովքեր գեթ մի անգամ շփվել են Վարուժանի հետ 116-րդ մեքենայացված շարասյունում:

Յոթնաստւնվեցի ամռանը շարասյանը նոր տեղամաս տվին Բերկակիտ տանող գծում: Կազմակերպվում էին նոր բրիգադներ. զլոբինյան մեթոդը կիրառելու գործում Բլոցկու հետ չափվելու ընդունակ մարդիկ էին հարկավոր:

Վարուժան Միքայելյանի թեկնածությունը մրցակցությունից դուրս էր: Որպես ճանապարհաշինարար նա հմտացել էր Մոսկվա—Վոլգոգրադ խճուղին, Երևան—Սևան մայրուղին կառուցելիս, վերջինիս մոտակայքում գտնվող Աբովյան քաղաքում էլ վերջնականապես հաստատվել է Վարուժանի ընտանիքը:

Բամական ի՜նչ պատկեր ասես, որ չի սահել նրա մեքենայի հայելու միջոցով: Գրեթե չիջնելով ղեկից, մյուսներից շատ երթ կատարելով, Վարուժանը կարողանում է նրբորեն զգալ բրիգադի աշխատանքային ռիթմը, կարգավորել այն, տեսնել մանրամասները, գնահատել մարդկանց կատարածը:

— Բրիգադում իմ ամենահաճելի մրցակիցը,— ասում է Վարուժանը,— Իվան Ռյաբուշկինն է: Խնայել չգիտե: Աչքդ թեքեցիր՝ կանցնի՜, կգերազանցի քեզ: Այսպիսի մարդկանց շնորհիվ էր, որ անցյալ տարվա վերջին կարողացանք 70 հազար խորանարդ մետր ապար փոխադրել ու ճանապարհ բացել գծադիրի համար: Բուլդոզերավար Խոդոցան Վալերին ևս խնայել չգիտե: Ո՛չ իրեն, ոչ էլ ժամանակը: Նա մեր նկատմամբ այն առավելությունն ունի, որ այս կողմերից է, Բուրյաթիայից: Ցրտից չի վախենում, գործից էլ:

116-րդ շարասյան առաջին աշխդեկության 4-րդ բրիգադի բրիգադավար Միքայելյանին են կցված 13 ինքնաթափ, 3 էքսկավատոր, 2 բուլդոզեր: Սա մեծ ուժ է: Այժմ բրիգադը պատրաստում է Նագոռնայա կայարանի բեռնմանբեռնաթափման հրապարակը: Պետք է փորվի ու փոխադրվի 180 հազար խորանարդ մետր ապար:

Խոշոր շինարարություններն ունենում են ո՛չ միայն մարդ-հերոս, այլև՝ մեքենա-հերոս:

ԲԱՄ-ում այդ մեքենան ինքնաթափն է: Հենց նոր հատված տայգան առաջինը տրորում է դրա անիվը: Այն առաջինն է փորձարկում նոր կամուրջը, ստուգում գետանցի պիտանիությունը... Այդ ինքնաթափը ո՛չ միայնի բեռնատար է, այլև մարդատար, անհրաժեշտության դեպքում՝ շտապ օգնություն և հարմարավետ խցիկով տաք մի անկյուն, երբ դրսում սառնամանիք է:

1975 թվականի ապրիլին կամավորների մի եռյակ Հայաստանից ժամանեց Տինդա և իր ծառայությունն առաջարկեց դարի կառույցին: Վարորդներ էին, իսկ ինքնաթափերը սպասում էին իրենց տերերին: Սկզբնական շրջանում նրանց վստահեցին «ԿՐԱԶ» ինքնաթափեր: Շինանյութ էին փոխադրում Անդրսիբիրյան երկաթուղու Բամ կայարանից Տինդա, բերում էին հավաքովի փայտյա տների վահաններ, վառելանյութ: Անիվ էր իջնում, խլանում էր մոտորը, նեղլիկ մի կեռմանից դուրս էր թռչում հանդիպակաց մեքենան... Պետք է ետ տալ, իսկ հետևում մի այլ մեքենա էր...

Հայաստանի լեռնային պայմաններում աշխատած վարորդը միշտ կարողանում էր հնարը գտնել:

Գործը գնալով դյուրանում էր, դառնում սովորական: Բանը միայն այն չէր, որ տղաներն ստացան նոր մեքենաներ՝ «Մագիրուսներ», որոնք ո՛չ միայն հզոր են, դիմացկուն, հնազանդ, այլև հարմարավետ: Բանն այն էր, որ ավելանում էին նրանց փորձն ու գիտելիքները, հեռավոր աշխարհը, նրա բնությունը, նրա մարդիկ բացում էին իրենց գաղտնիքները, օգնության հասնում, օգնություն ակնկալում:

Ռազմիկ Թադևոսյանը, որի մասին ինձ պատմում էր նրա բարեկամը՝ Վլադիմիր Միրոնովսկին, աշխատում է հենց Վարուժանի բրիգադում: Դժվարին ուղիներ է հաղթահարել նրա «Մագիրուսը»:

—Ինչ էլ լինի,— վճռեց Ռազմիկը,— Նագոռնայա—Տինդա ճանապարհի վրա ես երեք ժամ չեմ վատնի: Հարյուր կիլոմետրը երկու ժամվա «խարջ» է...

Այդպես էլ անում է: Եվ հետևորդներ ունի:

— Հենց հասանք Բերկակիտ, հաշվիր, որ պարտքներս կատարել ենք: Այն ժամանակ էլ տուն, Աբովյան վերադառնալու մասին կմտածեմ,— ասում է Ռազմիկը:

Մի փոքր այլ կարծիքի է ամենակրտսերը, երևանցի Բագրատ Բաբայանը: Ա՛յ, նրան վայել էր կոմերիտական ուղեգիրը, մինչդեռ նա եկել էր՝ այդ մասին խորհելու ժամանակ չունենալով: Շտապում էր: Բանակում ծառայել է Նովոսիբիրսկի մարզում: Այստեղի մասշտաբներով Տինդայից Նովոսիբիրսկ «երկու քայլ է»:

Տուն եկավ, որ տեսնի յուրայիններին, համբուրի մորն ու հարազատներին, խմի բարի գալուստի թասն ու նորից ետ դառնա: Բագրատը էքսկավատորավարի օգնական է Վարուժանի բրիգադում: Վարուժանն ասում է.

— Իմ բախտը բերել է, մերոնք լավ են աշխատում: Պահպանում են իրենց պատիվը, գիտեն աշխատանքի հարգը, ընկերոջ հարգը: Այսպիսի մարդկանց ԲԱՄ-ում գնահատում են:

Ուզում էի ասել Բագրատն այստեղ նորեկ է, բայց հիշեցի, որ երկու ձմեռ թրծվել է սիբիրյան սառնամանիքում ու հիմա, հակառակ մյուս տղաների, մորուք չի պահում, որը ԲԱՄ-ում թելադրված է միայն մի մոդայով— դեմքը ցրտահարությունից պաշտպանելու:

— Հյուսիսում գործը վերջացնելուն պես կշարժվեմ դեպի արևելք, դեպի Կոմսոմոլսկ: ԲԱՄ-ի հետ ես դեռ խոսելիք ունեմ...

Բագրատը անկեղծ է, հավատում ես նրան:

## ՏԻՆԴԱՅԻՑ... ՏԻՆԴԱ

Դաղստանի լեռներում, Ցումադինի շրջանում, կա մի գյուղ՝ անունը Տինդա: Այստեղ է ծնվել Աբդուռահման Մոհամեդովը: Երբ մի փոքր մեծացել է, պապը նրան նստեցրել է ձիու թամբին ու հյուր տարել հարևան գյուղը: Աբդոն դուրս է եկել բակ՝ խաղալու իր հասակակիցների հետ: Ինչ ասել է՝ իրեն չեն հասկացել, ինչ ասել են՝ ինքը չի հասկացել: Լացակումած վազել է պապի մոտ:

— Պա՛պ, ա՜յ պապ, ովքե՞ր են ապրում այս գյուղում:

— Ավարացիներ:

— Իսկ ո՞վ ենք մենք:

— Ավարացիներ:

— Բա ինչո՞ւ նրանք իմ լեզուն չգիտեն, ես՝ նրանց...

— Այդպես է, տղա՛ս: Որքան ավարական գյուղ, այնքան լեզու...

Աբդոն հետո հպարտությամբ է տալու իր մեծ հայրենակցի՝ Ռասուլ Համզատովի անունը, որ

փառք բերեց ավարական ցեղին ու ավարական լեզվին: Հետո նա սովորելու է դպրոցում, սովորելու է գրական ավարերենը, որը թեև փոքրաթիվ, բայց բազմալեզու ավարացիների հաղորդակցման միակ միջոցն է: Չգիտես գրական ավարերեն՝ անլեզու ես քո գյուղից դուրս: Խոսիր, ուրեմն, ռուսերեն, որ քեզ հասկանան:

Այնպես որ Տինդա գյուղը սոսկ գյուղ չէ, այն եզակի է, բարբառի, իր սովորույթի, իր կենցաղի մայրաքաղաքն է այն:

Տասնութ տարեկան հասակում զինվորական ծառայությունը Աբդոյին Տինդայից դուրս կոչեց մեծ ճամփորդության: Դուր եկավ Տոմսկը, այնտեղ էլ մնաց, սովորեց բուլդոզերավարի գործը և անցավ աշխատանքի: Անտառն էին հատում, երկաթգծի փայտակոճեր պատրաստում: Միշտ չէ, որ հետաքրքրվում ես, թե որտեղ է գործադրվում քո աշխատանքի արդյունքը: Մարդկանց համար ես աշխատում... Բայց ինչ-որ աշխուժությունը, եռուզեռը մեծ է, մարդկանց շուրթերից չի իջնում ԲԱՄ, ԲԱՄ-ի պատվեր բառերը:

Աբդոն ակամա հետաքրքրվեց.

— Ի՞նչ բան է այդ ԲԱՄ-ը:

— Երկաթուղի է:

— Սովորակա՞ն:

— Չէ՛: Սա ուրիշ է...

Պատմեցին Աբդոյին Բայկալ—Ամուր մայրուղու մասին, ինքն սկսեց թերթերում տեղեկություններ փնտրել նոր միայն ծավալվող կառույցի վերաբերյալ: Եվ որոշեց. «Արձակուրդ կըվերցնեմ, կգնամ կտեսնեմ, թե ինչ բան է ԲԱՄ-ը: Աչքովս կտեսնեմ, այն ժամանակ էլ...»: Աբդոն միտքը չէր ավարտում...

Ու մի օր էլ հայտնեց կնոջը.

— Գնում եմ Տինդա:

— Այսքան վա՞ղ: Սպասենք ամռանը, միրգը հասունանա:

— Ես մենակ եմ գնում և քո իմացած Տինդան չեմ գնում:

— Ուրիշ Տինդա է՞լ կա:

— Իհարկե: ԲԱՄ-ի մայրաքաղաքը...

Մի ամիս անց ստացվեց Աբդոյի նամակը. «Աշխատում եմ Տինդա—Բերկակիտ հատվածի Մոգոտ կայարանում, 576 շինմոնտաժային գընացքում: Շատ լավ եմ, քեզ եմ սպասում: Այն փայտակոճերը, որ պատրաստում էինք Տոմսկի անտառներում, այստեղ տեղադրում ենք: Երբ ասացի, որ ես և իմ ընկերները պատրաստել և ԲԱՄ ենք ուղարկել 100 հազար փայտակոճ, պետը շատ հուզվեց, ուրախացավ և ասաց, որ մնա ու այդքան փայտակոճ էլ տեղադրի: Վալյա, այստեղ գործ շատ կա, լավ աշխատողին գնահատում են: Այնպես որ շտապ վեր կաց, արի...»:

Մոգոտ կայարանը հեռու չէ Տինդայից: Աբդուռահմանին հանդիպեցի Տինդայի խանութում, ուր նա գնել էր մի ամբողջ ցանցատոպրակ «Պրիմա» ծխախոտ և աշխատում էր դրանց կողքին տեղավորել ձեթի շշերը:

— Օգնիր, հայրենակի՛ց,— դիմեց նա ինձ:

Սկզբում Աբդոն հյուր եղավ մեզ մոտ, հետո մենք գնացինք Մոգոտ: Աբդոյի բրիգադում բոլորը ծխում էին «Պրիմա» ծխախոտ, և ես կռահեցի, որ նա տոպրակի եղածը հավասարաչափ բաշխել է բոլորին: Մոգոտը կառուցվում է արագ: Երկաթուղին մտել է կայարան, հեռացել դեպի հյուսիս՝ դրանով իսկ ավելի պարտավորեցնելով մոգոտցիներին: Լայն թափ է ստացել կապիտալ շինարարությունը, ու թեև Աբդոյին խոստացել էին գծաշերտի հարթեցում հանձնարարել, առժամանակ հետաձգեցին այդ, որովհետև հենց կայարանում բուլդոզերավարի համար ծով աշխատանք կար: Հորդորեցին Աբդոյին այն նույն ձևով, ինչպես համոզում էին բոլոր նորեկներին: Ամենքին էլ թվում է, թե կառուցել ԲԱՄ, նշանակում է միայն գիծ անցկացնել: Հին բամականներն սկզբում հարգանքով են վերաբերվում այս բնական մղմանը, հետագայում «ծաղրելու» համար.

— Ասում են՝ մի տղա է եկել ու պահանջում է իրեն գործ տալ միայն գծաշերտի վրա: Ի՞նչ կասես այս մասին, Աբդո՛:

— Հիմա՛ր, ակամա բացականչեցի ես,— պատմում էր մեզ Աբդոն,— առանց իմանալու, որ այդ ինձ եմ վիրավորում: Հետո գլխի ընկա, իրենց հետ ծիծաղեցի ու խոստովանեցի. «Հապա մի թող գան կապիտալ շինարարություն... Այն ժամանակ կիմանան՝ ինչ բան են ԲԱՄ-ն ու դժվարությունները»:

Իսկ Աբդուռահման Մոհամեդովը արդեն երկու տարի է իր նորմանները կատարում է 130—150 տոկոսով:

***

Տինդան խտացնում է մեր հայրենիքի բոլոր գույները, այստեղ աշխատում են բոլոր հանրապետությունների, գրեթե բոլոր ազգերի և ազգությունների ներկայացուցիչներ: Ոմանք եկել են հեռու հեռվից, ոմանց մոտ ինքը՝ ԲԱՄ-ն է եկել...

## ՄԻ ՀԻ՞Ն ՊԱՏՄՈՒԹՅՈՒՆ

1902 թվականին «ամերիկյան սինդիկատը» ցարական կառավարությանն առաջարկել է՝ իրեն հանձնարարել կառուցելու Սիբիր—Ալյասկա երկաթուղին: Սինդիկատի գործակալներն այդ ծրագրի շահավետությունը պայմանավորում էին ո՛չ միայն Յակուտիայի հեքիաթային հարստություններով: Նրանց հրապուրում էր նաև միամիտ ու առատաձեռն տեղացիների հետ «հարաբերությունների մեջ մտնելու», իսկ ուղիղ իմաստով ասած՝ կողոպտելու հեռանկարը:



Տայգայի մարդկանց՝ էվենկների մասին պարզ ու սրտաբուխ տողեր ունի Միխայիլ Պրիշվինը. «Ահա որսաց ազնիվ եղջերու: Միսը կախեց ծառից. ծառը իր տունն է, կարելի է թողնել-գնալ մորթու: Սպանեց բազմաթիվ սկյուռներ: Ծառի մոտ վերադարձավ օտար հետքով: Տեսավ՝ ինչ-որ մեկը եկել, իր մսից կերել է: Էվենկը տեսավ, ինքն իրեն ասաց. «Լա՛վ մարդ է եկել»: Որսորդը սկյուռիկները կախեց, կերավ, խմեց, հանգստացավ ու գնաց կզաքիս ու սամույր որսալու: Վերադարձավ ու տեսավ, որ եկել է մի ուրիշ մարդ, կերել է մսից ու տարել է մի քանի մորթի: Էվենկն ինքն իրեն ասաց. «Աղքատ մարդ է եղել, ոչինչ»: Երրորդ վերադարձին տեսավ, որ նոր հյուրը տարել է բոլոր մորթիները, բայց մսին ձեռք չի տվել: Այդ ժամանակ նա ասաց. «Վա՛տ մարդ է եկել: Ոչ թե նրա համար է վատ, որ մորթիները տարել է, այլ նրա համար, որ կուշտ լինելով՝ մորթի է տարել»:

Բնիկների խոր հոգին չէին ճանաչել ու ճանաչելու միտք չունեին բոլոր նրանք, ովքեր հանձին նրանց մտածող, զգացող ու արարող մարդուն չէին տեսնում: Էվենկը նրանց համար ուներ մի կոչում— հարստացնել ուրիշին:

Բայց «ամերիկյան սինդիկատի» հաշիվները հեռուն էին տանում, կամենում էր խաբել նաև ցարական կառավարությանը: Սինդիկատը թելադրում էր այնպիսի պայմաններ, որոնք թալանչիական էին— երկաթգծի երկարությամբ հայտնաբերված հումքը և բնական այլ հարստություններ նա շահագործելու է 99 տարի: Այս առաջարկը մնաց անարձագանք: Այլևայլ պատճառների կողքին կար նաև մեկը, որն առանձնապես դուր չէր գալիս ռուսական գործարար շրջաններին, մանավանդ նրանց, ովքեր արմատներ էին նետել Հեռավոր Արևելքում: Այդ նույն տեղացիների պարզամտությունից ու դյուրահավատությունից քիչ չէին կորզում հենց իրենք, էլ ինչո՞ւ «ոսկե երակը» ուրիշներին զիջել: Բնիկները դիտվում էին այնպիսի օբյեկտներ, որոնք թանկարժեք մորթիներ հայթայթելուց և դրանք մի շիշ խմիչքով վաճառելուց բացի ուրիշ բանի ընդունակ չէին: Ժամանակը հակառակն ապացուցեց, իսկ ԲԱՄ-ը վավերացրեց:

...Անցած օրերի հատուկենտ վկաներ են մնացել: «Զարյա» կոլտնտեսության անդամ Անագիր Նիկիֆորովը պահպանել է հին ծխամորճը, որ ստացել է պապից, հանգիստ ու անշտապ պատմելու սովորությունը և պատմություններ, որոնք պետք է վավերագրվեն ի գիտություն գալիք սերունդների:

— Վաղո՛ւց է այդ պատահել,— կպցնելով ծխամորճը՝ սկսում է ծերուկը:— Այն տեղում, որ հիմա կառուցում են երկաթգիծը, անտառ էր, տայգա: Աղվեսը, արջը, մորթատու գազանիկն ու եղջերուն էին հիմնական բնակիչները: Բնիկները՝ էվենկները, քոչում էին եղջերվի նախիրների հետևից: Ուր եղջերուն, այնտեղ էլ էվենկը: Իսկ տեղ ու տարածություն՝ որքա՛ն ուզես: Բայց անհանգիստ էր էվենկի կյանքը, նրան, ասես, դիվադադար էին արել: Խա՛ռը ժամանակներ էին. նրանց կեղեքում էին ոսկի որոնողները, նեղում ոսկի արդյունահանողները... Նրանք դառնում էին թափառական բանդաների՝ խունխուզների զոհ: Ամենուր վխտում էին զանազան խաբեբաներ: Խորամանկությամբ նրանք էվենկներից կորզում էին մորթեղեն: Նրանցից մեկին լավ եմ հիշում...

Միգիտկայի ափերին ապրող էվենկների մոտ հյուր է գալիս ոմն Զայցև: Թե ե՛րբ և ի՛նչ պայմաններում էր ընկել նա մեր ցուրտ աշխարհը, ոչ մի էվենկ չգիտեր: Ոչ ոք չգիտեր, թե որտե՛ղ է ապրում նա, ինչո՛վ է զբաղվում: Ասենք, դա որևէ մեկին պետք էլ չէր: Լավ մարդ էր Զայցևը, և վերջ: Նա երևում էր ձմռան կեսերին ու գարնանամուտին, երբ ավարտվում էր որսաշրջանը: Հագնում էր բևեռաղվեսի մորթուց կարված գդակ ու մուշտակ, կեցվածքով՝ իսկ և իսկ ոսկի արդյունաբերող... Բերում էր իր հետ զանազան ապրանքներ, մթերքներ: Որսորդները նրանից կարող էին գնել նաև զենք ու զինամթերք: Իսկ ամենակարևորն այն էր, որ նրա սահնակում առատ էր լինում սպիրտը: Հյուրասիրում էր ուզածիդ չափ, պատիվ տալիս էվենկներին ու պատիվ առնում: Նրանց հետ կերուխումի մեջ էր քոչակայանում գտնվելու ամբողջ ժամանակ: Էվենկներն ուրախ էին այդպիսի հյուր ունենալու համար: Նրանց դուր էր գալիս Զայցևի անմիջականությունը, նրան ոչ մի բան չէին խնայում: Եվ նա իր հետ տանում էր թանկարժեք մորթով լցված հսկայական պարկեր:

Զայցևը ոչ մեկին չէր նեղացնում: Կարողանում էր բոլորին համոզել ու հանգստացնել: Ճարպիկ էր նա, իսկ էվենկները՝ դյուրահավատ... Ու նա շահեց մեր վստահությունը, հավատում էինք նրան ու նրա նմաններին, մինչև այն դեպքը, որին վկա եղավ հայրս...

Մի անգամ Զայցևը Միգիտկայի ափերին երևաց ձնհալից հետո: Մենակ չէր, հետն ընկեր կար: Նրանք մի տեսակ անհանգիստ էին, լարված ու վախվորած: Խնդրեցին հորս իրենց հասցնել մինչև Զելտուլակ: Հայրս մտածեց. «Ես հանքի համար խոտ եմ հնձել, իսկ տերը փողը լրիվ չի վճարել: Գուցե գնամ Զելտուլակ, տեսնեմ՝ ինչ կա: Համ էլ Զայցևին կտանեմ...»:

Լծելով երեք նարտ, ճանապարհ ընկավ դեպի Զելտուլակ:

Այդ ժամանակ Զելտուլակում խոշոր հանք կար, որն ավազակային արշավներից պահպա-

նում էր հատուկ կազակական ջոկատը: Դրանից այն կողմ, գետի ափին, մի հանք էլ կար, ուր և ուղևորվում էին Զայցևն ու իր ընկերը: Ճանապարհին նրանք չեն քաշվում հորիցս, սկսում են զրուցել իրենց մտահոգող գործերի մասին, և նա գլխի է ընկնում, որ նրանք ինչ-որ ավար, ինչ-որ մարդկանց հետ արդար չեն կիսել...

Հասնելով Տինդա, Զայցևը որոշում է ճանապարհը շարունակել գետով: Բայց բախտը չի բանում: Դեպի Տինդա էր գալիս կողոպտիչ խունխուզների մի մեծ ավազակախումբ: Նրանց ուղեկիցներն ու կայուրները (սահնակ քշողները) նույնպես էվենկներ էին: Այն, ինչ Զայցևն անում էր լեզվով, խունխուզները զենքի ուժով էին անում: Նրանցից մի քանի հոգի հրացանները պահում էին էվենկների վրա, և սրանք հնազանդորեն կատարում էին ավազակների հրամանները:

Խունխուզներին տեսնելուն պես Զայցևը սփրթնում է, իսկ նրանց առաջնորդը, ցանցառ մորուքով մի հաղթահասակ մարդ, կանչում է.

— Ծուղա՞կն ընկար, հոգյա՛կս: Հիմա քեզ ցույց կտամ, թե ինչ բան է ազնիվ խոսքը...

Մենք այլևս Զայցևին չտեսանք: Մի անգամ, հիշելով նրա մասին, հարցրի հորս, թե ինչ եղավ Զայցևը.

— Ի՞նչ պիտի լինի,— ասաց հայրս,— Զայցևին շանսատակ արին նրա նման կողոպտիչները...

Էվենկների հին սերը, սերը բնության, նրա կենդանական աշխարհի նկատմամբ ամենազոր է, և ոչ մեկի մտքով չի էլ անցնում խաթարել այն, կամ կտրել նրանց հիմնական զբաղմունքից: Նրանց թակարդները հմտորեն սարքվում են տայգայում, նրանց հրացաններն առաջվա նման ավետում են հաջող որսի ավարտը: Բայց փոփոխություններ կան, էվենկը գիտե, թե որսած յուրաքանչյուր գազանիկի դիմաց որքա՛ն է ստանալու և ո՛ւմ է հանձնելու մորթին: Նա միայնակ չէ, նա թափառական որսորդ չէ, որին տայգայի աստվածը կարող է ողորմալ կամ պատժել ամլությամբ: Եվ հետո նա միայն բնության շնորհին չի ապավինում: Ախր, մորթատու կենդանիների առատությունն էլ կապված է տարվա եղանակի, այն բանի հետ, թե տայգան իր զավակներին ի՛նչ բարիքներ կպարգևի: Զոբային եղավ, հիվանդություններ եղան՝ տայգան ժլատանում է, էվենկին որս չի տալիս:

Էվենկները սովորել են խելացի տնօրինել իրենց գործերը: «Զարյան» գազանաբուծական տնտեսություն է: Այստեղ բազմացնում են տասնյակ տեսակի գազաններ, որոնց գարդը երկնագույն բևեռաղվեսն է: Բայց վանդակի մեջ գազանիկ խնամելու համար գիտելիքներ են պետք: Ահա այստեղ է, որ էվենկն օգտվում է մեր երկրի փոքր ազգություններին տրված մեծ իրավունքներից: Տինդայում գործում է էվենկական ազգային դպրոց, որի սաներն ստանում են ձրի դասագրքեր, սնունդ ու հագուստ: Ուսման, ապրուստի ամբողջ ծախսերը հոգում է պետությունը:

Ես հիմա չեմ պատմի, թե նրանց շարքերից ինչպիսի՜ նշանավոր մարդիկ են ելել: Կասեմ միայն, որ ԲԱՄ-ը էվենկների, յակուտների և այս երկրամասում ապրող մյուս ազգությունների համար դարձավ քննության դպրոց, նրանք ապացուցեցին, որ չկա, գոյություն չունի իրենց ուժերից ու կարողություններից վեր աշխատանք:

### ՈՍԿԵ ՕՂԱԿ

Տոնին վաղուց էին սպասում:

Իհարկե, դա առաջին տոնը չէր մայրուղում: Բամականներն սկզբնավորել են գեղեցիկ ավանդույթներ, որոնք գրավում են մարդկանց, մասսայականություն հաղորդում մրցությանը: Տարածված է առաջին գնացքի ուղևորի մրցությունը: Այդ իրավունքը տրվում է նրանց, ովքեր գերազանց են մասնակցել գծաշարը հերթական կայարան հասցնելու աշխատանքներին: Ընդգրկվում են բոլոր մասնագիտությունների ներկայացուցիչները և նրանց ողջերթ են մաղթում ավագ ընկերները, անվանի մարդիկ:

ԲԱՄ-ը ունենալու է 200 կայարան և կիսակայարան: Իսկական տոն է դրանցից յուրաքանչյուրի հանդիպումը ռելսերի հետ:

Բայց այս մեկն ուրիշ է: Այդ տոն է, որին մարդիկ դարերով են սպասել...

Առաջին անգամ երկաթուղին մտնում է յակուտական հող: Ամուրի մարզին սահմանակից Հարավային Յակուտիայի այս մասում, ուր գալարվում, ռռնում են աշխարհի ամենացուրտ քամիները, ուր տայգան գաճաճանում է՝ սկզբնավորելով տունդրան, այսօր սուլելու է գնացքը:

Անսովո՜ր զգացում, անսովո՜ր պատկեր:

Ամենքն են շտապում այդտեղ— մեծից փոքր:

Լծվել է եղջերուի սահնակը... Այն անցել է հարյուրավոր կիլոմետրեր, որպեսզի երկաթուղին միայն կինոնկարներում տեսած յակուտների գոնե մի խմբի ներկա դարձնի այս եզակի արարողությանը: Մարդիկ խռնվում են ռելսերի մոտ, այն տնակի շուրջը, ուր հետո լինելու է կիսակայարանի շենքը: Չխկում է լուսանկարչական ապարատը: Եվս մի հուշանկար այն սահնակի մոտ, որն այդտեղ են հասցրել Յակուտիայի անվանի կայուրները: Լուսանկարում են նրանք, ովքեր կառուցել են երկաթուղին՝ ռուսներ, ուկրաինացիներ, տաջիկներ, հայեր...

Տոնը առիթ ունի՝ երկաթուղու մուտքը Յակուտիա: Տոնը անուն ունի՝ ոսկե օղակի տեղադրում: Այդ օղակը եզրափակում է երկաթգծի տվյալ հատվածը: Ոսկեղենին ներկված ռելսերը պատրաստ էին դեռ մի ամիս առաջ և սպասում էին այն ձեռքերին, որոնք իրենց տեղադրելու իրավունք պետք է նվաճեին: Դրա համար պայքարում էին Տինդա—Բերկակիտ երկաթուղին կառուցող շինարարական 20 ստորաբաժանումների 4.354 բանվոր և ծառայող:

Շատ-շատերի՝ տարբեր ազգությունների ներկայացուցիչների անձնվեր աշխատանքով ոսկե օղակը տեղադրվեց ժամկետից 10 օր շուտ:

Տինդա—Յակուտսկի 103 կիլոմետրանոց ուղեհատվածում, օրինակ, կառուցվեց 76 կամուրջ: Դրանց մի մասը № 47 կամրջաշինական ջոկատի ջանքերով և, որպես կանոն, ժամկետից շուտ: Այդ ջոկատի պետն է Սպարտակ Գարսիաշվիլին:

Հավակնորդները հազարավոր էին: Սակայն մրցության արդյունքներով առաջնություն նվաճեց 577 շինմոնտաժային գնացքի՝ Նիկոլայ Յագոսֆերովի ղեկավարած գծի մոնտաժողների կոլեկտիվը:

Այդ ցրտաշունչ առավոտյան 38 հոգի, ուսերին մրցության հաղթողի ժապավենը, կիսաշրջան կազմեցին ապագա կառամատույցի տեղում:

Նրանց մեջ էր էվենկ Վոլոդյա Տարաբուկինը: Նոյեմբերյան կտրող քամուց կարկամած այդ օրը նա բոլորովին այլ տեսք ունի՝ հուզված, հանդիսավոր: Առաջին պահի շփոթությունն անցել է, կանգնած է նա հպարտ ու աներեր, այնքան ինքնավստահ, որ հակառակ իր փոքր մարմնի, հսկա է թվում: Օրեր առաջ ես նրան տեսա, երբ երկարապոչ ծանր մուրճով խփում էր գամերին, առաջին իսկ հարվածից դրանք փայտակոճի մեջ խրելով մինչև գլխիկը: Անհավատալի էր, բայց փաստ: Այդ ամենի մեջ տարօրինակ ոչինչ չէի գտնի, եթե մինչև ուղեշերտ գալս մի այլ անակնկալի ականատես եղած չլինեի: Վագոնիկներում տղաներն ինձ ցույց էին տալիս փոքրիկ դիմանկարներ, ճեպանկարներ, ընկերական շարժեր ու բնանկարներ, միշտ կրկնելով նույնը.

— Մեր Վոլոդյայի ձեռքի գործն է: Շնորհքին չափ չկա:

Հետո հանդիպեցի «մեր Վոլոդյային», զրուցեցի նրա հետ, համոզվելով, որ փոքրամարմին երիտասարդի համար նկարչությունն ուժից վեր բան չէ, գուցե ամենահարմարը: Իմացա, որ նա հեռակայում է Մոսկվայի Արվեստի ժողովրդական համալսարանում, դիպլոմային աշխատանքի թեման է Յակուտիայի առաջին ռելսերը:

— Դա մի կոմպոզիցիա է, ուր դաժան բնությունը ստվերարկվելու է մարդկանց խիզախությամբ: Ես ուզում եմ ցույց տալ մարդու ուժի անսահմանությունը:

Եվ ահա տեսնում եմ նրան գամեր ագուցելիս: Մուրճը նրան ենթարկվում է ավելի հնազանդ, քան վրձինը:Ես կասեի՝ շատ ավելի հնազանդ...

Վոլոդյան տղամարդ է և երկաթգծի մոնտաժումը գլուխ է բերում մեծ վարպետությամբ: Իսկ այս աղջիկնե՞րը, նրա հայրենակցուհինե՞րը: Յակուտուհիներ Ռայա Բայսկայան և Լյուբա Յակովլևան Վոլոդյայի նման կատարում են մոնտաժողի ծանր աշխատանքը... Նրանց էլ գերում են մուսաները. Ռայան բանաստեղծություններ է գրում, իսկ Լյուբան սիրում է երգել:

Խորհելու ժամանակը չէ:

Հնչում է հանդիսավոր քայլերգը:

Հնչում են երախտագիտության խոսքեր աշխատավորի կատարած մեծ գործի, դրա նշանակության մասին: Առջևում յակուտական՝ ցայսօր անձեռնմխելի գանձարանն է: Հիշեցնենք. այնտեղ, նախնական հետախուզության տվյալներով, միայն մի տեղամասում հանգչում է կես միլիարդ տոննա ածուխ: Հանքաշերտի զանգվածային լայնությունը հասնում է մինչև 70 մետրի, իսկ մեր հին, փառաբանված Դոնբասում 2—2,5 մետր է:

Մինչ գովաբանվում են արժանավորները, նրանցից երկուսը դանդաղ Յակուտսկին են մոտեցնում ոսկե օղակը: Յակուտիա մտած առաջին ջերմաքարշը վարում են մեքենավար Գեորգի Գուսևը և նրա օգնական Վլադիմիր Զախարովը: Ահա մի զույգ, որ առաջնությունը երբեք չի զիջում: Նրանց մեքենան 1972-ին Բամ կայարանում, ապա 75-ի մայիսին, հաղթանակի օրը, Տինդա կայարանում մատուցեց արծաթե օղակները:

Իսկ այժմ՝ ոսկին...

Գծադիրը հատուկ հրամանով գետին է իջեցնում ոսկե օղակը: Գնացքը մտել է յակուտական հող: Մեծ տոն է ո՛չ միայն էվենկների և յակուտների համար: Դա ամբողջ սովետական ժողովրդի տոնն է, տոն, որի պատվին հուշարձան է կառուցվել:

Այնտեղ, բլրի գագաթին, վեր է խոյացել մեծ արվեստով ռճավորված մի զույգ սյուն, որը մարմնավորում է յակուտի ամենահին ու ամենալավ սովորույթը. ցանկալի հյուրի ձիու սանձից բռնած՝ նա առաջնորդում է դեպի ձիակապի սյուները՝ «սերգեն», հրապարակավ ցուցադրելով իր զգացմունքները:

Այնտեղ, վերևում, բլրի վրա, ԲԱՄ-ը բարձրացրել է այդ զգացմունքի հավերժության հուշասյունը: Բարեկամություն է նրա անունը, ժողովուրդներին կապող մի օղակ, որը ոսկուց էլ թանկ է:

ԿՈՒՍԱԿՑԱԿԱՆ
ՇԻՆԱՐԱՐՈՒԹՅԱՆ ՏԵՍՈՒԹՅՈՒՆ
ԵՎ ՊՐԱԿՏԻԿԱ

# ՄԱՆԿԱՎԱՐԺԱԿԱՆԸ ԵՎ ՀՈԳԵԲԱՆԱԿԱՆԸ ԿՈՒՍԱԿՑԱԿԱՆ ԱՇԽԱՏԱՆՔՈՒՄ

Ս. Մ. ԽԱՉԱՏՐՅԱՆ
ՀԿԿ Կենտկոմին առընթեր կուսակցական հանձնաժողովի նախագահ

*1.*

*ԿՈՒՍԱԿՑԱԿԱՆ ԱՇԽԱՏԱՆՔԸ ամենից առաջ քաղաքական աշխատանք է, իսկ քաղաքականությունը Վ. Ի. Լենինի դիպուկ բնորոշմամբ «ավելի նման է հանրահաշվին, քան թվաբանությանը, և է՛լ ավելի բարձրագույն մաթեմատիկային, քան տարրականին»* (Երկեր, հ. 31, էջ 111—112):

*Կուսակցական աշխատանքի արդյունավետության բարձրացման անհրաժեշտությունը, որը ՍՄԿԿ XXV համագումարի կարևորագույն պահանջներից է, դաստիարակության գործի գիտական կազմակերպման առումով առնչվում է և չի կարող չառնչվել մանկավարժության և հոգեբանության հարցերին:*

*Կոմկուսակցության քաղաքական գործունեության և մանկավարժության փոխհարաբերության հարցի արմատական լուծումը տվել է Վ. Ի. Լենինը դեռևս 1905 թ. գրած «Քաղաքականությունը մանկավարժության հետ շփոթելու մասին» հոդվածում: Առաջնորդը նշել է, որ սոցիալ-դեմոկրատական կուսակցության քաղաքական գործունեության մեջ կան և միշտ էլ կլինեն մանկավարժության որոշակի տարրեր: Երբ սոցիալ-դեմոկրատը մոռանում է այդ տարրերի մասին, ապա նա դադարում է սոցիալ-դեմոկրատ լինելուց: Միաժամանակ, երբ սոցիալ-դեմոկրատը քաղաքականության խնդիրները հանգեցնում է մանկավարժությանը, ապա նա ևս դադարում է սոցիալ-դեմոկրատ լինելուց* (տե՛ս Երկեր, հ. 8, էջ 577)*: Հետևությունն այն է, որ կուսակցության քաղաքականության խնդիրները շատ ավելի լայն են և ծավալուն, քան մանկավարժության խնդիրները: Մանկավարժականն ընդհանուր քաղաքական խնդրի մի մասն է միայն, որն իր հերթին կարևոր նշանակություն ունի կուսակցության քաղաքականության իրականացման, մասսաների վստահությունը նվաճելու և նրանց դաստիարակելու գործում:*

*Կուսակցական աշխատանքում, սակայն, մանկավարժության և հոգեբանության ոչ բոլոր տվյալներն են հնարավոր օգտագործել, քանի որ դպրոցականների և մեծահասակների դաստիարակության հարցերը չի կարելի նույնացնել: Ահա թե ինչու ՍՄԿԿ XXII համագումարը մի կողմից՝ պահանջեց ընդլայնել մանկավարժական գիտելիքների կիրառման ոլորտը, մյուս կողմից՝ խնդիր*



*դրեց մանկավարժությունը դուրս բերել նեղ-դպրոցական շրջանակներից, նրա հետազոտություններում ընդգրկել նաև մեծահասակների և հասարակական կազմակերպությունների դաստիարակչական աշխատանքի խնդիրները:*

*ՍՄԿԿ XXIV և XXV համագումարներն առանձնահատուկ կերպով շեշտեցին արտադրական կոլեկտիվների դերը ոչ միայն պետական պլանների ու առաջադրանքների կատարման, այլև աշխատանքի նկատմամբ կոմունիստական վերաբերմունքի, աշխատավորների հասարակական-քաղաքական և սոցիալական ակտիվության զարգացման գործում: Մեր կուսակցության XXV համագումարը բազմակողմանիորեն հիմնավորեց կոմպլեքսային մոտեցման անհրաժեշտությունը աշխատավորության կոմունիստական դաստիարակության գործում: Այն պետք է խարսխվի գաղափարական-քաղաքական,աշխատանքային և բարոյական դաստիարակության միասնության վրա:*

*Դաստիարակչական ֆունկցիան վաղուց ուսուցիչների ու ծնողների մենաշնորհը չէ միայն: Այն լայնորեն իրականացնում են նաև ձեռնարկությունների և կազմակերպությունների, կոլտնտեսությունների և սովխոզների ղեկավարները, ինժեներներն ու գյուղատնտեսները, արտադրության վարպետներն ու բրիգադավարները, սովետական բանակի հրամանատարներն ու քաղաշխատողները, կուսակցական, սովետական, կոմերիտական և արհմիութենական աշխատողները: Այժմ մանկավարժությունն այն գիտությունն է, որը փաստորեն սպասարկում է մեր ողջ հասարակությանը, լայնորեն կիրառվում կուսակցական աշխատանքում:*

*ԴԱՍՏԻԱՐԱԿՈՒԹՅՈՒՆԸ ՈՉ ՄԻԱՅՆ գաղափարական ներգործման միջոց է, այլև չափազանց նուրբ արվեստ: Այն վերին աստիճանի ակտիվ և դինամիկ պրոցես է, որը խարսխված է նպատակների հստակության, զգացմունքների անկեղծության, հոգու ջերմության վրա: Այն չի հանդուրժում ոչ մի քարացածություն, ձևամոլություն ու անտարբերություն:*

*Իսկ ի՞նչ է նշանակում դաստիարակել մարդուն: Դա նշանակում է՝ նպատակասլացորեն ներգործել մարդու հոգևոր աշխարհի վրա, այն օժտել նոր հատկանիշներով, հաղթահարել մտածելակերպի, խառնվածքի խոտելի կողմերը: Սովետական նշանավոր մանկավարժ Վ. Սուխոմլինսկին, օրինակ, գտնում էր, որ դաստիարակությունը կոչված է բարձրացնելու, վեհացնելու մարդուն: Նա շեշտում էր, որ յուրաքանչյուր մարդ մի աշխարհ է, որը պետք է ոչ միայն ճիշտ ըմբռնել, այլև հասցնել ինքնաճանաչման և ինքնակատարելագործման: Դաստիարակողի վարպետությունն այն է, որպեսզի երեխան հարգի իրեն, գնահատի սեփական արժանապատվությունը:*

*Կուսակցական աշխատողը ամեն օր և յուրաքանչյուր ժամ շփվում է մարդկանց հետ, առնչվում բարդ հանգամանքների, բազմապիսի կոնֆլիկտային իրադրությունների, էմոցիոնալ բռնկումների և այլ երևույթների հետ: Կուսակցական աշխատողին ամենից առաջ անհրաժեշտ է մշտապես հիշել մանկավարժական կուլտուրայի, մանկավարժական տակտի մասին: Մանկավարժական տակտը, ըստ Կ. Դ. Ուշինսկու, ըստ էության, ուրիշ բան չէ, քան հոգեբանական տակտ, որը նույնքան անհրաժեշտ է մանկավարժին, որքան գրականագետին, պոետին, հռետորին, դերասանին, քաղաքագետին, այն բոլոր անձանց, ովքեր մտածում են ներգործել ուրիշ հոգիների վրա* (К. Д. Ушинский, Соч., т. 8, стр. 46):

*Մանկավարժական տակտը հասարակական գործչի, ուսուցչի, դաստիարակի մանկավարժական վարպետության խտացրած արտահայտությունն է, որը ձևավորվում է մանկավարժական գիտության, հոգեբանության, մանկավարժական պրակտիկայի և առաջավոր փորձի օրգանական միասնության հիման վրա, օգնում է ճիշտ վարքագիծ մշակել մարդկանց հետ փոխհարաբերությունների մեջ մտնելիս, ճիշտ կողմնորոշվել և օպտիմալ լուծումներ գտնել կոնֆլիկտային իրադրությունների պայմաններում:*

*Մանկավարժական տակտի կարևոր կողմերից մեկը հիմնավորված, արդարացի պահանջկոտությունն է, նույնիսկ խստապահանջությունը: Ա. Մակարենկոն անսասան, կտրուկ, պարզ և հստակ պահանջ ներկայացնելը համարում*

էր սովետական մանկավարժության օրենքը։ Նա ասել է. «Իմ հիմնական սկզբունքն է եղել՝ որքան կարելի է շատ պահանջ մարդու նկատմամբ, սակայն դրա հետ մեկտեղ որքան կարելի է շատ հարգանք նրա հանդեպ» (Соч,. М., 1958 г., т. V, стр. 228—229)։

Ըստ Ա. Մակարենկոյի, դաստիարակության գլխավոր գործոնը կոլեկտիվն է, իսկ դաստիարակության խնդիրը՝ կոլեկտիվիստական դաստիարակությունը։ Կոլեկտիվը սոցիալապես կենդանի օրգանիզմ է, որն ունի իր նպատակները, լիազորությունները, պատասխանատվությունը, միասնությունը, փոխգործողությունները։ Առանց այդ հատկանիշների կոլեկտիվը սոսկ անկազմակերպ բազմություն է։ Ընկերների խումբը ևս կոլեկտիվ չէ։ Կոլեկտիվը բարձրագույն կազմակերպվածության է հասնում այն ժամանակ, երբ ինքն է պահանջներ ներկայացնում իրեն և կոլեկտիվի ամեն մի անդամի։ Այդպիսի կոլեկտիվ, նշում էր Ա. Մակարենկոն, չի կարելի ստեղծել երկու-երեք տարում, դա ավելի երկար տարիների գործ է։ Սակայն, երբ այն ստեղծվել է, անհրաժեշտ է ամեն կերպ պահպանել։ Կոլեկտիվ ստեղծելն ու դաստիարակելը չափազանց դժվարին գործ է, իսկ քայքայել այն կարող է առաջին իսկ կարճամիտը (Նույն տեղը, էջ 231—233)։

Պահանջկոտության նպատակն է հիմնավորված պահանջ-առաջադրանք ներկայացնել անձին, հասնել դրա անվերապահ կատարմանը։ Դա մարդկանց, կադրերի դաստիարակության և նրանց պատասխանատվության բարձրացման ամենահուսալի միջոցն է։ Պահանջ-առաջադրանքը պետք է լինի միանգամայն հիմնավորված, արդարացի։ Պահանջ-առաջադրանք ներկայացնողը պետք է հուշի, թե ինչպես այն կատարել, օգնի կատարողին, եթե նա դժվարանում է, սակայն նրա փոխարեն ինքը չաշխատի։

Խրատաբանությունը, հայտնի ճշմարտությունները տեղին և անտեղի կրկնելը, բոլորին, ամենուրեք և ամեն մի պարագայում սովորեցնելու ձգտումը ընդհանուր ոչինչ չունի մանկավարժական և հոգեբանական տակտի հետ։ Դրանք շատ հաճախ հակառակ ներգործություն են ունենում, առաջ են բերում անտարբերություն, պասիվություն։

Գոյություն ունի մանկավարժական և հոգեբանական ուշագրավ և հայտնի պրիոմ. եթե ուզում ես իսկապես հասկանալ դիմացինիդ, հասկանալ նրա հոգեբանությունը, ապա քեզ դիր նրա վիճակի մեջ, աշխատիր մոդելավորել նրա գործելակերպը՝ ելնելով իր իսկ հայեցակետից։

Չափազանց կարևոր է, որպեսզի բոլոր նրանք, ովքեր գործ ունեն մարդկանց, քաղաքացիների, ենթակա աշխատողների հետ, մշտապես լինեն հավասարակշռված հոգեբանական վիճակի մեջ, առանձնապես՝ կարևոր որոշումներ արձակելիս, մարդկանց բախտը տնօրինելիս։ Հարկ է մշտապես հիշել, որ նման պարագաներում վնասակար են և՛ հապճեպությունը, և՛ դանդաղկոտությունը, իսկ նյարդային վիճակը, ջղայնությունը, կոպտությունը միմիայն կարող են վնասել գործին։

Դաստիարակությունն այն ժամանակ կլինի իրոք արդյունավետ, երբ մարդիկ, շրջապատը առանձնապես չեն էլ զգում, որ ինչ-որ մեկը զբաղվում է իրենց դաստիարակությամբ։

Հսկայական դաստիարակչական նշանակություն ունեն գիտությունը, արվեստը, գրականությունը, մարդկային ողջ նյութական և հոգևոր մշակույթը։ Մարդկության այդ հոգևոր գանձերի հետ առնչվելիս՝ մարդիկ վերափոխվում, ազնվանում են, սակայն այդ ամենը մեխանիկորեն տեղի չի ունենում։ Գիտելիքներն այն ժամանակ են ստանում մեծագույն դաստիարակչական նշանակություն, երբ մարդիկ դրա համար նախապատրաստվում են (ճաշակի զարգացում, գեղեցիկն ընկալելու կարողության դաստիարակում), երբ դրանք ակտիվ ներգործության շնորհիվ դառնում են համոզմունք, աշխարհայացք։ Ահա թե ինչու դաստիարակության չափանիշը ոչ թե հասունության վկայականն է կամ բուհական դիպլոմը, այլ գիտական աշխարհայացքի, համոզվածության, հասարակական պարտքի գիտակցության առկայությունը։ Այդ է պատճառը, թերևս,



որ երբեմն գիտելիքների պաշարը մնում է որպես մեռած կապիտալ, որով ոմանք շղարշում են իրենց բարոյական մերկությունը և հոգու սնանկությունը։

## 2.

ԿՈՒՍԱԿՑԱԿԱՆ ԱՇԽԱՏԱՆՔԻ ՀԻՄՆԱԿԱՆ ԵՂԱՆԱԿԸ համոզման մեթոդն է. որը դաստիարակության հիմքն է։ Մեծ մանկավարժ Կ. Ուշինսկին մարդկային դաստիարակության մայրուղին համարում էր համոզմունքը, իսկ համոզմունքի վրա կարելի է ներգործել միայն համոզմունքով (К. Д. Ушинский, Собр. соч., т. II. стр. 28, М., 1948 г.):

Համոզմունքը հարուցում է մարդու ակտիվությունը, աշխատելու, ստեղծագործելու եռանդը, ձգտումը, ցանկությունը։ Այս առումով մարդկանց համոզելու ամենահզոր գործիքը մարքսիզմ-լենինիզմն է, կոմունիստական կուսակցության ներքին և արտաքին քաղաքականությունը, մեր հասարակության մեջ իշխող քաղաքական և բարոյահոգեբանական առողջ մթնոլորտը, կոմունիստական բարոյականությունը, սովետական ապրելակերպը։

Մարդկանց համոզելու միջոցը փաստերն են և փաստարկումները։ Վերջիններս լինում են տրամաբանական և հոգեբանական։

Որևէ ճշմարտություն ընկալելու համար մարդկանց պետք է նախապատրաստել, տրամադրել, այդ ճշմարտությունները մատուցել համոզիչ փաստարկումներով, էմոցիոնալ մեծ ուժով։

Համոզման մեթոդի հզոր միջոցը խոսքն է և գործը (անձնական օրինակը)։ Անկեղծ և ճշմարտացի խոսքը մարդկանց ամենանվիրական զգացմունքների գաղտնարանը տանող միակ միջոցն է։ Կուսակցական աշխատողի բանավոր կենդանի խոսքի էմոցիոնալ ներգործությունը շատ մեծ է և դրանից պետք է հմտորեն օգտվել։ Ցավոք, դեռևս կուսակցական շատ աշխատողներ պատասխանատվության բարձր զգացումով չեն վերաբերվում իրենց ելույթներին, իսկ ոմանք, անտեսելով բանավոր խոսքի կարևորությունը, գերադասում են գրավոր խոսքը, մոռանալով, որ այն հոգեբանական պատնեշ է ստեղծում խոսողի և ունկնդիրների միջև։

Կուսակցական աշխատողը ոչ միայն պետք է լավ խոսել իմանա, այլև մարդկանց լսելու, ունկնդրելու կարողություն։ Մարդկանց համբերատար և ուշադիր լսելը, զրույցին անկաշկանդ, անկեղծ բնույթ հաղորդելը իսկապես արվեստ են, վարպետություն։

Կուսակցական աշխատողը պետք է և լինի մարդկանց համար մատչելի, հասարակ ու համեստ։ Կոմդաստիարակության գործի խոշոր գիտակ Մ. Ի. Կալինինը նշել է, որ եթե կուսակցական աշխատողը բանվորի կամ շարքային կուսակցականի հետ խոսելիս թեկուզ որևէ շարժումով, ձայնի երանգավորումով, աննշան, պատահական արտահայտությամբ հասկացնել տա, որ ինքը նրանից խելոք է կամ ավելին գիտե, ապա նա կորած է։ Բանվորը և ընդհանրապես շարքային մարդը, նշում է նա, չի սիրում այնպիսի մարդկանց, ովքեր իրենց բարձր են դասում և նրանց չի ունկնդրի, իսկ հարմար պահին ինչպես հարկն է կհիշեցնի (Сборник «О коммунистическом воспитании», М., 1945 г., стр. 96):

Դաստիարակության ոչ մի միջոց չի կարող փոխարինել անձնական օրինակին։ Մասսաները ղեկավարներին փորձում են ոչ միայն խոսքով, այլև գործով։ Նվաճել մասսաների վստահությունը, նվաճել այն ազնիվ աշխատանքով և անբասիր վարքագծով՝ ահա սա պետք է լինի յուրաքանչյուր իսկական կուսակցական աշխատողի նպատակն ու նրա անձնական երջանկությունը։

Որոշ ղեկավար աշխատողներ, չըմբռնելով աշխատանքի լենինյան ոճի պահանջները, չափից ավելի են հրապուրվում ղեկավարման վարչական մեթոդներով, ի վնաս գիտական մեթոդների, իսկ ոմանք, ընդհակառակը, գերադասում են շրջանցել սուր պրոբլեմները, կոնֆլիկտային իրադրությունների ժա-

մանակ վարում են չմիջամտելու, թշնամիներ չվաստակելու ջայլամի քաղաքականություն։ Սրանք երկուսն էլ անընդունելի ծայրահեղություններ են։ Ժամանակին Վ. Ի. Լենինն էր նախազգուշացնում ղեկավար աշխատողներին, որպեսզի նրանք չհրապուրվեն վարչարարությամբ, այլ կարողանան իրոք հրապուրել մարդկանց (տե՛ս ППС, т. 45, стр. 351)։

Ժամանակակից գիտական կառավարման սկզբունքներով զինված և կոմունիստական շինարարության բազմահարուստ փորձով իմաստնացած ղեկավար աշխատողները քաջ գիտեն, որ իրենց վստահած լիազորություններից և իշխանություններից պետք է օգտվել միայն այն ժամանակ, երբ ներգործության մյուս բոլոր միջոցներն արդեն սպառված են։ Մեր օրերի ղեկավարը պարտավոր է կատարելապես իմանալ արտադրության և հասարակական կյանքի գիտական կառավարման, աշխատանքի գիտական կազմակերպման, արտադրական կոլեկտիվների ղեկավարման սկզբունքներն ու մեթոդները, այլապես արտադրության և հասարակական կյանքի շատ երևույթներ նրա համար կմնան գաղտնիք։

ԺԱՄԱՆԱԿԱԿԻՑ սոցիալական հոգեբանությունը բազմակողմանիորեն հիմնավորել է այն փաստը, որ մարդիկ միշտ էլ փոխադարձ շփումներ, միմյանց հետ հաղորդակցվելու կարիք ունեն։ Մարդկանց փոխադարձ շփումները, նրանց անձնական փոխհարաբերությունները, էմոցիաները, զգացմունքները, տրամադրությունը, կոլեկտիվներում իշխող մթնոլորտը խիստ կարևոր դեր են խաղում արտադրության պրոցեսում։

Երբ մարդ մուտք է գործում աշխատանքային կոլեկտիվ, նա իր «եսը» չի թողնում դրսում, դարպասների ետևում, ինչպես կթողներ հեծանիվը կամ ավտոմեքենան։ Արտադրության շատ պրոցեսներ բանվորից, աշխատողից պահանջում են ոչ միայն նրանց ֆիզիկական ողջ կարողությունների լարում, այլև նրանց նյարդային համակարգի, ինտելեկտի, ողջ հոգեկան կարողությունների մոբիլիզացում։ Ավելին, յուրաքանչյուր անհատ ունի իր հետաքրքրություններն ու նախասիրությունները, իր հմտությունն ու ճաշակը, իր ինքնասիրությունն ու արժանապատվությունը, իր հոգեկան կերտվածքն ու խառնվածքը, հակում ունի դրսևորելու իր ունակություններն ու կարողությունները։ Անտեսել այդ ամենը՝ նշանակում է զրկել նրան նախաձեռնությունից, ստեղծագործելու հաճույքից, դարձնել նրանց մարդ-մեքենա։ Իզուր չէ, որ «Մարդկային հարաբերությունների» տեսության հիմնադիր Էլտոն Մեյոն գտնում էր, որ երջանիկ բանվորն է արդյունավետ, արտադրողաբար աշխատող բանվորը։ Որոշ մասնագետներ նույնիսկ գտնում են, որ առողջ մարդկային հարաբերություններ ստեղծելու համար ծախսված միջոցները թերևս ավելի արդյունավետ են, քան նոր տեխնիկայի ներդրման համար ծախսված միջոցները։

Գործելու, աշխատելու համար մարդ պետք է ամենից առաջ տրամադրվի։ Այդ տրամադրվելը բարդ պրոցես է և պահանջում է մարդու կամքի, նյարդային համակարգի, ֆիզիկական ու հոգևոր ուժերի մոբիլիզացում և նպատակամղում տրված առաջադրանքը կատարելու համար։ Մարդը հաճույքով է տրամադրվում աշխատանքի նկատմամբ, երբ դրա համար կան ներքին և արտաքին շարժառիթներ, դրդապատճառներ, խթաններ։ Այդպիսի դրդապատճառ և շարժառիթ մի դեպքում կարող է լինել նյութական շահագրգռությունը, երկրորդ դեպքում՝ բարոյական խրախուսանքը, երրորդ դեպքում՝ մասնագիտական բարձր որակավորում ձեռք բերելու ձգտումը կամ աշխատանքում առաջ գնալու հնարավորությունը և այլն։

Հարկ է հիշել նաև, որ ապրանքների, մթերքների առատությունը կարևոր պայման է մարդկանց տրամադրությունների կատարելության գործում, սակայն այն դեռևս լրիվ երջանկություն չի խոստանում։ Մարդկանց հոգևոր պահանջմունքների բավարարումը պակաս կարևոր չէ, քան նյութական պահանջմունքների բավարարումը։

ՓՈՔՐ ԽՄԲԵՐԻ սոցիոլոգիայի պրոբլեմներից ուշադրավ է աշխատանքային կոլեկտիվներում նորմալ բարոյահոգեբանական մթնոլորտ ստեղծելու հարցը։ Աշխատանքային կոլեկտիվը ոչ միայն մեր հասարակության կարևորագույն



արտադրական բջիջն է, այլև նրա հույժ կարևոր սոցիալական բջիջը, որտեղ մարդիկ ձեռք են բերում աշխատանքային և քաղաքական-սոցիալական ակտիվություն, կրթություն և դաստիարակություն, մասնագիտական հմտություն և կոփվածք։ Աշխատանքային կոլեկտիվի բարոյահոգեբանական կլիման ստեղծվում է նրա բոլոր անդամների ջանքերով, սակայն այդ կլիմայի գոյավորման մեջ վճռական դեր են խաղում կոլեկտիվի ղեկավարները, կուսակցական, արհմիութենական, կոմերիտական կազմակերպությունները (В. Михеев, Социально-психологические аспекты управления, М., 1975 г., стр. 265)։

Անշուշտ, սոցիալիզմի պայմաններում յուրաքանչյուր աշխատանքային կոլեկտիվի բարոյահոգեբանական կլիմայի գոյավորման բազան մեր ժողովրդի բարոյաքաղաքական միասնությունն է, նրա անսահման նվիրվածությունը սոցիալիզմի իդեալներին, ապա՝ սոցիալիստական համագործակցությունը, բարեկամությունը և փոխօգնությունը։ Սակայն այդ հզոր գործոններից բացի, յուրաքանչյուր կոլեկտիվում իշխող հոգեբանական մթնոլորտի գոյավորման համար կան ուրույն, յուրաքանչյուր կոլեկտիվին յուրահատուկ նախապայմաններ։

Եթե ղեկավարը և աշխատողը հանդես են գալիս որպես սոցիալական պարտնյորներ, յուրաքանչյուրն օժտված իր իրավունքներով ու պարտականություններով,— և փոխադարձ հարգանքի ու սեփական պարտքի գիտակցությամբ կատարվում են այդ պարտականությունները,— ապա դա հենց առողջ բարոյահոգեբանական մթնոլորտի ստեղծման գլխավոր պայմանն է։ Աշխատողը, սակայն, գոհ պետք է լինի ոչ միայն իր ղեկավարից, այլև գործընկերներից, շրջապատից, կոլեկտիվից։

Ճիշտ այնպես, ինչպես բժիշկը զննում է մարդկանց, կիրառում նախազգուշական միջոցառումներ, իսկ հիվանդության դեպքում ախտորոշում այն և որոշում բուժման եղանակներն ու միջոցները, ճիշտ այդպես արտադրողական կոլեկտիվների ղեկավարներն ու կուսակցական կազմակերպությունները պետք է կարողանան պրոֆիլակտիկայի ենթարկել կոլեկտիվը, ուսումնասիրել նրա ուժեղ և թույլ կողմերը, գտնել նրա միասնության և համախմբվածության զարգացման ուղիները, իսկ կոնֆլիկտային իրադրությունների ժամանակ՝ ճշտորեն սահմանեն այդ երևույթների հաղթահարման միջոցները։

Աշխատուժի հոսքը, օրինակ, մեր արտադրության ամենահուզող հարցերից է, որը պատճառում է տարեկան ավելի քան 3 միլիարդ ռուբլու վնաս։ Շատ կոլեկտիվներում անցկացված սոցիոլոգիական ուսումնասիրությունները վկայում են, որ այդ հոսքը հիմնականում տեղի է ունենում ի հաշիվ երիտասարդ, կյանքում հաստատապես իրենց տեղը չգտած բանվորների։ Կանխել բանվորական ուժի հոսքը՝ նշանակում է ուշադրության կենտրոնում պահել յուրաքանչյուր նոր աշխատողի, օգնել, որպեսզի նա մերվի կոլեկտիվի հետ, ձեռք բերի համապատասխան աշխատանքային որակավորում, չմեկուսանա։ Այդ գործում անգնահատելի է վարպետ-դաստիարակների և արտադրության «միջին հրամկազմի» դերը։

ՄԵՐ ՀԱՍԱՐԱԿՈՒԹՅԱՆ ՄԵՋ աշխատանքային կոլեկտիվի ղեկավարը կոմկուսակցության և սովետական պետության ներկայացուցիչն է, սակայն այդ բարձր կոչումն ու համապատասխան լիազորություններն ինքնըստինքյան համընդհանուր ճանաչում և հարգանք չեն երաշխավորում, մինչդեռ առանց մասսաների հարգանքը նվաճելու և նրանց մեջ հեղինակություն ձեռք բերելու, ոչ մի ղեկավար չի կարող արդյունավետ աշխատել։ Իշխանությունը տրվում է, հեղինակությունը՝ նվաճվում։

Հեղինակությունն անձի մարդկային, գործնական և քաղաքական հատկանիշների հասարակական ճանաչումն է։ Ղեկավար աշխատողները հեղինակություն և հարգանք ձեռք են բերում բազում տարիների աղնիվ ու անբասիր աշխատանքով։ Սիրված ու հարգված, խիստ, սակայն արդարամիտ ղեկավարի ցուցումներն ու կարգադրությունները մարդիկ հաճույքով են կատարում։

Մեր օրերում, երբ անհամեմատ բարձր է մարդկանց կրթական և կուլտու-

բական մակարդակը, փաստորեն շատ-շատերը հնարավորություն ունեն վերլուծելու իրենց անմիջական ղեկավարների աշխատանքի մեթոդները, նրանց կարգադրությունների հիմնավորվածությունն ու անհրաժեշտությունը։ Եթե մարդիկ համոզվում են ղեկավարի կարգադրությունների, նրա աշխատանքի ոճի ճշմարտացիության մեջ, ապա նրանք դրսևորում են վստահություն տվյալ ղեկավարի նկատմամբ, իսկ հակառակ դեպքում՝ անվստահություն։ Անվստահության դեպքում նույնիսկ ճիշտ որոշումներն ու կարգադրությունները հարցականի տակ են դրվում, երբեմն նույնիսկ մերժվում են, կամ կենսագործվում ոչ լրիվ։ Այս դեպքում աշխատողի և ղեկավարի միջև ստեղծվում է «հոգեբանական պատնեշ», դիմադրելու բուռն ցանկություն, առարկելու մշտական ձգտում։ Այսպիսի յուրահատուկ ռեակցիան, ամեն ինչ բացասելու միտումը մեծապես խանգարում են աշխատանքային կոլեկտիվի միաձուլման և համախմբման գործին։ Նշված իրադրության պայմաններում, եթե ղեկավարի ու ենթակա աշխատողի միջև չկա հոգեբանական անհամատեղելիություն, ելքը միմիայն փոխադարձ վստահության նվաճումն է և ոչ թե կոպտությունը, հետապնդումներն ու վախեցնելը։

3

«ՄԱՐԴԿԱՅԻՆ ՀԱՐԱԲԵՐՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ» տեսության կարևորագույն հայտնագործություններից մեկն էլ «ձևական» և «ոչ ձևական» կառուցվածքի և խմբերի հայտնագործությունն է։ Ձևական խումբը կազմավորվում է կառավարման համապատասխան ակտերի (հրաման, հրահանգ, հաստիքային ցուցակ և այլն) հիման վրա։ Ձևական խմբի պայմաններում մարդկանց մեջ եղած հարաբերությունները միայն պաշտոնական են։ Այդպիսի խումբն ունի իր ղեկավարը՝ ձևական լիդերը։ Մարդկանց հարաբերությունները խմբերում (տեղամաս, բաժին, բրիգադ, ջոկատ և այլն), սակայն, չեն կարող կրել միմիայն պաշտոնական բնույթ։ Աշխատանքային կոլեկտիվում, արտադրության ոլորտում մարդիկ, բացի ծառայական հարաբերություններից, գտնվում են նաև բազմաթիվ և բազմապիսի այլ շփումների և փոխադարձ կապերի մեջ։ Այդ հարաբերություններն ու կապերը չեն նախատեսված ոչ մի հրահանգով և հրամանով, դրանք ստեղծվում են տարերայնորեն՝ անձնական համակրանքի, հակումների, նպատակների, սովորությունների, նախասիրությունների ընդհանրության հիման վրա։ Այս հողի վրա են առաջ գալիս ոչ ձևական խմբերը, իրենց ոչ ձևական լիդերների ղեկավարությամբ։ Այդպիսի լիդերներին ոչ ոք չի ընտրում և ոչ ոք չի հաստատում։

Մարդկանց սոցիալական շփումները գործնական հարաբերություններին տալիս են բազմազանություն, կենդանություն, ճկունություն, դրանք բավարարում են մարդկանց սոցիալական պահանջները, կարգավորում նրանց վարքագիծը կոլեկտիվում, մեծապես օգնում կոլեկտիվի գործունեությանը, սակայն առանձին դեպքերում նրանք կարող են նաև խանգարել գործին։ Դա, որպես կանոն, տեղի է ունենում այն ժամանակ, երբ կոլեկտիվի գլուխ է կանգնած ոչ բանիմաց, մարդկանց հետ աշխատելու կարողությունից զուրկ, կոպիտ, մարդկանց հարգանքից չօգտվող մի անձնավորություն։ Դրա պատճառը կարող է լինել նաև կոլեկտիվի շահերին հակադիր նեղ խմբակի գործունեությունը։ Այստեղ շատ մեծ է կուսկազմակերպության ղեկավար դերը։

Աշխատանքային կոլեկտիվները երբեք միատարր լինել չեն կարող։ Կոլեկտիվի անդամները տարբերվում են ըստ սեռի, տարիքի, կրթության, մասնագիտական որակավորման, աշխատանքային փորձի, քաղաքական և սոցիալական ակտիվության աստիճանի, ըստ նպատակների, ձգտումների, հետաքրքրասիրությունների, նախասիրությունների, սովորությունների, ըստ բնավորության գծերի, նյարդային համակարգի և այլն։ Մարդկանց այդպիսի բազմազանությունը նրանց հարաբերությունների մեջ առաջ է բերում տարբեր բնույթի հակասություններ, որոնք, եթե ժամանակին չեն կարգավորվում, ապա վերածվում են կոնֆլիկտների։ Եթե այդ կոնֆլիկտները կրում են գործնական բնույթ, եթե դրանց հիմքում ընկած է նորի, առաջավորի պայքարը հնի, քարացածի դեմ, ապա այդպիսի կոնֆլիկտներից չպետք է խուսափել։ Վատ է, սակայն, երբ



կոնֆլիկտների հիմքում ընկած են էգոիստական, կարիերիստական և կամ համանման այլ շարժառիթներ։ Աշխատողների միջև կոնֆլիկտներ կարող են ծագել նաև հոգեբանական անհամատեղելիության հետևանքով։ Այդ դեպքում արդեն գործին ոչ մի դեղամիջոց չի օգնի, բացի կողմերին իրարից բաժանելուց։

Կոնֆլիկտներն աշխատանքային կոլեկտիվներում պետք է վերացվեն և կարգավորվեն ղեկավար աշխատողների, կուսակցական և մյուս հասարակական կազմակերպությունների և բուն իսկ աշխատանքային կոլեկտիվների կողմից։ Կոնֆլիկտները հաղթահարել՝ նշանակում է ամենից առաջ ուսումնասիրել դրանց բնույթը, ծնող պատճառները և ձեռնարկել անհրաժեշտ միջոցներ դրանց վերացման համար։ Չի կարելի անտարբեր լինել կոնֆլիկտների նկատմամբ։ Դրանք նյարդային վիճակ են ստեղծում կոլեկտիվում, շեղում են նրա ուշադրությունը բուն խնդիրներից, վնասում են կոլեկտիվի բարոյական վիճակին, նվազեցնում աշխատանքի արտադրողականությունը։

Ստեղծված կոնֆլիկտային իրադրության մեջ ճիշտ կողմնորոշվելը հեշտ գործ չէ։ Որպես կանոն, կողմերն ամեն կարգի մեղադրանքներ են թափում իրար վրա, աշխատում են շեղել ճիշտ ուղուց։ Ելքը փաստերի օբյեկտիվ, անկանխակալ վերլուծությունն է։ Կոնֆլիկտները լուծելու եղանակները երկուսն են՝ վարչական և մանկավարժական։

Կոնֆլիկտների լուծման մանկավարժական մեթոդի հիմքում ընկած է համոզման մեթոդը։ Այդ մեթոդը հնարավորություն է ընձեռում փաստերով և փաստերից բխող հետևություններով վեր հանել կողմերի սխալները, օգնել նրանց՝ հասկանալու և հաղթահարելու այդ սխալները։ Մանկավարժական մեթոդի արդյունավետությունը շատ բանով պայմանավորված է ղեկավարի հեղինակությամբ և նրա վայելած հարգանքով։ Մանկավարժական մեթոդը ոչ միայն կարգավորում է կոնֆլիկտը, այլև վերացնում է էմոցիոնալ լարվածությունը, առողջացնում կոլեկտիվի հոգեբանական մթնոլորտը։

Սակայն, երբ մանկավարժական մեթոդի կիրառումը ցանկացած արդյունքի չի հասնում, ապա ղեկավարը պարտավոր է կիրառել կոնֆլիկտների լուծման վարչական մեթոդը։ Այդ մեթոդը պետք է առաջին հերթին կիրառվի կոնֆլիկտը հրահրողների նկատմամբ, մանավանդ, երբ նրանք համապատասխան նախազգուշացումներից հետո էլ շարունակում են համառել և չընդունել իրենց սխալները։

Նույնիսկ վարչական հարկադրանքի դիմելիս փորձառու և հմուտ ղեկավարն աշխատում է հաշվի առնել ստեղծված հասարակական կարծիքը, կոլեկտիվի կամքը։ Դրա համար հաճախ սուր կոնֆլիկտային հարցերը դառնում են կուսակցական կազմակերպությունների, ակտիվի կամ ողջ կոլեկտիվի քննարկման առարկա։ Այս ճանապարհով միայն կարելի է ոչ միայն հարթել ծագած կոնֆլիկտը, այլև վերացնել կոնֆլիկտային իրադրությունը և կարգավորել մարդկանց հարաբերությունները։ Մինչդեռ հաճախ իրական կյանքում որոշ ղեկավարներ չեն կարողանում գլուխ հանել կոնֆլիկտային իրադրություններից, հարցը «լուծում են» «գորդյան հանգույցը» հատելով, նուրբ հոգեբանական միջամտությունը փոխարինում են վիրահատությամբ, մոռանալով, որ վիրահատությունն անհրաժեշտ է և օրինական միայն այն դեպքում, երբ բուժման բոլոր մյուս միջոցներն սպառված են։

Մարդկանց հետ աշխատելու արվեստն ամենաբարդն է։ Ուրիշի հոգեբանությունն ու ներաշխարհը հասկանալու համար անհրաժեշտ են լուրջ գիտելիքներ, հարուստ կենսափորձ և սոցիալ-հոգեբանական հասունություն։ Այլ կերպ ասած՝ մարդկանց հետ ճիշտ աշխատելու համար կուսակցական ղեկավարը պետք է լինի լիարժեք սոցիալական անձնավորություն։

***

Քանի որ կուսակցական աշխատանքն ամենից առաջ աշխատանք է մարդկանց հետ, ապա անհրաժեշտ է, որպեսզի կուսակցական ղեկավար կադրերն ուսումնասիրեն մանկավարժության և հոգեբանության հարցերը, կարողանան դրանք հմտորեն կիրառել պրակտիկ գործունեության ընթացքում, որպեսզի նրանցից յուրաքանչյուրը ձգտի՝ դառնալու սոցիալ-հոգեբանական լիարժեք անձնավորություն։

## ՆՇԱՆԱՎՈՐ ՏԱՐԵԹՎԵՐ

# ՀԵՂԱՓՈԽՈՒԹՅԱՆ ԽԻԶԱԽ ԱՍՊԵՏԸ

(Ֆ. Է. ՁԵՐԺԻՆՍԿՈՒ ԾՆՆԴՅԱՆ 100-ԱՄՅԱԿԻ ԱՌԹԻՎ)

**Գ. Ա. ՄԻԽԱԵԼՅԱՆ**
Հայկական ՍՍՀ Մինիստրների սովետին առընթեր պետական անվտանգության կոմիտեի նախագահ



ՀՈԿՏԵՄԲԵՐՅԱՆ ՍՈՑԻԱԼԻՍՏԱԿԱՆ մեծ հեղափոխության մասնակից բոլշևիկների և աշխարհում առաջին սոցիալիստական պետության անխոնջ կառուցողների սքանչելի սերնդի պատվավոր տեղերից մեկը իրավամբ պատկանում է Ֆելիքս Էդմունդովիչ Ձերժինսկուն՝ այդ բոցաշունչ հեղափոխականին, որը նշանակալի դեր է կատարել ռուսական և լեհական հեղափոխական շարժման մեջ, հեղափոխության նվաճումների պաշտպանության, մեր երկրում սոցիալիզմի կառուցման գործում:

Կլարա Ցետկինը այսպես է պատկերել Ֆ. Է. Ձերժինսկու կերպարը. «Ֆելիքս Ձերժինսկին «սուր է և հուր», պրոլետարական հեղափոխության արարիչ, ստեղծագործական ուժը: Պրոլետարական հեղափոխության ալիքը բարձրացրեց նրան, պրոլետարական հեղափոխության ալիքն էլ կուլ տվեց նրան: Բայց նրա կերպարը, նրա կյանքի գործերը անջնջելի կմնան համաշխարհային պրոլետարիատի համար: Դրանք հավերժ կապրեն»:

Ֆ. Է. Ձերժինսկին ծնվել է 1877 թվականի սեպտեմբերի 11-ին Վիլնոյի նահանգի (այժմ Մինսկի մարզ) Ձերժինովո ոչ մեծ դաստակերտում:

Ֆելիքսի հայրը ծագում էր լեհական մի աղքատ ընտանիքից, եղել է մաթեմատիկայի ու ֆիզիկայի ուսուցիչ Տագանրոգ քաղաքի գիմնազիաներում: Թոքախտով հիվանդանալով, նա 1875 թվականին վերադառնում է իր ծննդավայր՝ Ձերժինովո: Ինչով կարող էր՝ օգնում էր գյուղացիներին, իր տան անվճար դպրոցում աղքատների երեխաներին սովորեցնում էր գրագիտություն: Տեղի բնակիչները նրան անվանում էին «արդարամիտ»: Նա մահացավ այն ժամանակ, երբ Ֆելիքսը հինգ տարեկան էլ չըկար: Այրի Ելենա Իգնատևնայի խնամքի տակ մնացին ութ անչափահաս երեխաներ՝ երեք աղջիկ և հինգ տղա: Նրանք մանկուց վարժվել էին աշխատանքի, ինքնասպասարկման, փոխադարձ օգնության: Ընտանիքում տիրում էր բարեկամության և սիրո ոգին: Ֆելիքսի մայրը երեխաների մեջ դաստիարակում էր հարգանք դեպի աշխատավոր ժողովուրդը: Շարունակելով ամուսնու ավանդույթները, նրանց մեջ պատվաստում էր ատելություն դեպի ժողովրդի շահագործողներն ու ճնշողները, դեպի ամեն մի անարդարություն ու չարիք:

Վաղ հասակից ընտանիքի, մոր ազդեցությունը հսկայական նշանակություն ունեցան Ֆելիքս Էդմունդովիչ Ձերժինսկու բնավորության ձևավորման վրա: Հետագայում նա գրում էր. «Եվ դա վճռական մոմենտ էր: Դա ազդեց այն բանի



վրա, որ ես հետագայում գնացի այն ուղիով, որով գնում էի, որ ամեն մի բռնություն, որի մասին ես իմանում էի... կարծես բռնություն էր անձամբ իմ նկատմամբ... Արդեն այն ժամանակ իմ սիրտը և ուղեղը զգայուն կերպով էին ընկալում ամեն մի վիրավորանք, որ կրում էին մարդիկ, և ես ատեցի չարը»:

Տասնամյա Ֆելիքս Էդմունդովիչ Ձերժինսկին Ձերժինովոյից սովորելու է մեկնում Վիլնոյի գիմնազիան: Հետագայում հարստանում է Ձերժինսկու կենսափորձը և ընդլայնվում մտահորիզոնը: Նա ձգտում է հասկանալ գոյություն ունեցող անարդարությունը և գտնել դրա պատճառները, գտնել դրա դեմ պայքարելու ուղիները: Նա փնտրեց ու գտավ իր կյանքի ուղին՝ հեղափոխականի, մարքսիստի, բոլշևիկի ուղին:

Երկրում աճող հեղափոխական շարժման, առաջավոր դեմոկրատական և մարքսիստական գրականության ազդեցության տակ Ձերժինսկին դեռ տասնյոթամյա հասակում թևակոխեց պայքարի դժվարին, վտանգներով լի, բայց փառավոր ուղին և 1894 թվականին դարձավ ինքնազարգացման անլեգալ սոցիալ-դեմոկրատական խմբակի անդամը, իսկ շուտով նաև նրա ղեկավարը:

Մարքսի և Լենինի ուսմունքում Ֆելիքսը գտավ այն հարցերի պատասխանները, որոնք նրան տանջում էին դեռ պատանությունից, գտավ իր ամբողջ կյանքի իմաստը: Նույն 1894 թվականին նա խմբակի իր ընկերնեիի հետ միասին երդվեց մինչև վերջին շունչը պայքարել չարի դեմ: Եվ պատանեկության իր այդ սրբազան ուխտին նա երբեք չդավաճանեց: Մինչև իր ջերմ սրտի վերջին բաբախյունը նա պայքարեց ժողովրդի երջանկության համար: Ձերժինսկին կյանքում ուներ մի նպատակ. դա ճնշման դեմ և ժողովրդի երջանկության համար պայքարն էր:

Հազիվ էր լրացել նրա տասնութ տարին, երբ 1895 թվականի աշնանը նա դարձավ սոցիալ-դեմոկրատական կուսակցության անդամ և իր բախտը ընդմիշտ կապեց հեղափոխական շարժման հետ:

Մոր մահից հետո, 1896 թվականին, Ձերժինսկին հեռանում է գիմնազիայի 8-րդ դասարանից և ամբողջապես նվիրվում կուսակցական աշխատանքի, բռնում է պրոֆեսիոնալ հեղափոխականի ուղին: Ֆելիքս Ձերժինսկին Վիլնոյում ստեղծում է առաջին անլեգալ տպարանը, գրում է թռուցիկներ, գիշերները փակցնում է դրանք փողոցներում, մասսաների մեջ ագիտացիա ու պրոպագանդա է մղում, կազմակերպում ցույցեր: Բանվորների շրջանում նա սիրված էր ու հայտնի էր «Յացեկ» անունով:

Ֆելիքս Ձերժինսկու անդադրում գործունեությունը իր վրա է գրավում ոստիկանության ուշադրությունը՝ նրան սպառնում է ձերբակալություն: Նա անցնում է է՛լ ավելի բարդ ու ավելի վտանգավոր պրոպագանդիստական աշխատանքի՝ այս անգամ արդեն Կովնոյում (Կաունաս): Հեշտ չէր անծանոթ քաղաքում ամուր կապեր հաստատել բանվորների հետ, մտնել նրանց միջավայրը, նվաճել հեղինակություն, դառնալ սիրելի ագիտատոր և կազմակերպիչ: Ձերժինսկուն, անկասկած, այդ գործում մեծապես օգնեց Վիլնոյում ձեռք բերած փորձը, որտեղ նա կարողացել էր «թափանցել դեռևս բոլորովին անիրազեկ մասսաները...»: Նա այն առաջին մարքսիստներից մեկն էր, որոնք չէին սահմանափակվում խմբակներում մարքսիզմը պրոպագանդելով, այլ այն միացնում էին բանվորական շարժման հետ:

Կովնոյում Ձերժինսկին վիթխարի աշխատանք կատարեց, բառացիորեն յուրաքանչյուր րոպեն օգտագործելով պայքարի համար: Այստեղ ցեմենտվում է բոցաշունչ հեղափոխականի կարևորագույն գիծը՝ ապշեցուցիչ աշխատունակությունը: Աշխատանքն ընթանում էր հաջող և տալիս լավ արդյունքներ: Բանվորներն այստեղ իրենց պրոպագանդիստին արդեն ճանաչում էին մեկ ուրիշ՝ «Կազմարար» անունով: Եվ դա պատահական չէր. նա այնտեղ աշխատում էր կազմարարական արհեստանոցում, որը տալիս էր գոյության աղքատիկ միջոցներ: Նյութապես նա շատ վատ էր ապրում, հաճախ քաղցած էր մնում:

Կովնոյի ժամանակաշրջանը Ձերժինսկու համար հսկայական նշանակություն ունեցավ նրա մեջ պրակտիկ գործունեության հեղափոխական պայքարի մեթոդների ձևավորման գործում:

Երկար ժամանակ ոստիկանությունը չէր կարող գտնել Կովնոյի պրոլետարիատի ելույթների ու գործադուլների կազմակերպչի հետքերը: Բանվորները մեծ հոգատարությամբ պահպանում էին իրենց ղեկավարին: Վերջապես մի անչափահաս տղայի օգնությամբ, որին գայթակղեցրել էր խոստացված 10 ռուբլին, ժանդարմներին հաջողվում է ձերբակալել Ձերժինսկուն: Եվ 1897 թվականի հուլիսի 17-ին երիտասարդ հեղափոխականի ետևից փակվեցին բանտի դռները:

Նա ենթարկվում էր լարված հարցաքննությունների, ոստիկանական լրտեսների ու պրովոկատորների հետ անվերջ առերեսումների: Նրան նստեցնում են մութ մենախուց, ծեծում կեչու ձողերով: Սակայն երիտասարդ հեղափոխականը կարողացավ դիմանալ այդ առաջին ու ծանր փորձությանը: Բանտապահներին ու քննիչներին ոչինչ չհաջողվեց իմանալ նրանից: Եվ որքան էլ դժվար էր նրա համար բանտում, նա աշխատում էր պահպանել իր ուժերը

պայքարի համար: Կարդում է «Կապիտալը», ուսումնասիրում գերմաներենը: Քրոջը նա գրում էր. «...Բանտը սարսափելի է հիգով թույլերի համար միայն...»:

1898 թվականի մայիսի 24-ին Ձերժինսկին առանց դատի, վարչական կարգով ոստիկանության հսկողության տակ երեք տարով աքսորվում է Վյատկայի նահանգը: Այստեղից նա գրում էր. «Ինձ միայն կյանքը կարող է ոչնչացնել, ճիշտ այնպես, ինչպես փոթորիկն է տապալում հարյուրամյա կաղնիները, բայց երբեք չի փոխի ինձ... իմ պաքարի սահմանագիծը կարող է լինել միայն գերեզմանը...»:

1899 թվականի օգոստոսին Ձերժինսկին փախչում է Վյատկայի աքսորից և հասնում Վարշավա, որտեղ Ռոզա Լյուքսեմբուրգի և լեհ հեղափոխականների հետ կազմակերպական մեծ աշխատանք է կատարում Լեհաստանի և Լիտվայի սոցիալ-դեմոկրատներին մեկ կուսակցության մեջ միավորելու նպատակով: Այդ միավորումը տեղի ունեցավ 1900 թվականի հունվարին:

Սինչ այդ ոստիկանությունը ակտիվ միջոցներ է ձեռնարկում Ձերժինսկուն փնտրելու և ձերբակալելու համար: Հեղափոխական գործունեության ամենաեռուն շրջանում՝ 1900 թվականի հունվարին, նա նորից է ձերբակալվում և երկու տարի շարունակ Վարշավայի ու Մոսկվայի բանտերում հետաքննության տակ գտնվելուց հետո, 1902 թվականի փետրվարի կեսին, հինգ տարով աքսորվում է Արևելյան Սիբիր, բայց ճանապարհին հաջողակի փախչում է և նույն թվականի օգոստոսի սկզբին գալիս է Բեռլին:

Բանտերում և աքսորում գտնված ամբողջ ժամանակը Ձերժինսկին առավելագույն չափով օգտագործում էր ապագա պրակտիկ հեղափոխական գործունեության նախապատրաստվելու համար: Ձեռնարկում է ամեն միջոց՝ ֆիզիկական, մտավոր և բարոյական ուժեր կուտակելու համար, քանի որ համոզված էր, որ ծնված գործը անմահ է: Աքսորավայրում ևս Ձերժինսկին մնում է որպես մեծ լավատես, ապագայի նկատմամբ ջերմ հավատով լցված:

Ձերժինսկին զգալի ժամանակ էր հատկացնում ընդհանուր տեսական հարցերին, իրեն հետաքրքրող հարցերի գիտական մշակմանը, բուրժուական վնասակար տեսությունների քննադատությանը:

Հեռավոր Սիբիրից ուղարկած նամակներում վառ կերպով երևում է երիտասարդ Ձերժինսկու մեծ ու հետևողական աշխատանքն իր վրա, իր բնավորության ձևավորման, ինքնադաստիարակման վրա: Նա գիտակցաբար ձգտում էր մշակել այնպիսի հատկություններ, որոնք անհրաժեշտ են պրոֆեսիոնալ հեղափոխականին, այն է՝ միշտ լինել ուժեղ, ազնիվ ու անսարատ մարդ:

Պայքարի ծավալը, անգուսպ ձգտումը հեղափոխական գործունեության, որից Ձերժինսկուն բռնի կերպով կտրում էին ձերբակալություններն ու աքսորները, անկասելիորեն նրան ձըգում էին դեպի ազատություն: Դեռ աքսորավայրը նոր ժամանած՝ Ձերժինսկին մտածում է փախուստի մասին և պատրաստվում է դրան: Մըթերքներ ձեռք բերելու համար նրա հաճախակի այցելությունները հարևան գյուղերը շատ էական նշանակություն ունեցան ապագա փախուստի պայմանները գնահատելու և այն կազմակերպելու համար:

1902 թվականի օգոստոսին Բեռլին գալուց հետո Ձերժինսկին ուշադիր կերպով ծանոթանում է իրադրությանը և ոգևորված հարում է միասնական մարքսիստական կուսակցություն ստեղծելու լենինյան պլանին: Բեռլինի կոնֆերանսում կազմվել էր Լեհաստանի և Լիտվայի սոցիալ-դեմոկրատական կուսակցության արտասահմանյան կոմիտե, իսկ Ձերժինսկին ընտրվել էր կոմիտեի քարտուղար: Կոնֆերանսից հետո Ձերժինսկին տեղափոխվում է Կրակով, իսկ այնուհետև 1904 թվականի վերջին՝ Վարշավա, որպեսզի կոնկրետ կերպով ղեկավարի մասսաների հեղափոխական պայքարը:

1905 թվական: Սկսվում է առաջին ռուսական հեղափոխությունը: Ձերժինսկին այդ իրադարձությունների ֆոնի վրա կազմակերպում և հաջողությամբ անցկացնում է քաղաքական գործադուլը Վարշավայում, քսանհազարանոց մայիսմեկյան ցույցը, հունիսյան մարտերը Լոձում, որոնք Վ. Ի. Լենինը անվանել է «Ռուսաստանի բանվորների առաջին զինված ելույթը»:

Ձերժինսկու հեղափոխական գործունեությունը այդ փոթորկալի օրերին չէր սահմանափակվում միայն Վարշավայով: Նա հայտնվում է ամենուրեք, որտեղ միայն պահանջում էին հեղափոխական պայքարի շահերը: Նա ղեկավարում է ագիտացիոն-մասսայական աշխատանքը զորամասերում, ստեղծում է ընդհատակյա տըպարաններ, տարածում է հեղափոխական գրականություն, դառնում է լեհ բանվորների ելույթների հոգին ու կազմակերպիչը:

Այդ բուռն օրերին Ձերժինսկին ծանոթանում է Սոֆյա Սիգիզմունդովնա Մուշկատի հետ, որը 1910 թվականին դառնում է նրա կինը, ընկերն ու մարտական զինակիցը:

Հեղափոխության զարգացման բոլոր հարցերում Ձերժինսկին կանգնած էր մարքս-լենինյան դիրքերում: Դեկտեմբերյան զինված ապստամբության պարտությունից հետո հեղափոխական շարժումը երկրում անկում ապրեց: Այդ պայմաններում, 1906 թվականի ապրիլին Ստոկհոլմում գումարվեց ՌՍԴԲԿ IV (Միավորիչ) համագումարը: Ձերժինսկին, որպես այդ համագումարի պատգամավոր, առաջին անգամ հանդիպում է Վ. Ի. Լենինի հետ և ընտրվում ՌՍԴԲԿ Կենտկոմի կազմում՝ որպես ներկայացուցիչ Լեհաստանի և Լիտվայի սոցիալ-դեմոկրատական կուսակցությունից, որը մտավ ՌՍԴԲԿ կազմի մեջ:

1908 թվականի դեկտեմբերի 31-ին Ձերժինսկին իր օրագրում գրում է. «Հինգերորդ անգամ (1898-1901, 1902, 1907, 1909) ես Նոր տարին դիմավորում եմ բանտում: Բանտում ես հասունացա միայնակության տառապանքներում, խաղաղության ու կյանքի նկատմամբ կարոտի տառապանքներում: Եվ, չնայած դրան, իմ հոգում երբեք կասկածանք չի ծնվել մեր գործի արդարացիության նկատմամբ... Այստեղ՝ բանտում, հաճախ լինում է ծանր, ժամանակ առ ժամանակ նույնիսկ սարսափելի... Եվ, այնուամենայնիվ, եթե ես նորից սկսելու լինեի իմ կյանքը, ես կսկսեի այնպես, ինչպես սկսել եմ... Դա ինձ համար օրգանական անհրաժեշտություն է»:

1909 թվականի մայիսին Վարշավայի դատական ատյանը կուսակցական աշխատանքի համար Ֆելիքս Ձերժինսկուն դատապարտում է ցմահ աքսորի՝ Սիբիր, զրկելով քաղաքացիության բոլոր իրավունքներից:

Աքսորավայր հասնելուց մեկ շաբաթ հետո Ձերժինսկին վերստին փախչում է և, գտնվելով Կրակովում ու Վարշավայում, շարունակում է ակտիվ պայքարը լիկվիդատորների, օտզովիստների և տրոցկիստների դեմ՝ կուսակցության անլեգալ կազմակերպությունները ամրապնդելու համար, հեղափոխական աշխատանքում բոլոր լեգալ ու անլեգալ հնարավորությունները օգտագործելու համար:

1912 թվականի սեպտեմբերի 1-ին գիշերը Ձերժինսկին նորից է ձերբակալվում Վարշավայում: Դա նրա վեցերորդ ձերբակալությունն էր: Մինչև 1917 թվականը նա պահվում էր Օրյոլի կենտրոնական բանտում: Ձերժինսկին տասնմեկ տարի անցկացրել է բանտերում, տաժանակիր աշխատանքներում և աքսորում: Բայց ոչինչ չկարողացավ ընկճել նրա պողպատե կամքը, նրա հավատը բոլշևիկյան կուսակցության գործի արդարացիության նկատմամբ:

Բանտից Ձերժինսկին ազատ արձակվեց 1917 թվականի մարտի 1-ին: Այդ նույն օրը հիվանդ վիճակում, կալանավորի զգեստով, տաժանակրի գլխարկը գլխին նա ներկայանում է Մոսկվայի սովետի նիստին և հանդես գալիս ճառով: Նույն օրը նա ելույթ է ունենում բանվորների և զինվորների միտինգում՝ Սկոբելևի հրապարակում:

Այնուհետև Ձերժինսկին ամբողջովին լծվում է ակտիվ աշխատանքի: Այդ փոթորկալի օրերին նա ՌՍԴԲ(բ)Կ Համառուսաստանյան VII (ապրիլյան) կոնֆերանսի, բանվորների և զինվորների դեպուտատների սովետների I համագումարի, կուսակցության VI համագումարի, նրա Կենտկոմի 1917 թվականի հոկտեմբերի 10-ի և 16-ի պատմական նիստերի մասնակիցների թվում է և ամենուրեք ակտիվորեն պաշտպանում է լենինյան դիրքորոշումները: ՌՍԴԲ(բ)Կ VI համագումարում Ձերժինսկին ընտրվում է Կենտկոմի կազմում և մինչև կյանքի վերջը մնում որպես նրա անփոփոխ անդամը:

Ձերժինսկին պատմության մեջ մտել է որպես Հոկտեմբերի հերոս և հեղափոխության ասպետ: Սկզբում Մոսկվայում, իսկ 1917 թվականի օգոստոսից՝ Պետրոգրադում Ֆելիքս Էդմունդովիչը մյուս բոլշևիկ-լենինյանների հետ միասին եռանդուն կերպով մասսաներին պատրաստում էր զինված ապստամբության: Որպես ՌՍԴԲ(բ)Կ Կենտկոմի անդամ, Ռազմահեղափոխական կոմիտեի ու նրա ղեկավար կուսակցական կենտրոնի՝ ռազմահեղափոխական կենտրոնի անդամ, Ձերժինսկին կատարում էր Վ. Ի. Լենինի ամենապատասխանատու հանձնարարությունները, ապահովում հաղթանակը սոցիալիստական հեղափոխության ամենավճռական տեղամասերում:

1917 թվականի դեկտեմբերի 20-ին Ժողկոմսովետը ընդունեց Համառուսաստանյան արտակարգ հանձնաժողովի (ՎՉԿ-ի) կազմակերպման մասին պատմական որոշումը: Իսկ երբ ծագեց այն հարցը, թե ում նշանակել ՎՉԿ-ի ղեկավար, Վ. Ի. Լենինը տվեց Ձերժինսկու անունը: Եվ պատահական չէ, որ հենց հեղափոխական պայքարում կոփված, մեծագույն հոգեկան մաքրության տեր այդ մարդը գլխավորեց պրոլետարական դիկտատուրայի չափազանց պատասխանատու մարմինը: ՎՉԿ-ի առջև խընդիր էր դրվում՝ հակահեղափոխության հարվածներին պատասխանել «բանվորների և գյուղացիների համակրանքի վրա հենվող անողոք, արագ, անհապաղ ռեպրեսիայով»:

ՎՉԿ-ն հեղափոխության նվաճումները պաշտպանելու նպատակով ծավալած իր աշխատանքի առաջին իսկ օրերից բախվեց ներքին և արտաքին հակահեղափոխական ուժերի քայքայիչ գործունեության ամենասուր ձևերի հետ:

«Այն ահեղ օրերին, երբ երիտասարդ սովետական հանրապետության վրա հարձակվեցին հակահեղափոխության և ինտերվենտների հրոսակախմբերը, բլոկադայի, սաբոտաժի, կուլակային խռովությունների իրադրության մեջ հե-

ղափոխական Ռուսաստանը բռնեց իր ամենապատասխանատու քննությունը»,— այսպես է բնութագրել սովետական պետության համար այն ժամանակ ստեղծված դրությունը ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար Լ. Ի. Բրեժնևը Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխության 50-ամյակին նվիրված զեկուցման մեջ:

Անտանտի իմպերիալիստական պետություններն ու նրանց հետախուզությունները, որոնք ունեին քայքայիչ գործունեության բազմամյա փորձ, սովետների երկրի դեմ էին նետել իրենց բոլոր ուժերը: Նրանք կազմակերպում էին դավադրություններ, խռովություններ և ապստամբություններ, նախապատրաստում և իրականացնում էին դիվերսիաներ, տեռորիստական ակտեր, կոորդինացնում էին երկրի ներսի հակահեղափոխական ուժերի գործունեությունը, զինում ու ֆինանսավորում էին նրանց:

Այդ իրադրության մեջ ՎՉԿ-ն հաջողությամբ լուծում էր իր առջև դրված բարդ խնդիրները: Արդեն 1918 թվականի հունվարին Ձերժինսկու ղեկավարությամբ ու նրա անմիջական մասնակցությամբ բացահայտվեցին ու ոչնչացվեցին հակահեղափոխական այնպիսի կազմակերպություններ, ինչպիսիք էին «Սահմանադիր ժողովի պաշտպանության միությունը», որ ստեղծել էին կադետները, մենշևիկներն ու էսեռները, «Բոլշևիկների դեմ պայքարի ու Կալեդինին զորքերի ուղարկման կազմակերպումը», որը բաղկացած էր ցարական սպաներից և յունկերներից:

1918 թվականի ամռանը ՎՉԿ-ի մարմինները բացահայտեցին ԱՄՆ-ի, Անգլիայի և Ֆրանսիայի դեսպանների գլխավորած խոշորագույն դավադրություններից մեկը: Փաստորեն դա իմպերիալիստական բոլոր պետությունների հետախուզությունների դավադրությունն էր:

«Դեսպանների դավադրությանը» ՎՉԿ-ն ամենաուժեղ հարվածը հասցրեց դեռևս 1918 թվականի մայիսին, երբ մերկացվեց «Հայրենիքի և ազատության պաշտպանության միություն» ռազմադավադրական կազմակերպությունը՝ հայտնի տեռորիստ, էսեռ Բորիս Սավինկովի գլխավորությամբ, որը կապեր էր պահպանում Անտանտի երկրների հետախուզությունների ներկայացուցիչների հետ:

1919 թվականի աշնանը ՎՉԿ-ի մարմինները ոչնչացրին «Ազգային կենտրոն» հակահեղափոխական կազմակերպության դավադրությունը: Այդ կազմակերպության անդամները զինված ապստամբություն էին պատրաստում Մոսկվայում: Այդ նույն ժամանակաշրջանում ՎՉԿ-ն տեղական չեկիստական մի քանի մարմինների մասնակցությամբ ոչնչացնում է «Տակտիկական կենտրոնի» մի խոշոր դավադրություն: Այդ կենտրոնը ստեղծվել էր 1919 թվականի գարնանը և կոորդինացնում էր հակահեղափոխական այնպիսի կազմակերպությունների գործունեությունը, ինչպիսիք էին «Ազգային կենտրոնը», «Հասարակական գործիչների խորհուրդը», «Վերածննդի միությունը», «Մոսկվայի շրջանի կամավորական բանակը» և այլն:

Վ. Ի. Լենինը Սովետների համառուսաստանյան IX համագումարում, խոսելով քաղաքացիական պատերազմի տարիներին պետական անվտանգության մարմինների կատարած դերի մասին, ընդգծում էր, որ ՎՉԿ-ն «այն հիմնարկն է, որը եղել է մեր հարվածող զենքը անհամար դավադրությունների դեմ, մեզնից անսահմանորեն ավելի ուժեղ մարդկանց կողմից սովետական իշխանության վրա կատարված անհամար ոտնձգությունների դեմ...»:

Բնութագրելով ռազմական ինտերվենցիայի և քաղաքացիական պատերազմի ժամանակաշրջանի չեկիստներին, ՍՄԿԿ Կենտկոմի քաղբյուրոյի անդամ, պետական անվտանգության կոմիտեի նախագահ Յու. Վ. Անդրոպովը պետական անվտանգության սովետական մարմինների 50-ամյակի մասին տված զեկուցման մեջ ասաց. «Սովետական իշխանության թշնամիների դեմ մղված պայքարում աճեցին ու կոփվեցին Հոկտեմբերի իդեալներով ոգեշնչված չեկիստների հիանալի կադրեր: Հենց այդ մարդկանց գործունեության հետ է կապված կրքոտ հեղափոխական չեկիստի, բյուրեղյա ազնվության և անձնական հսկայական արիության տեր մարդու, թշնամիների դեմ մղվող պայքարում անհաշտ, պարտքի ու մարդասիրության համար անողոք, իր կյանքը նվիրաբերած ժողովրդական գործի համար անձնազոհության պատրաստ մարդու՝ ժողովրդի մեջ ապրող կերպարը»:

Հակահեղափոխական ուժերի նկատմամբ տարած հաղթանակի գործում մեծ ավանդ է ներդրել Ֆելիքս Էդմունդովիչը, որը ոչ միայն ղեկավարում էր ՎՉԿ-ի մարմինները, այլև անմիջական մասնակցություն ուներ բազմաթիվ կարևորագույն գործողություններին: Նրա միտքը, կամքը, աշխատանքի փորձը անլեգալ պայմաններում բացառիկ կարևոր դեր կատարեցին հակահեղափոխության ուժերի ջախջախման գործում: Հենվելով կուսակցության Կենտրոնական կոմիտեի ցուցումների վրա, Վ. Ի. Լենինի աջակցության և աշխատավոր մասսաների օգնության վրա, Ֆ. Է. Ձերժինսկին դրեց չեկիստական վարպետության հիմքերը:

«Անվերապահորեն ընդունելով կուսակցական ղեկավարությունը,— հիշում էր Ֆելիքս Էդմունդովիչի մերձավոր զինակից Վ. Ռ. Մենժինսկին,— Ձերժինսկին կարողացավ չեկիստի



աշխատանքում հենվել բանվոր դասակարգի վրա, և հակահեղափոխությունը, չնայած ունեցած տեխնիկային, հին կապերին, օտարերկրյա պետությունների փողերին ու օգնությանը, գլխովին ջախջախվեց... Ձերժինսկին օժտված էր իրեն հատուկ տաղանդով, որը առավել հմայիչ էր դարձնում նրա կերպարը: Դա բարոյական տաղանդն է. աննկուն հեղափոխական գործողության և անխոնջ ստեղծագործության տաղանդը, որը կանգ չի առնում ոչ մի խոչընդոտի առջև, չի ղեկավարվում ոչ մի կողմնակի նպատակներով, բացի մեկ նպատակից՝ պրոլետարիատի, հեղափոխության հաղթանակի նպատակից: Նրա անձը անհաղթահարելի վստահություն էր ներշնչում... Բանվորների սերն ու վստահությունը նրա նկատմամբ անսահման էին»:

Ռազմական ինտերվենցիայի և քաղաքացիական պատերազմի ժամանակաշրջանում ՎՉԿ-ի նախագահ Ֆ. Է. Ձերժինսկու մարտական ծառայությունների արտակարգ բարձր գնահատականը, որ տվել էին կուսակցությունը և ժողովուրդը, իր արտահայտությունը գտավ նրան Կարմիր դրոշի շքանշանով պարգևատրելու մասին Համառուսաստանյան Կենտգործկոմի որոշման մեջ:

Ձերժինսկին մեծ ուշադրություն էր նվիրում ՎՉԿ-ի մարմինները ստուգված և կայուն կադրերով ամրապնդելու գործին: 1918 թվականի ապրիլի 29-ին նա դիմեց Կենտգործկոմի նախագահությանը, խնդրելով ՎՉԿ-ն համալրել «առավել գաղափարական պատասխանատու ընկերներով՝ անչափ դժվար, բայց անհրաժեշտ աշխատանքի՝ նոր կարգի պաշտպանության համար...»:

Ֆելիքս Էդմունդովիչը աշխատում էր ինքնամոռաց կերպով, առանց ուժերն ու առողջությունը խնայելու: Կնոջն ուղարկած նամակներից մեկում նա գրում է. «Ես պայքարի թեժ կրակի մեջ եմ: Վարում եմ զինվորի կյանք, որը հանգիստ չունի, քանի որ հարկավոր է փրկել մեր տունը: Մերոնց ու իմ մասին մտածելու ժամանակ չունեմ: Աշխատանքն ու պայքարը դժոխային են... Ես նշանակված եմ կրակի առաջավոր պոստում, և իմ կամքն է՝ պայքարել ու բաց աչքերով նայել ահեղ դրության ամբողջ վտանգավորությանը և անձամբ լինել անողոք...»:

Հետևողականորեն և ուշադիր նա ընտրում ու դաստիարակում էր չեկիստական կադրեր, իր անձնական օրինակով սովորեցնում էր նրանց, թե ինչպես ճանաչել ու վնասազերծել թշնամուն, միաժամանակ խստորեն պահպանելով հեղափոխական օրինականության լենինյան սկզբունքները և հենվելով աշխատավորների լայն զանգվածների օգնության վրա:

Ձերժինսկու այն խոսքերը, որ «չեկիստ կարող է լինել միայն սառը գլխով, տաք սրտով և մաքուր ձեռքերով մարդը», ամբողջապես և առաջին հերթին վերաբերում էին հենց իրեն:

Աշխատելով ուժերի, կամքի և նյարդերի անչափ մեծ լարումով, Ձերժինսկին, սակայն, ապրում էր ակնհայտորեն աննորմալ պայմաններում. մինչև 1919 թվականի փետրվար ամիսը Բոլշայա Լուբյանկայի № 11 տան աշխատասենյակը նրա համար և՛ ծառայության վայր էր, և՛ բնակարան:

1918 թվականի հոկտեմբերին Յա. Մ. Սվերդլովի պահանջով և Վ. Ի. Լենինի թույլտվությամբ Ձերժինսկին ստացավ կարճատև արձակուրդ և մեկնեց Շվեյցարիա՝ այնտեղ կնոջ և որդու հետ տեսնվելու և հայրենիք նրանց վերադարձը նախապատրաստելու համար: Որպեսզի թշնամիները չճանաչեն, նա սափրել էր մորուքը և բեղերը: Ճանապարհին պատահաբար նրան հանդիպած անգլիական նախկին լրտես, դիվանագետ Լոկկարտը մտածել անգամ չէր կարող, որ շլյապան գլխին և շքեղ կոստյումը հագած մարդը ՎՉԿ-ի նույն այն ահեղ նախագահն է, որը մեկ ամիս առաջ անձամբ հարցաքննել էր իրեն: Մեկ-երկու շաբաթ հետո Ձերժինսկին դարձյալ կանգնած է ՎՉԿ-ի ղեկի մոտ:

Բայց Ձերժինսկու աշխատանքը միայն դրանով չէր սահմանափակվում. նա ամենաակտիվ ու անմիջական մասնակցություն է ունենում սպիտակգվարդիական հրոսակախմբերի և ինտերվենտների ջախջախումը կազմակերպելու գործին՝ քաղաքացիական պատերազմի ռազմաճակատների տարբեր տեղամասերում: Այդ տարիներին նա կատարում է կուսակցության Կենտկոմի և անձամբ Վ. Ի. Լենինի մի շարք պատասխանատու հանձնարարություններ, ցուցաբերելով զինվորական և քաղաքական խոշոր աշխատողի հիանալի ունակություններ:

1919 թվականի մայիսին, երբ սկսվեց Յուդենիչի սպիտակգվարդիական բանակի հարձակումը Պետրոգրադի վրա, Բանվորագյուղացիական պաշտպանության խորհրդի նախագահ Վ. Ի. Լենինը և Ներքին գործերի ժողովրդական կոմիսար Ֆ. Է. Ձերժինսկին, հակահեղափոխականների գործունեության աշխուժացման կապակցությամբ, բնակչությանը դիմեցին «Զգուշացե՛ք լրտեսներից: Մա՛հ լրտեսներին» կոչով և բոլոր գիտակից մարդկանց կոչ արեցին՝ կրծքով պաշտպանել սովետական իշխանությունը և ուժեղացնել պայքարը լրտեսների ու սպիտակգվարդիականների դեմ:

1920 թվականի հունվարի 15-ին Ձերժինսկին ստորագրեց ՎՉԿ-ի որոշումը այն մասին, որ «հակահեղափոխության՛ ջախջախումը երկրի

ներսում և դրսում, հակահեղափոխականների և բանդիտների խոշորագույն գաղտնի կազմակերպությունների ոչնչացումը և դրա շնորհիվ ձեռք բերված սովետական իշխանության ամրապնդումը մեզ հնարավորություն են տալիս հրաժարվելու սովետական իշխանության թշնամիների նկատմամբ պատժի առավելագույն չափը (այսինքն՝ գնդակահարությունը) կիրառելուց»:

Ժողկոմսովետի 1920 թվականի փետրվարի 19-ի որոշմամբ Ձերժինսկին հաստատվեց Ընդհանուր աշխատանքային պարտավորության կոմիտեի նախագահ:

Այն կապակցությամբ, որ Պիլսուդսկու և Վրանգելի զորքերը հարձակում էին սկսել երիտասարդ սովետական հանրապետության վրա, կուսակցության Կենտկոմը 1920 թվականի ապրիլի 26-ի որոշմամբ Ձերժինսկուն ուղարկեց Ուկրաինա՝ սովետական թիկունքի ամրապնդումը կազմակերպելու համար: Այստեղ նա ոչ միայն հաջողությամբ կազմակերպում է պայքարը բանդիտիզմի, լրտեսության և դասալքության դեմ, այլև ակտիվ մասնակցություն է ունենում պետական, տնտեսական և կուլտուրական շինարարության ղեկավարմանը:

Կուսակցության Կենտրոնական կոմիտեն 1920 թվականի հունիսին Ձերժինսկուն ետ կանչեց Ուկրաինայից և ուղարկեց Արևմտյան ռազմաճակատ, որտեղ որպես ՌԿ (բ) Կ Կենտկոմի Լեհական բյուրոյի նախագահ, Լեհաստանի Ռազմահեղափոխական կոմիտեի անդամ և Արևմտյան ռազմաճակատի Ռազմահեղափոխական խորհրդի անդամ, իր մարտական զինակիցների հետ միասին ղեկավարում էր կուսակցական և ագիտացիոն աշխատանքը Արևմտյան ռազմաճակատում և թշնամուց ազատագրված Բելոռուսիայի, Լիտվայի և Լեհաստանի արևելյան մասի տերիտորիայի բնակչության շրջանում:

Ֆ. Է. Ձերժինսկին շատ բան է արել սահմանապահ զորքերի կազմավորման ու ամրապնդման գործում: Նրա նախաձեռնությամբ 1923 թվականին Մոսկվայում կազմակերպվում է սահմանապահների բարձրագույն դպրոց: Այդ դպրոցի շրջանավարտներին ուղարկած նամակում 1924 թվականի սեպտեմբերին նա գրում էր. «...չեկիստը հրամանատար է ու քաղաշխատող..., որը ծառայում է որպես բանվոր դասակարգի գործին նվիրվածության օրինակ..., միշտ հիշում է, որ ինքը բանվոր դասակարգի ծառան է..., սա ինչպիսին են ուզում մեզ տեսնել կուսակցությունը և սովետական իշխանությունը»:

Լինելով ՎՉԿ—ՕԳՊՈՒ-ի ղեկավարը, Ձերժինսկին խաղաղ շինարարության տարիներին դառնում է երկրի ժողովրդական տնտեսության վերականգնման ու վերակառուցման ականավոր կազմակերպիչներից ու ղեկավարներից մեկը: Քաղաքացիական պատերազմի ավարտից և ինտերվենտների ջախջախումից հետո հարկավոր էր ամենաարագ կարգով քայքայումից դուրս բերել տրանսպորտը: Կենտգործկոմի նախագահության 1921 թվականի ապրիլի 14-ի որոշմամբ Ձերժինսկին նշանակվում է հաղորդակցության ճանապարհների ժողովրդական կոմիսար: Ստեղծված դրությունից միակ ելքը նա համարում էր անտնտեսվարության ամենաարագ վերացումը, խնայողության հաստատումը և աշխատանքի արտադրողականության բարձրացումը, պայքարի ուժեղացումը հափշտակիչների ու գողերի դեմ և տրանսպորտի աշխատանքի ճիշտ կազմակերպումը ամբողջ երկրում:

1921—1922 թվականների սովը, որը տնտեսական քայքայման և Պովոլժիեում սկսված երաշտի հետևանք էր, դժվարին քննություն էր ավերակներից դուրս եկող տրանսպորտի համար: Կուսակցությունը և կառավարությունը այն ժամանակ մի շարք արտակարգ միջոցներ ձեռնարկեցին սովի ու դրա հետևանքների դեմ պայքարելու համար: Ձերժինսկին երկաթուղայիններին ու ջրային տրանսպորտի աշխատողներին դիմեց կոչով՝ ուժեղացնել և արագացնել շոգեքարշերի ու վագոնների նորոգման աշխատանքները՝ սովյալներին հացահատիկ ու սերմացու փոխադրելու համար: 1922 թվականի հունվարին նա, որպես հատուկ լիազորված անձ, ՀՃԺԿ-ի և ՎՉԿ-ի 40 պատասխանատու աշխատակիցներից բաղկացած արշավախմբի գլուխ անցած՝ մեկնում է Սիբիր՝ պարենային բեռների փոխադրման համար արտակարգ միջոցներ ձեռնարկելու նպատակով: Ձերժինսկու ջանքերի շնորհիվ տրանսպորտի վիճակը նկատելիորեն բարելավվեց:

Համառուսաստանյան Կենտգործկոմին կից սովի հետևանքների դեմ պայքարի կենտրոնական հանձնաժողովը հատուկ որոշմամբ 1923 թվականի հոկտեմբերին Ձերժինսկուն հանձնեց մի կրծքանշան և պատվոգիր՝ «Ի նշան շնորհակալության՝ սովի ու նրա հետևանքների դեմ պայքարի գործին մատուցած ծառայությունների համար»:

1924 թվականի հունվարի 21-ին կուսակցությունը և երկիրը ծանր վիշտ կրեցին. վախճանվեց Վ. Ի. Լենինը: Առաջնորդի թաղումը կազմակերպելու համար ՍՍՀՄ Կենտգործկոմի հանձնաժողովի նախագահ նշանակվեց Ձերժինսկին, որը շատ խորը ապրեց Վլադիմիր Իլյիչի մահը:



1924 թվականի փետրվարի 2-ին ՍՍՀՄ երկրորդ գումարման ԿԳԿ-ի առաջին նստաշրջանը Ձերժինսկուն հաստատեց ՍՍՀՄ ԺՏԳԽ-ի նախագահ՝ ազատելով նրան ՀՃԺԿ-ի աշխատանքից և համատեղության կարգով թողնելով ՕԳՊՈՒ-ի նախագահ:

Բայց որտեղ էլ որ գտնվեր, որքան էլ որ հոգնած լիներ Ձերժինսկին, միշտ էլ ուշադրություն էր դարձնում երեխաներին: Սերը դեպի երեխաները միշտ եղել է Ձերժինսկու ամենավառ գծերից մեկը: Եվ երբ երկրի առջև ծառացավ մանկական անապաստանությանը վերջ տալու խնդիրը, անձամբ նա իր վրա վերցրեց այդ դժվարին միսիան: 1921 թվականի հունվարի 21-ին նա նշանակվեց Համառուսաստանյան ԿԳԿ-ի՝ երեխաների կյանքի բարելավման հանձնաժողովի նախագահ: Կեղտոտ ու պատառոտված շորերով, սովից ուժասպառ եղած քանի՜-քանի փոքրիկ թափառաշրջիկների է Ձերժինսկին այդ տարիներին դուրս հանել նկուղներից ու ձեղնահարկերից: Մանկական անապաստանության դեմ մղվող պայքարին նա մասնակից դարձրեց ոչ միայն ՎՉԿ-ի ուժերը, այլև այդ բանի վրա հրավիրեց աշխատավորական լայն զանգվածների ուշադրությունը: Նա անդադար զբաղվում էր մանկական աշխատանքային կոմունաների և մանկական այլ հիմնարկների կյանքի հարցերով, դրանցում արտադրական արհեստանոցներ և գյուղատնտեսական ձեռնարկություններ ստեղծելու հարցերով: Նա հաճախ հյուր էր լինում մանկական աշխատանքային կոմունաների երեխաների մոտ: Քսանական թվականների երեխաների հիշողության մեջ Ֆ. Է. Ձերժինսկին մնացել է որպես «Համառուսաստանյան խնամակալ», որը ուներ դաստիարակ-մանկավարժի հիանալի հատկություններ:

Անհնար է թվարկել ժողովրդական կյանքի բոլոր այն բնագավառները, որոնցով հետաքրքրվում և զբաղվում էր Ֆելիքս Էդմունդովիչը: ՎՉԿ-ից, ՀՃԺԿ-ից և ԺՏԳԽ-ից բացի նա մեծ աշխատանք էր կատարում նաև որպես կուսակցության Կենտկոմի անդամ, Կենտկոմի քաղբյուրոյի անդամության թեկնածու, ԿԳԿ-ի անդամ, բազմաթիվ կուսակցական և պետական հանձնաժողովների նախագահ: Նա մինչև իր կյանքի վերջը սերտ կապ էր պահպանում լեհ կոմունիստների հետ: Իր ամբողջ կյանքում նա անխոնջ պայքարում էր մարքսիզմ-լենինիզմի թշնամիների դեմ կուսակցական շարքերի անաղարտության համար, կուսակցության գլխավոր գծի իրականացման համար:

«Դուք շատ լավ գիտեք, թե որն է իմ ուժը: Ես երբեք ինձ չեմ խնայում... Ես երբեք կեղծավորություն չեմ անում...»,— ասում էր Ձերժինսկին ՀամԿ (բ) Կ Կենտկոմի և ԿՎՀ-ի միացյալ պլենումի առավոտյան նիստում 1926 թվականի հուլիսի 20-ին ունեցած իր ելույթում: Իսկ այդ ելույթից երեք ժամ հետո դադարեց բաբախելուց բոցաշունչ հեղափոխականի սիրտը:

ՀամԿ (բ) Կ Կենտկոմի և ԿՎՀ-ի 1926 թվականի հուլիսի 10-ի միացյալ պլենումի երեկոյան նիստում ընդունված դիմումի մեջ ընդգծվում էր, որ Ձերժինսկին «բուրժուազիայի սարսափն է, պրոլետարիատի հավատարիմ ասպետը, կոմունիստական հեղափոխության ամենաազնիվ մարտիկը, անխոնջ մշակն ու մեծ մարտերի անվեհեր զինվորը, կուսակցության ամենաականավոր և ամենահերոսական առաջնորդներից մեկը»:

Ձերժինսկու կերպարի մեջ ներդաշնակորեն զուգակցված էին մարդու բարոյական լավագույն հատկանիշները անսահման նվիրվածությունը կոմունիզմի գործին, մեծագույն համեստությունն ու պարզությունը, աշխատասիրությունն ու ստեղծագործական նախաձեռնությունը, երկաթե կամքը, հետևողականությունն ու սկզբունքայնությունը, անհաշտելիությունը թշնամիների և աշխատանքի թերությունների նկատմամբ, մեծ սերը դեպի աշխատավորները:

Ձերժինսկու կյանքը մի անընդմեջ սխրագործություն է հանուն կոմունիզմի հաղթանակի, նրա անմահ կերպարը մի սքանչելի օրինակ է մեր երիտասարդության մեջ բարոյական լավագույն հատկություններ դաստիարակելու համար:

Ձերժինսկուց հարկավոր է սովորել տոկունություն և արիություն: Նրա օրինակով, ինչպես պատկերավոր կերպով գրել է Վ. Մայակովսկին, հարկավոր է կառուցել կյանքը.

*Իր կյանքի*
*ուղու մասին*
*խորհող պատանուն,*
*որ պետք է*
*որոշի, թե ում*
*կյանքի օրինակով*
*կյանքն իր կառուցի,*
*առանց մտածելու*
*ես կասեմ նրան՝*
*— Կյանքդ կառուցիր*
*ընկեր*
*Ձերժինսկու նման:*

Պետական անվտանգության սովետական մարմինների մարտական ուղին, նրանց կուտակած պատմական փորձը, Ֆ. Է. Ձերժինսկու և

նրա զինակիցների կյանքի օրինակը նպաստեցին չեկիստների բոլոր սերունդների աշխատանքի փորձի ու վարպետության հաջորդայնության պահպանմանը:

Պետական անվտանգության մարմինների մարտական ուղին կոմունիստական կուսակցության և աշխատավոր ժողովրդի գործին հավատարմության, սոցիալիստական պետության թշնամիների նկատմամբ արիության ու հերոսության, ինտերնացիոնալ համերաշխության, ընկերականության և փոխօգնության, պրոֆեսիոնալ բարձր վարպետության համոզիչ օրինակ է:

ՍՄԿԿ XXV համագումարը բարձր գնահատական տվեց պետական անվտանգության մարմինների գործունեությանը, շեշտեց նրանց կարևոր դերը այն դժվարին պայքարում, որ կուսակցության Կենտրոնական կոմիտեն և սովետական կառավարությունը մղում են ՍՍՀՄ-ում կոմունիստական շինարարության արտաքին պայմաններ ապահովելու համար, սոցիալիզմի համաշխարհային սիստեմը ամրապնդելու և զարգացնելու համար:

Պետական անվտանգության մարմինները, ինչպես նշեց Լ. Ի. Բրեժնևը, հուսալիորեն պաշտպանում են սովետական հասարակությունը իմպերիալիստական պետությունների հետախուզությունների, արտասահմանյան զանազան հակասովետական կենտրոնների և թշնամական այլ տարրերի քայքայիչ գործողություններից:

Անվտանգության մարմինների աշխատողները, շարունակ կատարելագործելով ՎՉԿ-ի այն փառապանծ ավանդույթները, որ ստեղծել է Ֆ. Է. Ձերժինսկին, այսուհետև ևս անշեղորեն կկենսագործեն կուսակցականության լենինյան սկզբունքներն աշխատանքում, կամրապնդեն սերտ կապը ժողովրդի հետ և առաջադրված խնդիրների լուծման գործում լայնորեն կհենվեն նրա օգնության վրա:

Սովետական առաջին ականավոր չեկիստ Ֆ. Է. Ձերժինսկու ծննդյան 100-ամյակը և մեծ Հոկտեմբերի ու ՎՉԿ—ՊԱԿ-ի մարմինների 60-ամյակը սովետների չեկիստները դիմավորում են միաձույլ շարքերով, իրենց բոլոր ուժերը, կարողությունը, եռանդն ու հոգու ավյունը սիրելի հայրենիքի անվտանգությանը նվիրաբերելու պատրաստակամությամբ:



ՄԻՋԱԶԳԱՅԻՆ ԿՅԱՆՔ

# ՄԵՐՁԱՎՈՐԱՐԵՎԵԼՅԱՆ ՊՐՈԲԼԵՄԸ ԵՎ ՆՐԱ ԼՈՒԾՄԱՆ ՈՒՂԻՆԵՐԸ

**Գ. Վ. ՄԱՄԻԿՈՆՅԱՆ**

*ՏԱՍԸ ՏԱՐԻ ԱՌԱՋ, 1967 թ. հունիսի 5-ին իսրայելական տանկերն ու հրետանու համազարկերը ազդարարեցին համաշխարհային նոր ճգնաժամի սկիզբը, ճգնաժամ, որն այնուհետև դարձավ մեր ժամանակների ամենածանր ու խճճված ռազմաքաղաքական ու տնտեսական պրոբլեմներից մեկը:*

*Մերձավոր Արևելքում կոնֆլիկտը փաստորեն ծավալվեց այն պահից, երբ իսրայելական զինվորականությունը, կատարելով իր սիոնիստական ղեկավարության հրամանը, 1948 թ. սկսեց Պաղեստինի արաբական բնակչությանը դուրս մղել նրա պապենական հողերից: Կոնֆլիկտի գլխավոր շարժառիթը, անկասկած, արաբական պետությունների դեմ Իսրայելի վարած ագրեսիվ քաղաքականության կուրսն էր: Դրա նպատակն էր, նախ՝ ուժի օգնությամբ ընդլայնել սեփական տերիտորիան, այնուհետև՝ վերացնել արաբական առաջադիմական վարչակարգերը ստրատեգիական այս կարևոր շրջանում:*

*Իսկ Իսրայելի այդ քաղաքականության հիմունքները մշակվել էին դեռևս առաջին համաշխարհային պատերազմի տարիներին սիոնիստական շարժման ղեկավարների կողմից, Անգլիայի ակտիվ աջակցությամբ: 1917 թ. նոյեմբերի 2-ին Լոնդոնում հրապարակվեց այսպես կոչված Բալֆուրի դեկլարացիան, որում հռչակվեց անգլիական կառավարության մտադրությունը՝ ստեղծել Պաղեստինում «հրեական ազգային օջախ»: Լոնդոնում այդ պատճառաբանվեց պատերազմական ժամանակի պահանջով, մասնավորապես, Անտանտի կազմում պատերազմին հրեաների ունեցած մասնակցության նկատառումով:*

*Սիոնիստական շարժման ղեկավարները Բալֆուրի դեկլարացիան օգտագործեցին Պաղեստին ներխուժելու և այնտեղ հրեաներին բնակեցնելու համար:*

*1947 թ. Միավորված ազգերի կազմակերպության գլխավոր ասամբլեան որոշում ընդունեց Պաղեստինի տերիտորիայում երկու՝ արաբական և հրեական պետություններ ստեղծելու վերաբերյալ և սահմանագծեց դրանք: Մինչ կհռչակվեր Իսրայել պետությունը, սիոնիստական վերնախավը օգտագործեց ժամանակը և ընդարձակեց ստեղծվելիք պետության սահմանները՝ ի հաշիվ արաբական պետության հասանելիք տերիտորիայի:*

*Անգլիական մանդատի ժամկետը լրանալուց երկու օր, Իսրայել պետության հռչակումից երեք օր առաջ՝ 1948 թ. մայիսի 9-ին, համաշխարհային սիոնիստական կազմակերպությունը քննարկեց «Իսրայելի անկախության դեկլարացիան». տարաձայնություններ եղան: Հաղթեց Բեն-Գուրիոնի տեսակետը, այն է՝ չգրանցել վերջնական սահմանները: Այդ օրերին Բեն-Գուրիոնը գրեց. «Մեզ ոչ ոք չի պարտավորեցնում սահմանների հիշատակումը: Այն ազգը, որն անկախություն է հռչակում, չպետք է կանխորոշի իր սահմանները, և ամենևին էլ հարկ չկա խոսել դրանց վերաբերյալ, քանի որ մենք չգիտենք, թե ինչպիսիք կլինեն դրանք»:*

*1948—1949 թթ. պաղեստինյան պատերազմը հանգեցրեց Իսրայելի տերիտորիայի զգալի ընդարձակմանը: Զգալի, բայց ոչ բավականաչափ. եզրակացրին նրա ղեկավարները: Ուշագրավն այն է, որ 1949 թ. եգիպտա-իսրայելական հաշտության համաձայնագրից անմիջապես հետո, գեներալ Ալլոնի գլխավորությամբ իսրայելական զինվորական արշավախումբ կազմակերպվեց հարավային Նեհեվի շրջանում, դեպի Աքաբայի ծովածոցը, որտեղ օկուպացված արաբական Ումմ Ռաշ-Ռաշ գյուղի տեղում հիմնվեց իսրայելական Էյլաթ նավահանգիստը: Իսրայելի զավթողական քաղաքականությունն ի վերջո հանգեցրեց այն բանին, որ Եգիպտոսի կառավարությունը, Գազայի դեմ իսրայելցիների հարձակումից հետո, ստիպված եղավ դեպի Իսրայել ստրատեգիական բեռներ տեղափոխող նավերի առջև*

փակելու Տիրանայի նեղուցը և Աքաբայի ծոցը։ Միաժամանակ, առաջին անգամ ստեղծվեցին պաղեստինցիների զինված ջոկատները՝ ֆեդաինների ստորաբաժանումները։

1956 թ. ամռանը Եգիպտոսի պրեզիդենտ Նասերը հայտարարեց Սուեզի ջրանցքի ազգայնացման մասին, որը պատկանում էր անգլիական և ֆրանսիական մոնոպոլիստական կապիտալին։ Բնականաբար, դա խիստ դժգոհություն առաջացրեց Արևմուտքի իմպերիալիստական շրջաններում։ Նախ՝ անգլիական և ֆրանսիական բաժնետերերը զրկվեցին հսկայական շահույթներից, երկրորդ՝ ամրապնդվեցին Եգիպտոսի դիրքերը, և երրորդ՝ Անգլիան ու Ֆրանսիան վախ ապրեցին այդ փաստի հանդեպ, քանի որ Եգիպտոսի օրինակը վարակիչ կարող էր լինել մյուս կախյալ երկրների համար։

Ինչպես հայտնի է, համաշխարհային հասարակական կարծիքը և սոցիալիստական երկրների անսասան դիրքորոշումը հարկադրեցին Իսրայելին դուրս բերելու զորքերը Սինայից։ Սակայն հետագա իրադարձությունները ցույց տվեցին, որ դա ամենևին չփոխեց Իսրայելի զավթողական պլանները։

Տերիտորիալ էքսպանսիան սովորաբար անց էր կացվում «իսրայելական պատմական հողերի ազատագրման» և «անվտանգ սահմաններ» ստեղծելու լոզունգների ներքո։ Այդպես եղավ նաև 1967 թ., երբ Թել-Ավիվը հարձակվեց նախ Եգիպտոսի, ապա Սիրիայի ու Հորդանանի վրա։ «Վեցօրյա պատերազմից հետո մինչև օրս, տասը տարի շարունակ, Իսրայելի մեկը մյուսին հաջորդող հինգ կառավարությունների ղեկավարները բացեիբաց հայտարարում են, որ իրենք մտադիր չեն արաբներին վերադարձնել Գոլանյան բարձունքները, Շարմ աշ-Շեյխն և Գազայի շրջանը, իսկ կնեսեթը (պառլամենտը) պաշտոնական որոշում է կայացրել Երուսաղեմի արևելյան հատվածի անեքսիայի վերաբերյալ։

Նոր տերիտորիաներ ձեռք բերելու գաղափարները լայնորեն պրոպագանդվում են Իսրայելի բնակչության շրջանում։ Այդ պրոպագանդան ընդգրկում է «անվտանգ սահմանների» (այսօր արդեն նոր տերմին է օգտագործվում՝ «պաշտպանելի սահմանների»), արաբական տարբեր հողատարածությունների վրա Իսրայելի բիբլիական «իրավունքների» հիմնավորման վերաբերյալ կեղծ տեսությունները։

Իրավիճակը Մերձավոր Արևելքում որոշ չափով փոխվեց 1973 թ. պատերազմից հետո, որը լրջորեն սասանեց Իսրայելի ամբարտավան ինքնավստահությունը։ Այդ ժամանակվա իրադարձությունները ուժեղացրին դիֆերենցացումը Իսրայելի հասարակական կարծիքում, հատկապես պատերազմի և խաղաղության հարցերում։

1973 թ. «հոկտեմբերյան պատերազմից» առաջացած իրավիճակը Վաշինգտոնը փորձեց առնել իր վերահսկողության տակ։ Նրա գլխավոր մտադրություններից էր քաղաքական և սոցիալական նոր հաշվեկշռի ստեղծումը Եգիպտոսում և մյուս արաբական երկրներում, ազդեցության տարածումը Սաուդյան Արաբիայում, իհարկե՝ պահպանելով Իսրայելի, որպես իր գլխավոր պարտնյորի, հետ բոլոր տեսակի կապերը։

ԱՄՆ-ը, որ վաղուց էր նպատակադրվել խանգարելու եգիպտական հեղափոխության զարգացումը, այժմ արդեն չխնայեց ոչ մի բան այդ նպատակին հասնելու համար։ Նա, նախ, կարողացավ իրականացնել «բաց դռների քաղաքականություն» և հասնել այն բանին, որ Եգիպտոսը միակողմանի դադարեցնի Սովետական Միության հետ իր բարեկամության և համագործակցության 1971 թ. պայմանագիրը։ Այդ ամենին հաջորդեց Սինայի թերակղզում զորքերի տարանջատման վերաբերյալ 1975 թվականի իսրայելա-եգիպտական համաձայնագիրը, որով Իսրայելը առավելապես ապահովագրեց իր ագրեսիվ քաղաքականությունն ինչպես Սիրիայի, այնպես էլ Լիբանանի հատվածներում, դրա դիմաց ԱՄՆ-ից ստանալով 2,5 միլիարդ դոլարի չափով լրացուցիչ ռազմական օգնություն։

Սակայն, նկատի ունենալով Սինայի համաձայնագրով ընդհանրապես արաբական երկրներին արված աննշան զիջումները, Իսրայելի ներքին օպոզիցիան խուճապահար հայտարարեց, որ Իսրայելը «աստիճանաբար սկսել է ետ վերադարձնել արաբական հողերը»։

Եգիպտոսի «չեզոքացումը» Սինայի համաձայնագրի օգնությամբ և Իսրայելի ռազմական ճնշման տեղափոխումը Սիրիա և Հորդանան, իսկ հետագայում նաև Լիբանան, վատթարացրին ընդհանուր իրավիճակը Մերձավոր Արևելքում։ Բանն այն է, որ Եգիպտոսի բանակն այստեղ ամենամեծաթիվն է, որն այժմ չի կարող մասնակցել մարտական գործողություններին, իհարկե, եթե իսրայելական զորքերը չհարձակվեն Եգիպտոսի վրա։ Հետևապես, Իսրայելի պոտենցիալ հակառակորդները մնացել են Սիրիան և Հորդանանը։

Այնպես որ, ԱՄՆ-ի ձեռնարկած մասնակի միջոցառումները, որոնք շրջանցում են մյուս շահագրգռված կողմերին, այդ թվում և Պաղեստինի ազատագրության կազմակերպությունը, ո՛չ միայն չվերացրին ռազմական նոր պայթյունի սպառնալիքը Մերձավոր Արևելքում, այլև ընդհակառակն՝ թուլացրին Իսրայելին դիմակայող երկրների միասնությունը, որը շատ ավելի կոնտրաստ գույներով դրսևորվեց Լիբանանի ողբերգական իրադարձություններում։ Դրանցում բացահայտվեց հակասությունների մի ամբողջական կոմպլեքս՝ սոցիալական, կրոնական լիբանանյան հետադիմության (հատկապես աջ քրիստոնեական) ուժերի և պաղեստինյան դիմադրության շարժման միջև։ Վերջինս ձախ հայրենասիրական ուժերի հետ մեկտեղ պաշտպանում էր Լիբանանում ապաստանած 300 հազար պաղեստինցի գաղթականներին ֆիզիկական ոչնչացումից, ինչպես նաև Իսրայելի զավթողական քաղաքականության դեմ պայքարի համար այս երկրի տերիտորիայում իր բազան ունենալու իրավունքը։

Յուրաքանչյուր օբյեկտիվ վերլուծություն ցույց է տալիս լիբանանյան ողբերգության (որը խլեց 40 հազար մարդկային կյանք) օրգանական կապը Մերձավոր Արևելքի հիմնական կոնֆլիկտի՝ արաբա-իսրայելական հարաբերությունների չկարգավորված լինելու հետ։ Մերձավորարևելյան ճգնաժամը ազդել և այժմ էլ բացասաբար է ազդում կապիտալիստական համաշխարհային էկոնոմիկայի (նաև ամերիկյանի) վրա, հատկապես նավթի շուկայում։ Դրա հետևանքով է, որ սեփական նավթ չունեցող արևմտյան երկրները «սև ոսկու» ներմուծման համար 1973 թ. հոկտեմբերից հետո, մեկ տարում «վերավճարեցին» 75 միլիարդ դոլար։ Նման կորուստները ո՛չ միայն հանգեցրին այդ երկրների տնտեսության դեֆորմացիային, ինֆլյացիոն պրոցեսների սրմանը, ԱՄՆ-ի և Ճապոնիայի վալյուտաների կուրսի զգալի անկմանը, գործազրկության աճին, այլև ՆԱՏՕ-ի ներկայացված պարտավորությունների և արաբական երկրների հետ հարաբերությունների (բարելավման նպատակով) վերանայման անհրաժեշտությանը։

Իսրայելի զավթողական քաղաքականությունը հիմնավորելու և արդարացնելու նպատակով նրա պրոպագանդիստական մեքենան հմտորեն է օգտագործում արաբական որոշ ղեկավարների (այդ թվում՝ Պաղեստինյան դիմադրության շարժման նախկին ղեկավարների) էքստրեմիստական վարքագիծը։ Իսրայելական, ինչպես նաև արևմտաեվրոպական մամուլի էջերում նրանց այդ տրամադրությունները հրամցվում են սովորաբար շատ ավելի չափազանցված տեսքով՝ որպես մերձավորարևելյան կոնֆլիկտի միակ, կամ, առնվազն, գլխավոր դրդապատճառ։ Իսրայելի ղեկավարներն այդ փաստերը վարպետորեն օգտագործում են իրենց իսկ էքստրեմիզմը քողարկելու, ինչպես նաև Իսրայելը ոչնչացնելու վերաբերյալ արաբական սպառնալիքի հորինվածքը ուռճացնելու նպատակով։ Իսկ այդ ամենն Իսրայելին պետք է՝ միջուկային տերություն դառնալու նկրտումներն արդարացնելու համար։ Ատոմային զենքին տիրանալու նրա ձգտման հաստատումն է թեկուզ այն փաստը, որ Իսրայելը հրաժարվել է ստորագրել միջուկային զենքը չտարածելու մասին 1968 թ. պայմանագիրը, որն ստորագրել են նրա հակառակորդ բոլոր երկրները՝ Եգիպտոսը, Սիրիան, Հորդանանը, Իրաքը, Լիբանանը և Լիբիան։

Ի՞նչ է իրենից ներկայացնում Իսրայելի միջուկային ծրագիրը։ Հուսալով, որ արաբական պետությունների նկատմամբ ունի գիտատեխնիկական հարաբերական գերակշռություն, Իսրայելը ձգտում է այս շրջանում միջուկային զենքի իր մենաշնորհին։ Ուշագրավն այն է, որ 1976 թ. սկզբներին Իսրայելն ամերիկյան մի քանի «Լենս» հրթիռներ ստացավ, որոնք միջուկային լիցք կարող են տեղափոխել։ Այդ գործարքի վտանգավորությունն առանձնակի իմաստ ստացավ ԱՄՆ-ի կենտրոնական հետախուզական վարչության բարձրաստիճան որոշ պաշտոնյաների այն հայտարարություններից հետո, թե Իսրայելը 10—20 միավոր միջուկային զենք ունի, որը պատրաստ է օգտագործման։ Այստեղից էլ հասկանալի է դառնում Մերձավոր Արևելքում Իսրայելի նոր ձգտումը՝ վերադառնալ «ոչ պատերազմ, ոչ էլ խաղաղություն» իրավիճակին, որից 1973 թ. հոկտեմբերից հետո, թվում էր, սկսել էին հեռանալ կոնֆլիկտի մասնակից, շահագրգռված կողմերը։

Ելնելով ԱՄՆ-ի և Իսրայելի շահերից, Վաշինգտոնի ներկայիս ադմինիստրացիան, ինչպես նախկինում, կոնֆլիկտի կարգավորման միակ ուղին տեսնում է մասնակի պայմանավորվածությունների, սեպարատ գործարքների մեջ։ Խնդրի նման մոտեցման հիմքը «քայլ առ քայլ» սկզբունքն է, այսինքն՝ Իսրայելի ագրեսիայի զոհ դարձած արաբական երկրների հետ երկկողմանի բանակցություններն են՝ ԱՄՆ-ի, այսպես ասած, միջնորդությամբ, իսկ դա նշանակում է շրջանցել գլխավորը՝ վերջնական բանակցությունների հրավիրումը։ Ընդ որում, Վաշինգտոնի դերը երկկողմանի բանակցություններում հաճախ դուրս է գալիս «անաչառ միջնորդի» շրջանակներից։ Իրականում, ԱՄՆ-ը միշտ էլ հանդես է եկել ոչ թե բանակցությունների համար «գաղափարների գեներատորի դերում», այլ մշակել ու մշակում է դրանցում ընդհանուր տակտիկա՝ ելնելով այն բանից, թե ինչպիսին է տվյալ պահին իրավիճակը Ամերիկայի Միացյալ Նահանգներում և մնացած աշխարհում։

Այժմ ամերիկյան պրոպագանդան փորձում է տպավորություն ստեղծել, թե ԱՄՆ-ի քաղաքականությունը Մերձավոր Արևելքում հաշվեկշռված քաղաքականություն է, որը հաշվի է առնում միաժամանակ և՛ արաբական երկրների, և՛ Իսրայելի շահերը։ ԱՄՆ-ը Ժնևյան կոնֆերանսի օգնությամբ, որը նախատեսվում է հրավիրել այս տարվա աշնանը, ձգտում է նույնանման իրավունքներով «օժտել» և՛ ագրեսորին, և՛ նրա զոհերին։ Այլ կերպ ասած, խոսքն այստեղ ոչ թե մերձավորարևելյան պրոբլեմի կոմպլեքս լուծման, այլ կոնֆլիկտի մասնակից պետությունների միջև երկկողմանի ուղղակի բանակցությունների մասին է, որը ինքնաբերաբար կոնֆերանսի

օրակարգից կբացառեր Պաղեստինի հարցը: ԱՄՆ-ի նման դիրքորոշումը տրամաբանորեն սերում է Պաղեստինի ազատագրության կազմակերպության ներկայացուցչի հետ որևէ բանակցություն չվարելու Իսրայելի վճռականությունից և այն բանից, որ նա հրաժարվում է հեռանալ Հորդանան գետի արևմտյան ափից, որը Գազայի սեկտորի հետ պետք է առանձնացվեր որպես ապագա պաղեստինյան պետության տերիտորիա:

Մերձավոր Արևելքին պետք է ոչ թե երբեմն դադար, որը կարող է նոր պայթյունի նախերգանք լինել, այլ կայուն ու երկարաժամկետ խաղաղություն: Այս առնչությամբ ուշագրավ է սովետական պետության դիրքորոշումը, որը մեկ անգամ ևս ամենայն որոշակիությամբ շարադրվեց ՍՍՀՄ արհեստակցական միությունների XVI համագումարում ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար Լ. Ի. Բրեժնևի արտասանած ճառում: ՍՍՀՄ-ն առաջադրում է այնպիսի սկզբունքներ, որոնք պետք է կազմեն Մերձավոր Արևելքում խաղաղության մասին ամփոփիչ փաստաթղթի (կամ փաստաթղթերի) հիմքը: Դա, նախ և առաջ, պատերազմների միջոցով տերիտորիաների ձեռքբերման անթույլատրելի սկզբունքն է:

«Մենք անվիճելի ենք համարում,— ասաց Լ. Ի. Բրեժնևը,— որ հաշտության փաստաթղթերով պետք է նախատեսվի իսրայելական զորքերի դուրսբերումը 1967 թվականին օկուպացրած բոլոր արաբական տերիտորիաներից»:

Մյուս սկզբունքը՝ մերձավորարևելյան շրջանի բոլոր երկրների անկախ գոյության և անվտանգության իրավունքի ապահովումն է: Սովետական Միությունը նկատի ունի, որ իսրայելական զորքերի դուրսբերումն ավարտելու պահից կոնֆլիկտի մասնակից արաբական պետությունների և Իսրայելի միջև կդադարի պատերազմական վիճակը, և կհաստատվեն խաղաղ հարաբերություններ:

Եվ, վերջապես, Պաղեստինի արաբ ժողովրդի անկապտելի իրավունքների, ներառյալ նրա ինքնորոշման, սեփական պետություն ստեղծելու իրավունքի ապահովման սկզբունքն է: Այն Պաղեստինի երեք միլիոնանոց ժողովրդի օրինական պահանջն է: Արհամարհել դա՝ կնշանակեր Մերձավոր Արևելքն անհամար երկպառակությունների դատապարտել:

Իհարկե, չի կարելի պատրանքներ ստեղծել, թե Մերձավոր Արևելքում խաղաղությունը կհաստատվի, ինչպես ասում են, մի ակնթարթում: Ահա թե ինչու, մասնավորապես, իսրայելական զորքերի դուրսբերումը կարելի կլինի իրականացնել ոչ թե անմիջապես, այլ աստիճանաբար, մի քանի ամիսների ընթացքում, նախապես հաստատված որոշակի ժամկետներում: Այդ նույնը պետք է կիրառվի նաև Իսրայելի և նրա արաբական հարևանների միջև սահմանների նկատմամբ: Սահմանները պետք է հայտարարվեն վերջնական և անձեռնմխելի, իսկ դրանց երկու կողմերում, համապատասխան պետությունների համաձայնությամբ, կարող են ստեղծվել ապառազմականացված գոտիներ, առանց որևէ մեկի համար միակողմանի առավելությունների: Այնտեղ կարող էին տեղաբաշխվել կամ Միավորված ազգերի կազմակերպության արտակարգ զինված ուժերը, կամ էլ նրա դիտորդները, միայն խիստ որոշակի ժամկետով:

Սովետական Միությունն առաջարկում է ամփոփիչ փաստաթղթերում գրանցել նաև Տիրանայի նեղուցով և Աքաբայի ծովածոցով բոլոր երկրների, այդ թվում՝ Իսրայելի (պատերազմի վիճակի դադարեցումից հետո) նավերի անցման ազատության վերաբերյալ դրույթը, ինչպես նաև Եգիպտոսի հայտարարությունը Սուեզի ջրանցքով նավերի անցման մասին, որն ամբողջովին եգիպտական սուվերենության ներքո է:

Վերջին տարիների փորձը վկայում է, որ մերձավորարևելյան կարգավորման մեջ չի կարելի կորցնել սկզբունքային կողմնորոշումները և ընտրել ագրեսորի հետ սեպարատ գործարքների ուղին, անտեսելով խնդրի արմատական լուծումները: Իհարկե, Սովետական Միությունը երբեք չի պարտադրել մերձավորարևելյան կարգավորման հետ կապված հնարավոր հիմունքների վերաբերյալ իր նկատառումները: Այս շրջանում խաղաղության պայմանների մշակումը, բոլոր մանրամասներով, նախ և առաջ կոնֆլիկտի անմիջական մասնակիցների՝ Եգիպտոսի, Սիրիայի, Հորդանանի, Պաղեստինի և Իսրայելի գործն է: Սակայն Սովետական Միության համար ամենևին էլ նույնը չէ, թե ինչ հիմքի վրա կտարվի կարգավորումը իր սահմաններին մոտ կանգնած շրջանում:

Ըստ էության համընդհանուր է դարձել այն պահանջը, որպեսզի Մերձավոր Արևելքի հարցերով Ժնևի հաշտության կոնֆերանսի վերսկսումից հետո այնտեղ, մյուս մասնակիցների թվում իր օրինական տեղն զբաղեցնի նաև Պաղեստինի արաբական ժողովրդի ներկայացուցիչը՝ Պաղեստինի ազատագրության կազմակերպությունը: Այդ մասին բազմիցս արձանագրվել է ՄԱԿ-ի փաստաթղթերում: Սակայն Միացյալ Նահանգներն առաջվա նման փորձում են խոչընդոտել Ժնևի կոնֆերանսին պաղեստինցիների մասնակցությանը: Ըստ նրանց, ԱՄՆ-ը Ժնևի կոնֆերանսում չի տեսնում Պաղեստինի ազատագրության կազմակերպության կոնստրուկտիվ դերը, քանի դեռ վերջինս չի վերանայել իր վերաբերմունքն Իսրայելի նկատմամբ: Մինչդեռ հայտնի է, որ Թել-Ավիվն անտեսում է պաղեստինցի արաբներին, ժխտելով նրանց իրավունքը սեփական պետություն ստեղծելու խնդրում և հրաժարվում է ճանաչել Պաղեստինի ազատագրության կազմակերպությունը: Իսկ Սպիտակ տունը բոլորովին էլ տրամադրված չէ համոզելու Իսրայելին՝ վերանայելու իր դիրքորոշումն այդ հարցում: Այնպես որ, հակառակ սեփական խոստումներին՝ հետևել Մերձավոր Արևելքի պրոբլեմի լուծման «հավասարակշռված մոտեցմանը», պաշտոնապես Վաշինգտոնն առաջվա նման ամեն կերպ աջակցում է Իսրայելին: Դա հատկապես նկատելի դարձավ Իսրայելի նախկին ղեկավարների հետ պրեզիդենտ Ջ. Քարտերի հանդիպման և Եգիպտոսի պրեզիդենտի ԱՄՆ կատարած այցի ժամանակ: Ընդհանրապես Մերձավոր Արևելքին, մոտակա կարգավորման հեռանկարի տեսակետից, ոչինչ չտվեցին նաև ամերիկյան պրեզիդենտի հանդիպումները Սիրիայի, Հորդանանի և Սաուդյան Արաբիայի ղեկավար գործիչների հետ:

Մերձավոր Արևելքը շարունակում է մնալ լարվածության վտանգավոր օջախ: Միավորված ազգերի կազմակերպության գլխավոր քարտուղար Կ. Վալդհայմը Մերձավոր Արևելքում լինելուց հետո ՄԱԿ-ում կարծիք հայտնեց, որ եթե նույն ձևով զարգանան իրադարձությունները Մերձավոր Արևելքում, ապա շատ հնարավոր է, որ մենք ականատես լինենք պատերազմական նոր ռաունդին այդ շրջանում: Դա ավելի ռեալ է դառնում հատկապես այն բանից հետո, երբ մայիսին Իսրայելում վաղաժամկետ պառլամենտական ընտրություններում հաղթանակեց «Լիկուդ» աջ խմբավորումը, որի ղեկավար Մենահեմ Բեգինը հայտնի է իր խիստ ընդգծված էքստրեմիզմով: Նա այժմ գլխավորում է Իսրայելի հինգերորդ կառավարությունը:

Վերջերս Վաշինգտոն կատարած Բեգինի այցը «անփոփոխ» թողեց մերձավորարևելյան պրոբլեմին Թել-Ավիվի մոտեցումը. կոնֆլիկտի կարգավորման վերաբերյալ ԱՄՆ-ի պրեզիդենտ Ջ. Քարտերին նրա առաջարկած «պլանը», որը, ի դեպ, արժանացավ պրեզիդենտի հավանությանը, ավելի շուտ նոր փակուղի է խոստանում Ժնևի կոնֆերանսին, քան երաշխավորում նրա հաջողությունը:

Մերձավորարևելյան պրոբլեմի կարգավորմանը նոր բան չտվեց նաև ԱՄՆ-ի պետական քարտուղար Ս. Վենսի՝ թվով երկրորդ ուղևորությունը այդ շրջան, որտեղ նա բանակցեց Եգիպտոսի, Սիրիայի, Հորդանանի, Լիբանանի, Սաուդյան Արաբիայի և Իսրայելի ղեկավարների հետ, նպատակ ունենալով նպաստել Ժնևի կոնֆերանսի նախապատրաստմանը: Չնայած ամերիկյան մամուլի սպասումներին, Ս. Վենսը ինչպես առաջին անգամ (1977 թ. փետրվար), այնպես էլ այժմ չասաց իր «նոր խոսքը» Մերձավոր Արևելքի հարցում, որը ժամանակից շուտ փորձեց ռեկլամել պաշտոնական Վաշինգտոնը:

Սակայն այստեղ ուշագրավն այն է, որ ԱՄՆ-ի արտաքին գերատեսչության ղեկավարը Մերձավոր Արևելք ժամանեց Բեգին—Քարտեր բանակցություններից անմիջապես հետո և այն պահին, երբ այնտեղ նոր էր ավարտվել Եգիպտոսի և Լիբիայի միջև ծագած սահմանային կոնֆլիկտը: Նման ընդհարումները, անկասկած, թուլացնում են արաբական երկրների միասնությունը, և դա տեղի է ունենում ԱՄՆ-ի ու Իսրայելի հակաարաբական դաշինքի ուժեղացման ֆոնի վրա:

Ս. Վենսի ուղևորությունը Մերձավոր Արևելք պարզապես ծրագրված ցույց էր, որը նպատակ ուներ հաստատելու այն պատրանքը, թե ԱՄՆ-ը իրոք այս շրջանում վարում է «հաշվեկշռված» քաղաքականություն: Մինչդեռ այդ անվան տակ ինչե՞ր միայն չեն արվում Վաշինգտոնի և Թել-Ավիվի «հատուկ հարաբերությունների» հետագա ուժեղացման համար:

Խաղաղ գոյակցության սկզբունքով տարբեր հասարակարգ ունեցող պետությունների միջազգային հարաբերությունները վերակառուցելու օգտին ակտիվորեն հանդես են գալիս ՍՍՀՄ-ը և սոցիալիստական մյուս երկրները: Չնայած դրան, մերձավորարևելյան ճգնաժամը շարունակում է մնալ որպես քաղաքական անոմալիա:

Խաղաղությունը և արդարությունը Մերձավոր Արևելքում, որի համար համառորեն և հետևողականորեն պայքարում են աշխարհի խաղաղասեր ուժերը, կարող են և պետք է, որ դառնան գլոբալ լարվածության թուլացման կարևորագույն տարրերը ինչպես քաղաքական, այնպես էլ ռազմական առումով: Այդպիսին է լարվածության թուլացման քաղաքականության հայտնի տրամաբանությունը:

# ՀԱՆՑԱԳՈՐԾՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ԿԱՆԽՄԱՆ ԲՆՈՒՅԹԸ ՍՈՎԵՏԱԿԱՆ ՀԱՍԱՐԱԿԱՐԳՈՒՄ

**Գ. Ս. ՍԱՐԳԻՍՈՎ**
**Իրավաբանական գիտությունների թեկնածու**

ՍՍՀՄ նոր Սահմանադրության նախագծում արտացոլվել են ո՛չ միայն վերջին 40 տարիներին մեր երկրի հասարակական կյանքի տարբեր բնագավառներում ձեռք բերված աննախադեպ ու պատմական նվաճումները, այլև հռչակվել և երաշխավորվել են սովետական քաղաքացու բազմաթիվ նոր իրավունքներ և ազատություններ, որոնց մասին կապիտալիստական աշխարհի աշխատավորները միայն երազել կարող են։

Սահմանադրության նախագծում շարադրված են այն գլխավոր խնդիրները, որոնք իր առջև դնում է սովետական պետությունը գերագույն նպատակի՝ անդասակարգ կոմունիստական հասարակարգի կառուցման համար։ Այստեղ միաժամանակ նշված են այն միջոցները և ուղիները, որոնք առավել գործնական ու արդյունավետ են այդ խնդիրների իրականացման ճանապարհին եղած արգելքներն ու դժվարությունները հաղթահարելու գործում։

Իսկ այդ խնդրի լուծումը դիալեկտիկական կապի մեջ է գտնվում մեր երկրում հանցագործությունները կանխելու և իսպառ վերացնելու, սոցիալիստական օրինականությունն է՛լ ավելի ամրապնդելու պրոբլեմի հետ։

Հայտնի է, որ որոշ բնույթի հանցագործություններ ուղղակի շոշափում են այն իրավունքներն ու անձնական ազատությունները, որ երաշխավորված են սովետական քաղաքացիներին Սահմանադրության նախագծով։ Օրինակ, անձի, բնակարանի անձեռնմխելիության, աշխատանքի և մի շարք այլ իրավունքների դեմ ոտնձգությունները փաստորեն խախտում են կամ սահմանափակում սովետական քաղաքացու սահմանադրական իրավունքները։ Հետևապես, այդ բնույթի հանցագործությունների իսպառ վերացումը կնպաստի սովետական մարդկանց համար Սահմանադրությամբ հռչակված ու երաշխավորված իրավունքների և անձնական ազատությունների լիակատար ապահովմանը։

Հանցագործությունների դեմ մղվող պայքարի հետագա ուժեղացումը հրատապ խնդիր է։ Մեր կուսակցությունը բազմիցս նշել է, որ օրինականության ու իրավակարգի ամրապնդման գործում, հանցագործությունների դեմ մղվող պայքարում գլխավոր ուշադրությունը պետք է ուղղել հանցագործությունների կանխմանը և դրանց կանխարգելմանը։

ՍՍՀՄ-ում հանցագործությունները վերացնելու ծրագրային խնդրի լուծմանն է նվիրված այն գործունեությունը, որը քրեագիտության մեջ ընդունված է անվանել հանցագործությունների կանխման սոցիալական սիստեմ։ Այդ սիստեմը սոցիալական կարգավորում է սովետական հասարակության սպեցիֆիկ ոլորտում, որն իրականացվում է կուսակցական, պետական մարմինների, պաշտոնատար անձանց և լայն հասարակայնության գործունեությամբ։ Վերջինս խարսխված է սոցիալիզմի առավելությունների վրա և նպատակ ունի լրիվ վերացնելու հանցագործությունները՝ դրանց պատճառները և ծնող պայմանները հաղթահարելու, հղացվող հանցանքները կանխելու և կանխարգելելու, իրավախախտողներին ուղղելու և վերադաստիարակելու միջոցով։

Սոցիալիստական հասարակարգում հանցագործությունների կանխմանը ներհատուկ են մի շարք առանձնահատկություններ, որոնցից են՝ հանցանքի պատճառների ու պայմանների վերացման նպատակաուղղվածությունը, հասարակայնության լայն մասնակցությունը, համոզման զուգակցումը նախազգուշացման հետ, հետքննության, նախաքննության ու դատական մարմինների օժտումը կանխարգելման լայն ֆունկցիաներով և այլն։

Վ. Ի. Լենինը բազմիցս շեշտել է, որ հանցանքները կանխելու միջոցը, նախ և առաջ, դրանց հարուցող պատճառների ու պայմանների հաղթահարումն է։ Աշխատավորները հետաքրքրվում են «...ո՛չ միայն նրանով..., նույնիսկ ոչ այնքան նրանով, թե արդյոք տվյալ արարքը վիրավորանք, ծեծ, թե՞ խոշտանգում կնանաչվի, թե նրա համար ի՞նչ տեսակի և ի՞նչ պատիժ կնշանակվի, որքան նրանով, որ մինչև արմատները բացահայտի և հրապարակորեն լուսավորի հանցագործության բոլոր հասարակական-քաղաքական թելերն ու նրա նշանակությունը, որպեսզի դատավարությունից ստանա հասարակական բարոյականության և գործնական քաղաքականության դասեր» (Եվժ, հ. 4, էջ 513—514)։

Սովետական մարդկանց կյանքի, կուլտուրայի, կրթության ու գիտակցականության մակարդակի բարձրացման ասպարեզում, մեր երկրում կատարված վիթխարի աշխատանքը վկայում է այն լուրջ միջոցառումների մասին, որ սովետական կառավարությունը կիրառում է ՍՍՀՄ-ում հանցագործությունների պատճառներն ու պայմանները հաղթահարելու, սոցիալական այդ չարիքն արմատախիլ անելու համար։

Հանցագործությունների պատճառները վերացնելու նպատակով կատարված աշխատանքը տվել է դրական արդյունք։ Ահա մի քանի տվյալներ միայն. 1962 թ. դատապարտվածների թիվը, 1940 թ. համեմատությամբ, ՍՍՀՄ-ում պակասել է մի քանի անգամ։ Այդ տենդենցը շարունակվում է նաև ներկայումս։ Վերացել են մի քանի առանձնապես վտանգավոր հանցագործություններ։ Գրեթե լրիվ վերացել է բանդիտիզմը, նկատելիորեն կրճատվել է կողոպուտն ու ավազակությունը, պակասել են վտանգավոր հանցագործությունները հաշվառված հանցագործությունների ընդհանուր թվում և այլն։

Միանգամայն այլ է վիճակը կապիտալիստական հասարակարգում. այստեղ հանցագործությունների դեմ մղվող պայքարի սուր ծայրն ամենևին էլ ուղղված չէ հանցագործությունների պատճառների դեմ։ Դա պայմանավորված է այն բանով, որ այդ պատճառները թաքնված են հենց մասնավոր սեփականության, շահագործման և ճնշման վրա հիմնված կապիտալիստական հասարակարգի մեջ։ «Համակեցության կանոնները խախտող էքսցեսների արմատական սոցիալական պատճառը,— գրել է Վ. Ի. Լենինը,— մասսաների շահագործումն է, նրանց կարիքն ու աղքատությունը» (Երկեր, հ. 25, էջ 603—604)։

Կապիտալիստական երկրներում հանցագործությունների հիմնական պատճառները փաստորեն չեն բացահայտվում։ Արդարև, կապիտալիստական հասարակարգն անկարող է վերացնել հանցագործությունները, ավելին, այն իր առջև այդպիսի խնդիր չի դնում։ Ամերիկացի հայտնի գիտնական Լոպես-Ռեյը գրում է. «Անհրաժեշտ է միայն լուծել այն հարցը, թե ինչ քանակի հանցագործություններ, որոնք պարտադիր կերպով արտահայտված չեն թվաքանորեն, կարող է հանդուրժել հասարակությունը, և ինչ քանակի հանցագործություններ սպառնալից չեն լինի նրա համար» (տե՛ս «Социалистическая законность», 1973, № 3, стр. 78)։ Այսինքն, խնդիրը ոչ թե այն է, որ լրիվ վերացվեն հանցագործությունները, այլև պահպանվեն այնպիսի մակարդակով, որը չսպառնա այդ հասարակարգի գոյությանը։

Պատահական չէ, որ արդի կապիտալիստական հասարակարգի բնորոշ գծերից մեկը հանցագործությունների անզուսպ աճն է։ Յոթ տարում ԱՄՆ-ում հանցագործությունների ընդհանուր թիվն ավելացել է 2,1—4,6 մլն-ի, այսինքն՝ ավելի քան երկու անգամ։ Ակնհայտորեն շարունակում են աճել անչափահասների հանցագործությունները։ Այստեղ 1973 թվականին լուրջ հանցագործությունների 45 տոկոսը կատարել են մինչև 18 տարեկան անչափահասները։

ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅՈՒՆԸ և սովետական պետությունը հանցագործությունների կանխումը երբեք չեն դիտել իբրև միայն վարչական մարմինների խնդիր (միլիցիա, դատախազություն, դատարան և այլն)։ Ավելին, այդ խնդրի լուծումը ենթադրում է հասարակայնության լայն խավերի ակտիվ մասնակցությունը։

Շեշտելով պետության կառավարմանը, մասնավորապես, սոցիալիստական օրինականության ամրապնդմանը ամեն կարգի իրավախախտումների դեմ մղվող պայքարին աշխատավորների ամենալայն խավերի մասնակցության հրամայական անհրաժեշտությունը, Վ. Ի. Լենինը նշում էր. «...մասսայի յուրաքանչյուր ներկայացուցիչ, յուրաքանչյուր քաղաքացի պետք է դրվի այնպիսի պայմանների մեջ, որպեսզի նա կարողանա մասնակցել թե՛ պետության օրենքների քննությանը, թե՛ իր ներկայացուցիչների ընտրությանը և թե պետական օրենքների իրագործմանը կյանքում» (Երկեր, հ. 27, էջ 250)։

Լենինյան այդ պահանջներն արտացոլվել են ՍՄԿԿ Կենտկոմի և ՍՍՀՄ Մինիստրների սովետի համապատասխան որոշումներում. «Երկրում հասարակական կարգի պահպանմանը աշխատավորների մասնակցության մասին» (1959 թ.

մարտի 2), «Հանցագործությունների դեմ մղվող պայքարն ուժեղացնելու միջոցառումների մասին» (1966 թ. հուլիսի 23), «Հասարակական կարգի պահպանման ուղղությամբ կամավոր ժողովրդական դրուժինաների գործունեության հետագա կատարելագործման մասին» և այլն:

Հանցագործությունների դեմ մղվող պայքարում օրենսդրորեն վավերացվել է քաղաքացիների իրավունքների պաշտպանությունը (տե՛ս ՍՍՀՄ Գերագույն սովետի նախագահության 1966 թ. հուլիսի 26-ի «Խուլիգանության համար պատասխանատվությունը ուժեղացնելու մասին» հրամանագիրը):

Սոցիալական այդ կարևոր միջոցառումների իրականացման ասպարեզում զգալի գործ է կատարված: Այժմ, օրինակ, մեր հանրապետությունում ժողովրդական դրուժինաները մեծ ուժ են կազմում: Աշխատավորական կոլեկտիվների հարյուրավոր լավագույն ներկայացուցիչներ դատարանում հանդես են գալիս որպես հասարակական մեղադրող կամ հասարակական պաշտպան: Չկա ձեռնարկություն, հիմնարկություն, որտեղ չգործեն իրավախախտումները կանխող ժողովրդական վերահսկիչների խմբեր: Հայտնի է, որ շատ հանցագործություններ կանխվում կամ բացահայտվում են հասարակական կազմակերպությունների և քաղաքացիների ակտիվ աջակցությամբ:

Հանցագործությունների կանխման գործում հասարակայնության լայն խավերի ակտիվ մասնակցության վերաբերյալ լենինյան սկզբունքն իր արտացոլումն է գտել նաև նոր Սահմանադրության նախագծում: 65-րդ հոդվածը պարտավորեցնում է ՍՍՀՄ բոլոր քաղաքացիներին «... անհաշտ լինել հակահասարակական արարքների նկատմամբ, ըստ ամենայնի նպաստել հասարակական կարգի պահպանմանը», իսկ 61-րդ հոդվածը պարտավորեցնում է «... պահպանել և ամրապնդել սոցիալիստական սեփականությունը, պայքարել պետական և հասարակական ունեցվածքի հափշտակումների և շռայլումների դեմ»:

Մեր երկրում հանցագործությունները կանխելու առանձնահատկություններից է նաև հարկադրանքի զուգակցումը համոզման, քրեական պատժի զուգակցումը հասարակական ներգործության միջոցների հետ: Այստեղ իր մարմնավորումն ու պրակտիկ իրագործումն է գտել լենինյան այն միտքը, որ անհրաժեշտ է անողոքաբար ճնշել շահագործող դասակարգերի, ապադասակարգայնացած տարրերի մնացորդներին, հափշտակիչներին, կաշառակերներին, խուլիգաններին, սպեկուլյանտներին, ժուլիկներին և հասարակական ներգործության միջոցներ կիրառել այն անձանց նկատմամբ, որոնք պատահաբար, չկանխամտածված ձևով կատարել են ոչ ծանր հանցագործություններ:

Խոսելով հեղափոխական հաստատուն կարգ և օրինականություն, գիտակցական կարգապահություն և ինքնակարգապահություն ստեղծելու անհրաժեշտության մասին, Վ. Ի. Լենինը գրել է. «Մենք ծիծաղելի ուտոպիստներ կլինեինք, եթե երևակայեինք, որ նման մի խնդիր իրագործելի է... առանց հարկադրանքի: Առանց հարկադրանքի այդպիսի խնդիրը միանգամայն անիրագործելի է: Մեզ հարկավոր է պետություն, մեզ հարկավոր է հարկադրանք» (Երկեր, հ. 27, էջ 257—258):

Պատժիչ քաղաքականության էությունը Վ. Ի. Լենինը համարում էր ոչ թե պատժի խստությունը, այլ դրա անխուսափելիությունը. «...պատժի նախազգուշական նշանակությունը պայմանավորվում է ամենևին ոչ թե նրա դաժանությամբ, այլ նրա անկասելիությամբ: Կարևորն այն չէ, որ հանցագործության համար ծանր պատիժ նշանակվի, այլ այն. որ հանցագործության ՈՉ ՄԻ դեպք առանց մերկացվելու չանցնի» (ԵԼԺ, հ. 4, էջ 520):

Լենինյան այս գաղափարները սովետական արդարադատության հիմքն են: «Կոմունիզմ կառուցող հասարակության մեջ,— ասված է ՍՄԿԿ ծրագրում,— տեղ չպետք է ունենան իրավախախտումներն ու հանցագործությունները: Բայց քանի դեռ կան հանցագործությունների դրսևորումներ, անհրաժեշտ է խիստ պատժամիջոցներ կիրառել այն անձանց նկատմամբ, ովքեր կատարում են հասարակության համար վտանգավոր հանցանքներ, խախտում են սոցիալիստական համակեցության կանոնները, չեն ցանկանում մասնակցել ազնիվ աշխատանքային կյանքին» (*ՍՄԿԿ XXII համագումարի նյութերը*, էջ 528):

Իհարկե, չպետք է նսեմացնել քրեական պատժի նշանակությունը հանցագործությունների կանխման գործում: Սակայն սխալ կլիներ նաև դրա գերագնահատումը: Անհրաժեշտ է զուգորդել քրեական պատժի, ինչպես և սոցիալ-տնտեսական, կուլտուր-դաստիարակչական ներգործության միջոցները, առանց որոնց անհնար է կանխել հանցագործությունները: ՌԿ(բ)Կ Համառուսաստանյան XII կոնֆերանսի որոշումներում ասված է. «...կուսակցական կազմակերպությունները չպետք է գերագնահատեն ռեպրեսիաների դերը և պետք է հաստատ հիշեն, որ միայն մյուս բոլոր... միջոցառումների հետ զուգակցված ռեպրեսիաները կհասնեն նպատակին» (*ՍՄԿԿ-ն... բանաձևերում և որոշումներում*, մ. I, էջ 863):

Սովետական արդարադատության հումանիստական էության վկայությունն է քրեական օրենսգրքերում ընդունված ազատազրկման պատժաչափերի կրճատումը: Մեղմացվեց քրեական պատասխանատվությունը ոչ վտանգավոր հանցանքների համար: Դրա հետ մեկտեղ պետությունը սահմանել է խիստ պատժամիջոցներ ծանր հանցանքներ գործած անձանց նկատմամբ: Բացի այդ, օրենքով նախատեսված է՝ քրեական պատժից ազատելու, հասարակական ներգործության միջոցներ կիրառել այն անձանց նկատմամբ, ովքեր առաջին անգամ կատարել են աննշան հանցանք: Ավելի սահմանափակվեց անչափահաս հանցագործների նկատմամբ քրեական պատիժ կիրառելու ոլորտը և, ընդհակառակը, ընդլայնվեց դրանց նկատմամբ դաստիարակչական բնույթի միջոցներ կիրառելու հնարավորությունը: Այսպիսով, քրեական պատժամիջոցների ռացիոնալ կիրառումը հաշվի է առնում կատարված հանցանքի բնույթն ու ծանրությունը, պատասխանատվությունը ծանրացնող կամ մեղմացնող հանգամանքները, մեղադրյալի անձը և այլն:

Այս տարվա փետրվարի 8-ին և 15-ին ՍՍՀՄ Գերագույն սովետի նախագահությունն ընդունեց մի շարք հրամանագրեր և որոշումներ, որոնց նպատակն է է՛լ ավելի մարդասիրական դարձնել պատժի քաղաքականությունն անչափահասների ու այն չափահաս անձանց նկատմամբ, ովքեր առաջին անգամ կատարել են ոչ ծանր հանցագործություն, ինչպես նաև ընդլայնել հակահասարակական արարքների կանխման ոլորտը վարչական մարմինների գործունեության մեջ:

Կապիտալիստական հասարակարգում հանցագործությունների դեմ մղվող պայքարում հիմնական շեշտը դրվում է պատժի դաժանության վրա՝ գմահ բանտարկություն, տասնյակ տարիների ազատազրկում, տաժանակրություն և այլն: Բուրժուական օրենսդրությունը խոշոր գրավ մուծելու պայմանով ունևոր դասակարգի՝ շատ ծանր հանցանք գործած ներկայացուցիչներին անսահմանափակ հնարավորություններ է տալիս իրենցից հեռացնելու թեմիսի պատժիչ սրի հարվածը:

ՍՈՎԵՏԱԿԱՆ ՊԵՏՈՒԹՅՈՒՆԸ հետաքննության մարմիններին, քննիչին, դատախազին և դատարանին օրենքով պարտավորեցրել է ո՛չ միայն բացահայտել, քննել հանցագործությունները և քրեական պատասխանատվության կանչել մեղավորներին, այլև, որ շատ կարևոր է, պարզել յուրաքանչյուր առանձին հանցանքի կատարման պատճառներն ու պայմանները և միջոցներ ձեռնարկել դրանք վերացնելու համար: Օրինակ, Հայկական ՍՍՀ դատախազության մարմիններում 1975 թվականին քննված քրեական գործերի 73 տոկոսի կապակցությամբ ձեռնարկություններ, հիմնարկություններ և կազմակերպություններ են ուղարկվել հատուկ միջնորդագրեր, որոնցում վերլուծված են հանցանքի կատարմանը նպաստող պատճառներն ու պայմանները և առաջարկներ են արվել դրանք վերացնելու և կանխելու համար: Բացի այդ, դատախազության աշխատողները բազմաթիվ ձեռնարկություններում, կոլտնտեսություններում ու հիմնարկություններում հանդես են եկել զեկուցումներով օրինականության վիճակի, հանցանքների կատարմանը նպաստող պատճառների ու պայմանների, դրանք վերացնելու եղանակների ու միջոցների մասին: Նույն այդ հարցերով նրանք հաճախ ելույթներ են ունեցել մամուլում, ռադիոյով, հեռուստատեսությամբ:

Սովետական պետության իրավապահպանական մարմինների նման գործունեությունը, անկասկած, տվել է կանխարգելման զգալի արդյունք: Բավական է ասել, որ դատաքննչական մարմինների նախաձեռնությամբ հանրապետության ձեռնարկությունները, հիմնարկությունները և կազմակերպությունները սիստեմատիկաբար քննության են առնում հանցանքի կատարման պատճառներն ու պայմանները վերացնելու հետ կապված հարցեր և ձեռնարկում անհրաժեշտ միջոցներ: Նման ձեռնարկումները, անշուշտ, արդյունավետ են: Չնայած ձեռք բերված, եղած հնարավորությունները դեռևս լրիվ չեն օգտագործվում:

Համառոտակի քննարկենք այդ բացասական երևույթի մի քանի պատճառները: Ինչպես նշվեց ՀԿԿ Կենտկոմի հունվարյան (1975 թ.) պլենումում, հարկ է հետևողական անդուլ պայքար մղել մեր կյանքում տեղ գտած բացասական երևույթների դեմ, անտարբեր չլինել այն սխալների ու թերությունների նկատմամբ, որոնք խանգարում և վնասում են հասարակության զարգացմանը, այլ մշտապես ու համառորեն բացահայտել դրանց ծնող պատճառներն ու պայմանները, մշակել և իրականացնել անհրաժեշտ միջոցառումներ դրանք լրիվ վերացնելու համար: «Մեր հասարակությունը,— ասաց Լ. Ի. Բրեժնևը կուսակցության XXV համագումարին տված հաշվետու զեկուցման մեջ,— որքան առաջ է գնում իր զարգացման մեջ, այնքան անհանդուրժելի են դառնում բարոյականության սոցիալիստական նորմերից տակավին հանդիպող շեղումները: Ընչաքաղցությունը, մասնավոր սեփականատիրական միտումները, խուլիգանությունը, բյուրոկրատիզմը և մարդու նկատմամբ անտարբերությունը ներհակ են մեր հասարակության բուն էությանը: Նման երևույթների դեմ մղվող պայքարում անհրաժեշտ է լիովին օգտագործել թե՛ աշխատանքային կոլեկտիվի կարծիքը, թե՛ մամուլի քննադատական խոսքը, թե՛ համոզման մեթոդները և թե օրենքի ուժը՝ այն

բոլոր միջոցները, որ կան մեր տրամադրության տակ» (*ՍՄԿԿ XXV համագումարի նյութերը*, էջ 116—117):

Հասարակական ու պետական կարևոր նշանակություն ունի գործող օրենքների ճիշտ կիրառումը: Սակայն փաստերը վկայում են, որ այն ամենուր չէ, որ բավարար է իրագործվում: Օրինակ, ութամյա պարտադիր կրթության մասին օրենքի ոչ հետևողական կիրառման պատճառով շատ երեխաներ չեն ստացել պարտադիր մինիմում կրթություն: Միշտ չէ, որ անհրաժեշտ միջոցներ են ձեռնարկվել գիտատեխնիկական առաջընթացի բացասական հետևանքները չեզոքացնելու կամ վերացնելու, բնությունը պահպանելու, աշխատանքի անվտանգությունն ապահովելու համար և այլն:

Ասենք և այն, որ մեզ մոտ դեռևս կան մարդիկ, որոնք չարամտորեն խուսափում են հանրօգուտ աշխատանքից, վարում են պարազիտային կյանք: Իսկ չէ՞ որ վաղուց է ապացուցված, որ հենց այդպիսի մարդիկ են հաճախ դառնում հանցագործներ: Նման ապրելակերպը և վարքագիծը այնքան ակնբախ են, որ աննկատ չեն մընում ո՛չ միայն նրանց մերձավորագույն շրջապատի, այլև տեղական սովետների ու նրանց մարմինների համար: Նման փաստերը, որքան էլ սակավաթիվ, բարոյական մեծ վնաս են հասցընում հասարակությանը, դառնում սոցիալական չարիք: Առանձին տեղերում դեռևս թույլ է պահանջկոտությունն այն մարդկանց նկատմամբ, որոնք, հասարակությանը ոչինչ չտալով, աշխատում են շատ կորզել նրանից:

Օրավուր աճում է, օրինակ, անձնական ավտոմեքենաներ ունեցողների թիվը: Այդ փաստն ինքնին դրական երևույթ է, աշխատավորների կենսապայմանների անշեղ բարելավման վկայություններից մեկը: Սակայն գաղտնիք չէ, որ իրական վերահսկողության բացակայության հետևանքով որոշ մարդկանց հաջողվում է անաշխատ եկամուտներով ձեռք բերել ավտոմեքենաներ: Առանձին ղեկավարների թողտվությամբ պետք է բացատրել այն հանգամանքը, որ բանասերի, պատմաբանի, անասնաբույժի, ինժեների և այլ մասնագիտություն ունեցող երիտասարդներ միտումնավոր խցկվում են առևտրի ցանց, կամ ընդունվում այլ «եկամտաբեր» աշխատանքի: Մասնագիտական նման «կերպարանափոխումը», անշուշտ, հղի է բացասական հետևանքներով:

Կուսակցությունը մեծ կարևորություն է տալիս աշխատավորների առաջարկություններին և քննադատական դիտողություններին ժամանակին արձագանքելուն:

Այդ բանն իր արտացոլումն է գտել նաև ՍՍՀՄ նոր Սահմանադրության նախագծում: 49-րդ հոդվածով յուրաքանչյուր քաղաքացու իրավունք է վերապահված՝ «պետական մարմիններին և հասարակական կազմակերպություններին առաջարկություններ ներկայացնելու նրանց գործունեության բարելավման վերաբերյալ, քննադատելու աշխատանքի թերությունները», իսկ «պաշտոնատար անձինք պարտավոր են օրենքով սահմանված ժամկետում քննության առնել քաղաքացիների առաջարկություններն ու դիմումները, պատասխանել դրանց և ձեռնարկել անհրաժեշտ միջոցներ»:

ՀԿԿ Կենտրոնական կոմիտեն կոնկրետ միջոցներ է ձեռնարկել հանրապետությունում ստեղծելու անհրաժեշտ պայմաններ, որպեսզի հաշվի առնվեն բոլոր հիմնավորված քննադատական դիտողությունները: Անհրաժեշտ է հետևողականորեն իրագործել կուսակցության XXV համագումարի պահանջը՝ կատարելագործելու արդարադատության մարմինների գործունեությունը, որոնք կանգնած են սովետական օրինականության, հասարակության շահերի, սովետական քաղաքացիների իրավունքների պաշտպանության դիրքերում, միավորել մեր հասարակայնության ջանքերը՝ կանխելու հանցագործությունները ու այլ իրավախախտումները, լրիվ չափով օգտագործել սոցիալիստական հասարակարգի բոլոր առավելությունները:

---

# ԳՐԱԽՈՍՈՒԹՅՈՒՆ ԵՎ ՔՆՆԱԴԱՏՈՒԹՅՈՒՆ

## *ՍՊԱՐՏԱԿՅԱՆՆԵՐԻ ՀԵՐՈՍԱՊԱՏՈՒՄԸ*

ՄԵՐ ՍՏԵՂԾԱԳՈՐԾԱԿԱՆ աշխատողները,— նշեց ընկեր Դեմիրճյանը ՀԿԿ ԿԿ հոկտեմբերյան պլենումում,— իրենց ոգեշունչ ջանքերն են գործադրում ստեղծելու սոցիալիստական ռեալիզմի երկեր, որոնցում գեղարվեստական խոր արտացոլում է գտնում մեր սոցիալիստական իրականությունը..., «դասակարգային դիրքերից վերստեղծվում են մեր ժողովրդի պատմական անցյալը, նրա պայքարն իր ազգային և սոցիալական ազատագրության համար, որոնցում ճշմարտացի, կրքոտ ու օբյեկտիվությամբ արծարծվում են բարոյական թեմաներ»: Այդպիսի գործերը, ասաց ընկեր Դեմիրճյանը, ծանրակշիռ ավանդ են մուծում աշխատավորների կոմունիստական դաստիարակության գործում:

Նման գրական ստեղծագործությունների շարքին կարելի է դասել Ռ. Աթայանի Զարթոնք, Սպարտակ և Մրրկի թևերով վեպերից բաղկացած եռերգությունը, ուր հեղինակը պատմում է հայ երիտասարդ հեղափոխականների այն սերնդի մասին, որը կյանք մտավ մեր խստաշունչ դարի սկզբին, եղավ աշխարհացունց իրադարձությունների վկան ու մասնակիցը:

Ժամանակը ֆիզիկական, բարոյական ու հոգեկան ուժերի վիթխարի լարում պահանջեց այդ սերնդի մարդկանցից, որոնց մանկությունն ու պատանեկությունն անցան պատերազմի ու տեղահանության սարսափների մեջ, իսկ հասունությունն սկզբնավորվեց մարդկային հասարակության պատմության մեծ բեկման շրջանում, նոր կյանքի համար մղվող պայքարի կրակներում:

Պատմական իրողությունների յուրովի ամփոփման, հեղինակային մտորումների, սթափ մեկնաբանությունների միջոցով Ռաֆայել Աթայանը կարողացել է Սպարտակ եռերգության մեջ արտացոլել մեր ժողովրդի կյանքում տեղի ունեցած արմատական հեղաբեկումները և դինամիկ գործողություններում ներկայացնել նվիրական նպատակին զինվորագրված անձնուրաց մարդկանց լուսավոր կերպարները:

Վեպի գլխավոր հերոսների մեծ մասը իրական մարդկանց գեղարվեստորեն ընդհանրացրած կենդանի դիմանկարներ են: Հերոսների կյանքն ու գործունեությունը, հեղինակի մտահղացումների ու եզրահանգումների արդյունքը լինելով, խարսխված են պատմության, պատմական անձնավորությունների կյանքի բարեխիղճ, քննական ուսումնասիրության վրա:

Պատմավեպի ընդհանուր ֆոնը Արևելյան Հայաստանի դարասկզբի հասարակական-քաղաքական կյանքի վերլուծական նկարագիրն է՝ միջազգային ու համահայկական առնչություններով:

Հայ ժողովրդի դժվարին կյանքը գրքում պատկերված է ցայտուն շտրիխներով, լիրիկական վրձնահարումներով: Հեղինակը քաջ ծանոթ է հայրենի բնօրրանին, գիտե իր ժողովրդի ավանդույթները, սովորույթները երկրում ու երկրից դուրս, տարբեր վայրերում ծնված ու զորացած հայ մարդու բնավորությունն ու հոգեբանությունը:

Հավատարիմ պատմականության սկզբունքին՝ Ռաֆայել Աթայանը ամփոփ նկարագրում է այն հիմնական փոփոխությունները, որ Արևելյան Հայաստանն ապրեց պարսկական լծից ազատագրվելուց և Ռուսաստանին միանալուց հետո: Մեր ժողովրդի գոյատևման, սոցիալ-քաղաքական ու կուլտուրական առաջադիմության նախապայմանը հանդիսացավ այդ, որի շնորհիվ միայն Հայաստանը ներառվեց համառուսաստանյան քաղաքական զարգացման ոլորտը:

Կարդալով երևանյան նկարագրությունները՝ երիտասարդ ընթերցողը լրիվ պատկերացում է կազմում այդ տարիների հնամենի քաղաքի մասին, այդ օրերն ապրած տարեցները վերհիշում են այն, որի սոսկ համեմատությունը վերածընված Հայաստանի այսօրվա ծաղկուն մայրաքաղաքի հետ, ցույց է տալիս, թե ինչ ակնբախ փոփոխություններ են կատարվել մեր երկրում, ի՜նչ են տվել սոցիալիստական կարգերը բազմաչարչար մեր ժողովրդին:

Ահա օրինակ, XX դարի առաջին տարիների Երևանի նկարագրությունը: Դարավոր փոշու մեջ կորած, հողաշեն այդ «նահանգական քաղաքում նմուշի համար գոնե մեկ հատիկ երեք-

հարկանի շինություն չկար..., կյանքն այստեղ ընթանում էր հանգիստ, անայլայլ, վաղուց տըրորված հունով,— պատմում է հեղինակը,— բայց և այնպես երևանցին էլ զգում էր, որ իր ծննդավայրը ևս վեր է ելնում մարդկային առաջադիմության երկար ու ձիգ սանդուղքով... Հնաշխարհիկ այս ոստանը ջանում էր ծնունդ տալ ու ջերմացնել իր ծոցում մեքենայական արդյունագործությունը»:

Դարերով անփոփոխ Երևանն է այս, ուր նոր մուտք են գործում կապիտալիստական հարաբերությունները: Այդ Երևանի բնակչության տարբեր խավերի ներկայացուցիչներն են՝ գինեգործ Կարապետ Աֆրիկովը, կոնյակի արդյունաբերող Վասիլի Շուստովը, «բուկինիստ» բախկալ Սաքոն, էջմիածնեցի բաղատեր Սեդրակը, կաշեգործարանի տեր Թարխանովը...

Հինգ տարի է անցել նոր հարյուրամյակից: Երևանի Թարխանովի կաշեգործարանի բանվորների առջև ելույթ է ունենում մի խանդավառ երիտասարդ. պատմում է Ռուսաստանի բանվորների պայքարի մասին, կաշեգործներին կոչ է անում հետևել նրանց օրինակին, համախմբված պաշտպանել իրենց իրավունքները...

— Մեր Ստեփանը,— նրա մասին ջերմությամբ ասում են բանվորները:

Այո՛, իր փոթորկուն հեղափոխական գործունեությունն էր սկսել Ստեփան Շահումյանը:

Լենինյան դպրոցի հեղափոխական մարտիկները կազմակերպում, համախմբում էին իրենց ուժերը, ծավալում գործունեություն աշխատավորական զանգվածների շրջանում:

Խլրտումներ են տեղի ունենում Երևանի տղայոց գիմնազիայում: Հետադիմության, աճող սերնդի ուսուցման գործում մարդկային արժանապատվությունը ոտնահարող մեթոդների դեմ ըմբոստանում են առաջավոր աշակերտները:

Սպարտակի հեղինակը նկարագրում է այդ ժամանակաշրջանի դպրոցը, սովորող երիտասարդության առաջին քայլերը՝ դպրոցը հնի կապանքներից ազատագրելու նպատակով: Հենց այդ միջավայրում են հասունանում պատմավեպի հերոսներից ոմանք. նրանք ճշմարտություն են որոնում երբեմն սայթաքելով, սխալվելով, բայց շարունակ առաջ ընթանալով:

Դարավոր նիրհից արթնանալ է սկսում արևելյան այս քաղաքը, խախտվում է նրա անշարժությունը, դժվարին երկունքով է ապրում հին Երևանը. սպասվում է նոր քաղաքի ծնունդը՝ իր նոր մարդկանցով. ահա նրանք, այդ նոր մարդիկ՝ Ղուկաս Ղուկասյանը, Աղասի Խանջյանը, Գայանյան դպրոցի շրջանավարտ Աղավնի Բուդումյանը, Ղուկասի սիրած աղջիկը՝ Նունիկը, Արմենակ Բուդաղյանը, Ալեքսանդր Իսահակյանը, Հմայակ Վարդանյանը, բաղատեր Սեդրակի աղջիկը՝ Սեդան, բանաստեղծ Եղիշե Չարենցը...

Զրկանքներով լի է նրանց՝ ապագա «Սպարտակ» երիտասարդ ինտերնացիոնալիստների միության անդամների պատանեկությունը: Մեկը չարքաշ արհեստավորի զավակ է, մյուսը՝ ժողովրդական ուսուցչի, մի ուրիշն իր մանկությունն է թողել հեռավոր Նեղոսի օտար ափերին, մեկն էլ այստեղ, հայրենի լեռներում մեծացած երազկոտ պատանի է:

Արհավիրքներով լի կյանքը կոփում է նրանց բնավորությունը, ձևավորում նոր հոգեբանություն, օժտում դժվարությունները հաղթահարելու, լուսավոր ապագայի համար աննահանջ մարտնչելու կամքով:

Ահա Ղուկաս Ղուկասյանը՝ պատմական մի անձնավորություն, որ հերոսի մահով ընկավ Հայաստանում սովետական իշխանության հաստատման համար մղված մարտերում: Աթայանը կարողացել է նրա ակտիվ գործունեության նկարագրությամբ բացահայտել իր հերոսի մարդկային վեհ հատկությունները, ցույց տալ հեղափոխական երիտասարդի գաղափարական առնականացման պրոցեսը:

Ղուկասը ջերմորեն սիրում է իր ընկերներին, ազնիվ է, սրտացավ, միշտ օգնության հասնելու պատրաստ: Շրջահայաց ու հետաքրքրասեր է, ամեն քայլափոխում աշխատում է մի բան ավելացնել իր գիտցածին, խորամուխ լինել երևույթների մեջ, ըմբռնել դրանց զարգացման օրինաչափությունները. ռոմանտիկ է, պատրաստ կյանքն իսկ զոհաբերելու ժողովրդի ազատագրության գործին: Մի նվիրական երազանք է փայփայում նա: Ուզում է դառնալ տիեզերախույզ, մեկնել աստղերի գաղտնիքը: Բայց իրադարձությունների հորձանուտում աստիճանաբար համոզվում է, որ նախ պետք է մարտնչել նոր կյանքի ստեղծման համար...

Վրա հասավ առաջին համաշխարհային պատերազմը. հայ ժողովուրդն ապրեց իր պատմության ամենածանր ողբերգությունը: Արևմտյան Հայաստանի բնակչությունը տեղահան արվեց: Արյունալի կոտորածները մեծաթիվ զոհեր խլեցին հայ ժողովրդից: Արևելյան Հայաստանի քաղաքներն ու գյուղերը լի են գաղթականներով: Սով է, համաճարակ: Ղուկասի ընկերներից շատերը հենց այդ հալածական մարդկանց զավակներն են:

...Մի փոքրիկ դասարանում խմբված են նրանք: Ուսուցիչ Մախմուրյանը դասարանին է ներկայացնում Վահան Տերյանին: Բանաստեղծը Հայաստան էր եկել ռուս նշանավոր գիտնական և գրող, հայ ժողովրդի անկեղծ բարեկամ Վալերի Բրյուսովի հետ: Տերյանը լարված ուշադրությամբ լսում է աշակերտներին: Նրանց հուզում են օրվա հրատապ հարցերը, նրանց մտահոգության առարկան ևս տանջահար ժողովրդի փրկությունն է:



Խոսում է բարձրահասակ, թիկնեղ մի պատանի՝ Արմենակ Բուդաղյանը: Նա գիտե, թե ո՛վ է գերմանացի հեղափոխական Կարլ Լիբկնեխտը, և թե ինչո՛ւ այս ավերիչ պատերազմը հրահրողների դեմ ուղղված իր հոդվածները նա ստորագրում է հին Հռոմի ստրուկների առաջնորդ Սպարտակի անունով:

Բուդաղյանը պրպտող միտք ունի, օժտված է գրական ընդունակություններով, կարողանում է զանազանել մարդկանց, խիզախ է, անխնա ու անզիջող հակառակորդի նկատմամբ: Բայց և ջերմորեն սիրել գիտե, հոգեկան հարստությունն այնպես ներդաշնակ է նրա բարության հետ: Լիովին պատճառաբանված ու համոզիչ է Արմենակի անձնվիրությունը՝ անարդարության դեմ մղվող պայքարում:

Եթե ճակատագիրը Բուդաղյանին հեռավոր Նեղոսի ափերից է այստեղ բերել, ապա վեպի մյուս գլխավոր հերոսի՝ Աղասի Խանջյանի մանկությունն անցել է Վասպուրականում: Մանկությունից միայն հուշ է մնացել: «...Թողին ու եկան, թողին ամեն ինչ, նվիրական Բզնունյաց ծովը, Աղթամարա կղզին, Սիփան սարը և այն հսկայաժայռ ամրոցը, Արայի ու Շամիրամի ավանդավեպով օծված»:

Աղասին հոգեպես ամուր, խանդավառ բնավորությամբ մի պատանի է, որին նույնպես իր խոլական ընթացքի մեջ է առել գաղափարների այն հեղեղը, հույզերի այն խառնարանը, որ կոչվում է հեղափոխություն: Ժողովրդական ուսուցչի զավակը՝ ուշիմ, հետաքրքրասեր, մարդկանց ցավերով ապրող տղան, երևակայությամբ կառուցում է ընդհանուր բարօրության և երջանկության իր լուսեղեն կարգը:

ԵՌԱԳՐՈՒԹՅԱՆ ԱՌԱՋԻՆ ԳՐՔՈՒՄ (որն ընդգրկում է 1915—1918 թվականը) ընթերցողը ծանոթանում է հիշյալ գլխավոր հերոսների և նրանց ընկերների աշակերտական տարիներին, այն շրջանին, երբ արթնանում էր նրանց գիտակցությունը, կոփվում բնավորությունը, և նրանք հանգում են իրենց կազմակերպությունը՝ Երիտասարդ ինտերնացիոնալիստների միությունն ստեղծելու գաղափարին: Ըմբոստ ելույթներ կազմակերպող այդ միության մարտական մկրտությունն էր գիմնազիայի աշակերտության զինված դասադուլը: Վճռական պահին աշակերտներին պաշտպանում է տեղական կայազորի զորագունդը՝ հեղափոխական քայլերգը շրթներին:

«Հրաժարիմք, ընկերնե՛ր, հին օրենքներից,
Թոթափենք փոշին մեր ոտքերից»:

...Երևան է հասնում Հոկտեմբերյան հեղափոխության լուրը, ալեկոծվում է ողջ քաղաքը, «բերնե-բերան անցնում է այն մարդու անունը, որ բզկտված ու խոշտանգված աշխարհում առաջինը պետական գործիչներից՝ խաղաղություն է հռչակել տառապյալ մարդկության համար:

Լենի՜ն, Լենի՜ն, Լենի՜ն...

Բայց դեռ շատ արյուն պիտի թափվեր, շատերը պիտի զոհվեին խաղաղությունը նվաճելու համար:

Օսմանյան Թուրքիայի զորքերը շարունակում էին առաջանալ դեպի Անդրկովկաս, հարձակվում էին Հայաստանի վրա: Եվ երբ այդ ահավոր սպառնալիքը կախվում է Արարատյան դաշտի վրա, հայ ժողովուրդը ուժերի գերագույն լարումով պատրաստվում է պարտության մատնելու նվաճողներին:

Զարթոնք պատմավեպում հակիրճ պատկերված է հայ ժողովրդի այդ հերոսամարտը:

Ղուկաս Ղուկասյանը կռվող ջոկատներից մեկի հրամանատարն է: Տասնչնը տարին չբոլորած երիտասարդը քաջության օրինակներ է ցույց տալիս: Նա երկու անգամ վիրավորվում է մարտում, բայց չի թողնում ռազմադաշտը:

Հաղթում է ժողովուրդը: Ջերմաշունչ ռոմանտիկան կրկին համակում է մարդու ողջ էությունը: Բնությունն էլ, ասես, ապրում է այդ բերկրանքը: Ղուկասը՝ աշխետ ձին նստած, դիտում է հայրենի բնաշխարհը. «...բարձր քարապսակից փրփրադեզ քանդվում է հուժկու ջրվեժը, ահռելի թափով դուրս թռչում կապույտ երկնքի ծոցը և անթիվ-անհամար կայծակների տրոհվելով, զահավիժում անդունդը, դղրդյունով կորչում խորխորատի մեջ... իսկ վարը, կիրճի հատակին, գալարվում է գեղածիծաղ վտակը: Զորակի լանջերը կորել են կանաչի ու ծաղկունքի մեջ: Ջրվեժի զովության հետ խառնված դրախտային բուրմունքը խենթացնում է մարդուն»:

Հայրենի բնության գովերգության այս նմուշը գրքում եզակի չէ: Ռաֆայել Աթայանը կարողանում է կապակցություններ գտնել մարդու հոգեկանի և բնության գեղեցկությունների միջև:

Ժողովրդի այդ հաղթանակով կասեցվեց երկրի կործանումը, բայց դեռ նոր մարտեր պիտի լինեին, մաքառում Հայաստանը խավարից, ավերածությունից ու կամայականություններից ազատելու համար:

...Ցարի օրոք Թիֆլիսի քաղաքագլուխ, կադետ Խատիսովը Հայաստանի մինիստր-նախագահն է: Փորձված գայլ է նա՝ ուրույն հոգեբանությամբ, նպատակներով: Ուզում է տիրել ու տնօրինել ինչպես առաջ, մնալ այս աշխարհի զորեղներից մեկը, թո՛ղ որ այս փոքր, ավերակված, քայքայված երկրում: Թողել է «պերճ» Թիֆլիսը, եկել այս փոշեծածկ քաղաքը, նույնիսկ «շնորհ է արել» մտնել կառավարող կուսակցության շարքերը: Օգնականներ որքան ուզեք— Տյուրոսյան, Համալբաշյան, նախարար-

ներ, «ազգային գործիչներ», խմբապետներ...

Ահա այդ իրավակարգի ավարտուն կերպարներից մեկը՝ կարտոլ-Մակիչը: Սրան ընթերցողը հանդիպում է դեռ գիմնազիայում սովորելիս: Բնության միակ «պարգևին»՝ իր բիրտ ֆիզիկական ուժին ապավինած ապաշնորհի մի պատանի, որը հասնում է մինչև բանտապահի դիրքը: Նյութականից բացի ոչինչ չի հետաքրքրում նրան, թշնամի է մտքի ամեն խոյանքի, ինչ-որ ներքին չարություն, նախանձ է տածում իր խելոք, մտածող ընկերների հանդեպ, որից և նրա հոգում կուտակվում է մաղձը: Եվ, եթե նրա դասընկեր Դավլիկը մտնում է ազատամիտ, նոր կյանքի համար մարտնչող իր դասընկերներին, մտնում է, որովհետև վեհերոտ է, փոքրոգի, կարտոլ-Մակիչը դառնում է վարչակարգի բռունցքը:

Հաջողված է Հրանտ Սանթուրյանի դիմանկարը: Սա ռեժիմի քննադատ է, չի վախենում նույնիսկ Երևանի պարետի երեսին շպրտել. «Դուն լռի՛ր, ողորմելի՜ լարախաղաց: Մեկ ազնիվ բառ չլսեցինք քո շուրթերից... թեթևաքայլ գբռաշրջիկ, հայրենախույս դերասան, դաշույնը պարի մեջ բանեցրիր իբրև չերքեզ: Ամեն վայրկյան գիտես՝ որ ծովերից կփչե քամին... կերթաս օտար երկինքների՞ ապավինելու...»:

Հրանտ Սանթուրյանի՝ երիտասարդ անարխիստի բազում տիրադներից մեկն է այս այն պահին, երբ պատմությունը և ժողովուրդը կայացրել էին իրենց դատավճիռը դաշնակցական ռեժիմի վերաբերյալ:

Մեր գրականության մեջ Սանթուրյանն ունի իր նախատիպը: Մի այլափոխված, սնամեջ, ճոռոմաբան հոսոս է նա և երբ խոսում է, աչքիդ առջև ներկայանում են Հակոբ Պարոնյանի Մեծապատիվ մուրացկանների բանաստեղծը, ապա, և՝ ծապլվարյան դատարկաշրջիկները՝ անարխիստական նոր շաղախով: Սանթուրյանը, թերևս, ավելի բանիմաց է, քննադատորեն է վերաբերվում ամեն ինչի, ոչ մի դավանանք չունի, քարոզում է «հայ հոգու տարերային շարժում» միայն, բայց թե ինչի՞ համար, ի՞նչ նպատակով, ո՞ւր է տանելու այդ շարժումը, ինքն էլ չգիտե:

Ահա մի այլ գործող անձ՝ Քերովբե Սևաչերյանը: Նա ծնունդ է նույն միջավայրի, նույն իրականության, ինչ իր գաղափարական ընկերները: Բարեհամբույր, մարդամոտ երիտասարդ է: Բայց և դեռ անշոշափելի, անընկալելի ապագայի մասին չի մտածում նա. ճիշտ է, երբեմն վրդովվում է անարդարությունների դեմ, բայց պայքարե՞լ: Թող ուրիշներն անեն այդ: Ինքը միայն մի բան է ուզում. «Եթե ոչ մեծ պաշտոն, ապա՝ բարձր դիրք, անվիճարկելի հեղինակություն, հասարակական գործունեություն, որն անձնական հմայք, հեղինակություն ու բարություն բերի իրեն»...

Անկախ Հայաստանի և նրա կառավարիչների բարոյական սնանկությունը լավ է բնութագրում ներքին գործերի նախարարը: «Արծաթասիրությունը տիրող է ամենուրեք: Ռոմանտիկները, գաղափարի ասպետները, որոնք չեն մտահոգվում իրենց ունեցվածքով, անհատներ են մարդկային օվկիանի մեջ, և ոչ ոք էլ վերջիվերջո չի գնահատելու ո՛չ բարոյական մաքրությունը, ո՛չ անձնվեր ծառայությունը հանրային շահերին»:

Այդ նույն նախարարի բերանով ազդարարվում է վարչակարգի ղեկավար սկզբունքը՝ «հորդորը ոչինչ է, առանց խարազանի», քանի որ «վաղուց ի վեր յուր պետականությունը կորցրած այս թշվառ ազգության մեջ անիշխան հակումները գլուխ բարձրացրին խաժադուժ հանգամանքների բովում...»:

Պատմավեպի հեղինակն ստեղծում է գործող անձանց գաղափարական սկզբունքների ու գործողությունների պատճառաբանված միասնություն, որի շնորհիվ և ընթերցողն ամբողջական պատկերացում է կազմում նրանց մասին:

Ահա վարչապետ Խատիսովը մի այլ իրադրության մեջ: Սա ձգտում է հիմնավորել իր կառավարության հայրենադավ վարքագիծը, ահավոր կամայականության ու ավերի թագավորությունից ելքը համարելով օտարին վաճառվելը: «Առանց պրոտեկտորի,— ասում է նա,— փոքր ազգերի գոյությունն իսկ աներևակայելի է մեր դարում»: Ուստի, պետք է հովանավորություն հայցել «մեծ տերություններից»: Եվ վարչապետը սովալլուկ, կիսավեր մայրաքաղաքում կազմակերպում է Հայաստանի գերագույն կոմիսար, ամերիկացի Հասկերի շքեղաշուք ընդունելությունը:

«Գերագույն կոմիսարին» հետևում է «Հայկական նոր պետության զինվորական նահանգապետ» Հարբորտը: Պատմավեպի այդ մասերում հեղինակը ցույց է տվել, թե ինչպիսի՜ ողբերգական վիճակի էր հասցրել դաշնակցական կառավարությունն իր անփառունակ և, բարեբախտաբար, կարճատև իշխանության շրջանում, երբ աշխատավոր մարդը մղկտում էր.

«Ով չի տեսել «ազատ» երկիր, թող գա
Հայաստան,
Մաուզերիստին ազատ մեյդան, իսկ մեզ՝
կախաղան»...

Կատաղի հալածանքների ու տեռորի պայմաններում են աշխատում Հայաստանի կոմունիստներն ու սպարտակյանները:

Կոմունիստների ավագ սերնդի ներկայացուցիչները ղեկավարում, ընթացք են տալիս երիտասարդների գործունեությանը: Նրանցից մեկն է Ստեփան Ալահվերդյանը, որը կարճ ժամանակ անց պետք է դառնար Մայիսյան ապըս-



տամբության ղեկավարներից մեկը: Պատմավեպում նա մշտապես հեղափոխական աշխատանքի առաջագծում է, երիտասարդության բարեկամն ու խորհրդատուն:

Բնորոշ է նրա հանդիպումը մայրաքաղաքի պարետ Շահպարոնյանի հետ, «Չեզոք հողի վրա»: Նրա նպատակը բանտարկված երիտասարդ հեղափոխականներին ազատելն է: Հանդիպում են կյանքի նկատմամբ տրամագծորեն հակառակ հայացք ունեցող մարդիկ: Ալահվերդյանը համոզված հեղափոխական է, վայրագ կարգերի թշնամի: Իսկ Շահպարոնյանը՝ ճանաչված ու շնորհալի արտիստ, ստանձնել է Երևանի պարետի պաշտոնը:

Անկեղծ զրույց է տեղի ունենում:

«—Ինձ շարունակ զբաղեցնում է մի հարց,— ասում է Ալահվերդյանը,— ինչպե՞ս եք դուք համադրում երկու բան. ճշմարիտ արվեստը, որ աներևակայելի է առանց զգայուն հոգու... և ծառայությունը, այո՛, խոնարհ ծառայությունը ամենաբիրտ, վայրագ բռնակալությանը: Ինչպես տեսնում եք, կոմպլիմենտներ անելու համար չէ, որ խնդրեցի այս տեսակցությունը»:

Իսկապես, ինչո՞ւ, ի՞նչ նկատառումներով է դերասանն ստանձնել պարետի պարտականությունը: Չէ՛ որ վեպի ողջ ընթացքից պարզորոշ երևում է, որ կենսասեր, նաև լիրիկական հոգու տեր անձնավորություն է, սրտի ինչ-որ անկյունում խղճմտանք կա թշվառ ժողովրդի հանդեպ, երբեմն նույնիսկ արթնանում է բողոքի զգացումը: Մարդկային իրարամերժ հատկությունների կծիկ է նա: Շահպարոնյանը հպարտ է այն գիտակցությամբ, որ ինքն էլ է պիտանի հասարակությանը, որ իրեն օգնության են կանչում դժվար պահին:

Ալահվերդյանի հարցին հարցով է պատասխանում Շահպարոնյանը.

«Գիտե՞ք ինչ... թվո՞ւմ է ձեզ արդյոք, թե ողբերգական պահերին զավեշտը փրկարար մի բան չէ կյանքում»: Այս միգամած հարցի մեջ հենց դրսևորվում է դերասան-պարետի ողջ հոգեբանությունը: Մայր ժողովրդի ողբերգության պահին էլ իր պաշտոնական դիրքում նա խաղում է այնպես, ինչպես բեմի վրա՝ կյանքը դիտելով որպես թատերգություն: Եվ երբ Ալահվերդյանն ասում է, որ նա պետք է կռահի, թե ինչն է թելադրել իրեն խնդրել այս տեսակցությունը, Շահպարոնյանը փորձում է խայթել նրան:

— Թերևս ձեր հովանավորյալնե՞րը, աշակերտնե՞րը, հետևորդնե՞րը...

— Այո՛,— պատասխանում է Ալահվերդյանը,— նորահաս, ազնվասիրտ պատանիներ, որոնց միակ հանցանքը հայրենասիրությունն է: Եվ դուք բանտումն եք պահում նրանց...:

Սպարտակի հերոսների ներաշխարհի, զգացմունքների ու ապրումների գեղարվեստական պատկերման միջոցով հեղինակը բացահայտում է նրանց գաղափարաբարոյական անսասան հավատը լուսավոր ապագայի նկատմամբ: Պայքարում կոփվելով՝ նրանք ավելի ու ավելի են համոզվում, որ այդ ապագան ինքն իրեն չի գա, պետք է նվաճել հասարակական մութ ուժերի, հասարակության տականքների դեմ անողոք կռվի միջոցով: Բանտն ու հալածանքը չեն կարող ընկճել նրանց:

Լցվել է ժողովրդական զանգվածների համբերության բաժակը: 1920 թվականի Մայիսյան ապըստամբության օրերն են: Ալեքսանդրապոլի կայարանում հաղթական կանգնած է «Վարդան զորավար» զրահագնացքը, իսկ Ղարսա բերդի ամենաբարձր ամրոցի վրա փողփողում է կարմիր դրոշակը:

Նենգավոր դավաճանությամբ, սակայն, ճնշվում է ապստամբությունը: Զոհվում են Ալեքսանդրապոլի, Ղարսի, Նոր Բայազեդի և Արարատյան դաշտի քաղաքացիական կռիվների հերոսները: Ղուկաս Ղուկասյանն իր երիտասարդ ընկերների հետ վերջին մարտը մղեց ընդդեմ թշնամու և հերոսաբար զոհվեց հայրենի Վարանդի աստղաշատ երկնքի տակ:

Շուտով Հայաստանի աշխատավորները նվաճեցին հաղթանակը: Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխության դրոշը ծածանվեց հայկական լեռնաշխարհի վրա:

Մի քանի էպիզոդներում ներկայացված են Անդրկովկասի կոմունիստական շարժման պարագլուխներ Ստեփան Շահումյանը, Միխա Ցխակայան, Սերգո Օրջոնիկիձեն: Նրանց ջերմ, գաղափարական համագործակցությունը, լենինյան գաղափարները որդեգրած բոլշևիկների ինտերնացիոնալիզմի վկայությունն են, ինտերնացիոնալիզմ, որն այդ գաղափարների տարածման ու հաղթանակի հաստատուն երաշխիքն է: Վեպում, հաճախ, իբրև անդրկովկասյան հեղափոխական գործիչների կապող օղակ, հանդես է գալիս Ղուկաս Ղուկասյանը: Այս առումով հետաքրքրական են նրա և Բորիս Ձնելաձեի, ինչպես և հեղափոխական զարգացած, ակտիվ գործիչ Օլյայի փոխհարաբերությունները:

Եռերգության վերջին՝ Մրրկի թևերով գիրքը ներկայացնում է հայ ժողովրդի վերածնության սկզբնական շրջանի դրվագները:

Կոմունիստական կուսակցության Երևանի կոմիտեի քարտուղարի դիրքում է «Սպարտակ»-ի հիմնադիրներից մեկը՝ քսանամյա Ադասի Խանջյանը. նա խտացնում է բոլոր լավագույն հատկություններն իր սերնդի. երիտասարդ հեղափոխականներ, որոնց մտահորիզոնն ընդլայնվել էր պայքարի կրակներում, կամքը կոփվել անասելի դժվարին մաքառումներում, այժմ աշխատավոր զանգվածներին սովորեց-

նում էին նորովի մտածել, նորովի ապրել, օր ու գիշեր տքնաջան գործել, ուսանել ու կառուցել, վերաշինել ավերված երկիրը: Հասարակական այնքա՜ն համապարփակ էր, որ գրեթե կլանում էր նեղ անձնականը:

Անձնվիրություն— ահա այդ սերնդի կյանքի նշանաբանը:

ԿԱՐԴԱԼՈՎ ՌԱՖԱՅԵԼ ԱԹԱՅԱՆԻ այս եռամաս պատմավեպը՝ ընթերցողի առջև հառնում են նախորդների կյանքն ու գործունեությունը, հուզեկան աշխարհը, մի անգամ ևս նա տեսնում է, թե ինչպիսի դժվարություններով, զոհողություններով է հաղթահարվել մեր ժողովրդի դարավոր թշվառությունը: Հեղինակին մեծ մասամբ հաջողվել է այդ ամենը ցույց տալ վեպի հերոսների գործողությունների, ապրումների, փոխհարաբերությունների միջոցով:

Վեպում սպարտակյանների հետ ունեցած մի զրույցի ժամանակ Հայաստանի Հեղկոմի նախագահ Սարգիս Կասյանն ասել է. «Կոմունիստ լինել հիմա՝ նշանակում է ստանձնել հազար ու մի պարտականություն, ծանր պարտականություն և չունենալ ոչ մի արտոնություն, ոչ մի առավելություն ուրիշների հանդեպ...»:

Քաղքենիական հավակնությունները, իրապաշտությունը, անձնական վայելքները մերժող համեստ կենցաղավարություն, ազնվություն, անխնա կռիվ ամեն տեսակ անաշխատ վաստակի դեմ, մարդու նկատմամբ սրտացավ վերաբերմունք՝ Կասյանը և ընկերները այս հատկություններն էին պատվաստում նոր հասարակության քաղաքացուն:

Վեպի դաստիարակչական նշանակությունն ակներև է. տեղ-տեղ էպիկական շնչով գրված մի պատմություն է այն հայ հեղափոխական երիտասարդության գեղեցիկ կյանքի ու սխրանքի մասին, չափազանց ուսանելի՝ մանավանդ այսօրվա կոմերիտականների ու երիտասարդության համար:

Վերջում կցանկանայինք նշել, որ պատմավեպի հեղինակին չի հաջողվել ավելի կենդանի գույներ գտնել մի շարք պատմական անձնավորությունների ավելի լիարյուն ներկայացնելու համար: Ընթերցողը հպանցիկ հանդիպում է Ստ. Շահումյանին, Վ. Տերյանին, Հովհ. Թումանյանին, Ե. Չարենցին, կոմունիստական կուսակցության և Հայաստանի սովետական կառավարության որոշ գործիչների: Կուզենայինք մի դիտողություն ևս անել. վեպի հերոսները մեծաթիվ են և, թերևս, այդ է պատճառը, որ նրանց մի մասն ստվերագիր է:

Այս և այլ մանր թերություններն ամենևին չեն ստվերարկում ընթերցող հասարակության կողմից լայն ընդունելություն գտած սույն պատմավեպի ընդհանուր հաջողությունը:

Ռաֆայել Աթայանի Սպարտակ եռերգությունը 1957—1964 թվականներին լույս տեսած հիշյալ երեք վեպերի նոր, հիմնովին վերամշակված տարբերակն է:

Այժմ, երբ բոլորում է Հոկտեմբերյան ազատարար հեղափոխության և նոր հասարակարգի կառուցման համար սովետական ժողովուրդների պայքարի 60 տարին, գեղարվեստական այլ գործերի հետ մեկտեղ Ռ. Աթայանի Սպարտակ պատմավեպն այսօրվա ընթերցողին մի անգամ ևս հիշեցնում է հերոսական անցյալի մասին:

«Ամեն մի ստեղծագործության հասարակական նշանակալիության չափանիշը,— ՀԿԿ ԿԿ հոկտեմբերյան պլենումում շեշտեց ընկեր Կ. Լ. Դալլաքյանը,— կուսակցությունը համարում է նրա գաղափարական ուղղվածությունը»: Այս առումով, պետք է ասել, որ վերջին շրջանի հաջողված վեպերից մեկն է այն՝ նվիրված Հայաստանում սովետական իշխանության հաստատման համար մղված պայքարին և այդ պայքարում սպարտակյանների վեհ սխրագործություններին:

Հ. Ա. ԱՄԻՐԽԱՆՅԱՆ




Адрес редакции: 375033, Ереван 33, Барекамутян 59 г.

Խմբագրության հասցեն՝ 375033, Երևան—33, Բարեկամության 59 գ.: Հեռախոսներ՝ գլխավոր խմբագրի տեղակալ՝ 27—25—29, պատ. քարտուղար՝ 27—12—92, պրոպագանդայի և էկոնոմիկայի բաժիններ՝ 27—37—80, կուսակցական կյանք և կուլտուրայի բաժիններ՝ 27—19—80, գրական աշխատողներ՝ 27—60—64:

*ՎՖ 04072 Պատվեր 1901 Թղթի չափսը 70×108 1/16: Տիրաժ 14.700: Գինը՝ 20 կոպ.:*
*Տպ. 6 մամուլ, մամուլում 68840 նիշ: Ստորագրված է տպագրության 31/VIII-1977 թ.*
*ՀԿԿ Կենտկոմի հրատարակչության տպարան, Ավ. Իսահակյան փող. № 28:*




# Ձեզ համար, ընթերցողնե՛ր

## ՆՈՐ ԳՐՔԵՐ

Վ. Ի. ԼԵՆԻՆ— Բոլշևիկները պետք է վերցնեն իշխանությունը: Մարքսիզմը և ապստամբությունը: Ճգնաժամը հասունացել է: Կողմնակի անձի խորհուրդները: *«Հայաստան» հրատ., 1977:*

Վ. Ի. ԼԵՆԻՆ— Սովետական իշխանության հերթական խնդիրները: *«Հայաստան» հրատ., 1977:*

Վ. Ի. ԼԵՆԻՆ— Ծառ հեղափոխության տարեդարձի մասին: Ծառ միջազգային դրության մասին: Ի՞նչ է սովետական իշխանությունը: *«Հայաստան» հրատ., 1977:*

Վ. Ի. ԼԵՆԻՆ— Նամակներ հեռվից: *«Հայաստան» հրատ., 1977:*

Հայկական ՍՍՀ քաղաքացիական օրենսգիրք: *«Հայաստան» հրատ., 1977:*

Փ. ԵՆԳՈՅԱՆ— Հայաստանը Հոկտեմբերի ուղիներով: *«Գիտելիք» հրատ., 1977:*

Հ. ՄԱԿԻՆՅԱՆ— Սովետական մարդու համազգային հպարտությունը: *«Գիտելիք» հրատ., 1977:*

Ա. ՍԱԳԱԴՅԱՆ— Մրցություն և բարեկամություն: *«Հայաստան» հրատ., 1977:*

Կ. Մարքսի և Ֆ. Էնգելսի աշխատությունների հայերեն հրատարակությունների մատենագիտություն (1894—1973 թթ.): *Կուսակցության պատմության ինստիտուտ, ՄԼԻ-ի հայկական ֆիլիալ, գրապալատի հրատ., 1977:*

**Ленин. Октябрь семнадцатого.** Документальное повествование. Т. I, М., Политиздат, 1977.

**Ленин—товарищ, человек.** М., Политиздат, 1977.

Е. Тяжельников—**Союз молодых ленинцев.** М., Политиздат, 1977.

Л. Гапоненко—**Решающая сила Великого Октября.** М., Политиздат, 1977.

В. Аникеев—**Документы Великого Октября.** М., Политиздат, 1977.

Л. Баева—**Социальная политика Октябрьской революции** (Октябрь 1917—конец 1918), М., Политиздат, 1977.

**О Феликсе Эдмундовиче Дзержинском.** Воспоминания, статьи, очерки современников. М., Политиздат, 1977.

**Партия в период развитого социалистического общества.** Материалы Всесоюзной научно-теоретической конференции «XXV съезд КПСС и развитие марксистско-ленинской теории». Москва, 4—6 октября 1976 года. М., Политиздат, 1977.

И. Ворожейкин, С. Сенявский—**Рабочий класс—ведущая сила советского общества.** (Вопросы методологии и историографии. М., «Мысль», 1977.

А. Думачев—**Партийные организации и производственные объединения.** М., Политиздат, 1977.

М., Руткевич—**Интеллигенция в развитом социалистическом обществе.** М., Политиздат, 1977.

Н. Кейзеров — **Патология потребительства.** Критика буржуазного образа жизни. М., Политиздат, 1977.

В. Бузуев—**Особенности социалистического соревнования в условиях научно-технической революции.** М. «Экономика», 1977.

ԳԻՆԸ՝ 20 Կ. Индекс 77783

# ԳԻՏՈՒԹՅԱՆ ԵՎ ՏԵԽՆԻԿԱՅԻ ՆՈՐՈՒԹՅՈՒՆՆԵՐ

## ԷԼԵԿՏՐԱԿԱՆ ՀՈՍԱՆՔԸ ԴԱԴԱՐԵՑՆՈՒՄ Է ԱՐՅՈՒՆԱՀՈՍՈՒԹՅՈՒՆԸ

*Մինչև վերջերս խոցի ուժեղ արյունահոսությունից մարդու փրկության միակ հուսալի միջոցը համարվել է անդամահատությունը (աղիքի կամ ստամոքսի լրիվ հեռացումը)։ Սակայն այդպիսի վիրահատությունը բավական դժվար է։ Բացի այդ, ինչպիսի՞ն կլինի առանց ստամոքսի ապրող հիվանդի վիճակը։ Եվ, ահա, ՍՍՀՄ առողջապահության մինիստրության համամիութենական կլինիկական և փորձարարական վիրահատության գիտահետազոտական ինստիտուտը, օգտագործելով ֆիզիկայի վերջին նվաճումները, ստեղծել է օպտիկական մանիպուլյացիոն զոնդ։*

*Սիստեմը, որի գլխավոր բաղադրամասը զոնդն է, հնարավորություն է ընձեռում դադարեցնելու արյունահոսությունը ստամոքսի կամ տասներկումատնյա աղիքի խոցից։ Վիրահատությունն անվտանգ է։ Կարևորն այն է, որ այդ հարմարանքի միջոցով անակնկալ դեպքերում կանգնեցվում է արյունահոսությունն առանց հիվանդի հատուկ նախապատրաստման։ Ստամոքս են մտցնում ճկուն օպտիկական մանիպուլյացիոն զոնդը։ Մի քանի րոպե անց միացվում է էլեկտրոնային սիստեմն ու հեռուստատեսային սարքը, և ավտոմատ կերպով ստամոքս է լցվում անգույն հեղուկը։ Բժիշկը մանրակրկիտ զննության հնարավորություն է ստանում։ Նա կարող է փոխել զոնդի գլխամասի դիրքը՝ ծռել, շարժել տարբեր կողմեր, ինչպես հարկն է, մոտեցնել այն ստամոքսի պատերին։ Հայտաբերվում է արյունահոսության աղբյուրը, որտեղ և անշարժացվում է զոնդը։ Այնուհետև մանիպուլյատորով արյունահոսության տեղին է մոտեցվում էլեկտրոդը։ Միացվում է սարքը։ Էլեկտրական հոսանքը դադարեցնում է խոցից հոսող արյունը։*

## ԷՆԵՐԳԻԱՆ ԿՑԱՍԱՅԼԱԿԻ ՎՐԱ

*Արևմտագերմանական «Ման» ֆիրման կառուցում է փորձնական էլեկտրաավտոբուսներ, որոնց բենզինով բանող շարժիչները փոխարինվում են էլեկտրաշարժիչով։ Քանի որ կապարե մարտկոցների անհրաժեշտ կոմպլեկտն ավելի մեծ տեղ է գրավում, քան վառելիքի բաքը, ապա ակումուլյատորների համար ստեղծել են միալիսեռ կոմպակտ կցասայլ, որ կարող է կրել մեկ տոննայից ավելի մարտկոցներ։*

*Կցասայլը հարմար է, յուրաքանչյուր 80* կմ *վազքից հետո այն անջատվում և փոխարինվում է նոր, լիցքավորված ակումուլյատորով։*

## ԱՎԵԼԻ ՆԵՐԳՈՐԾՈՒՆ ՑԱՎԱԶՐԿԻՉ

*ՍՍՀՄ ԲԳԱ դեղագործական ինստիտուտում սինթեզվել է հայրենական նոր յուրատեսակ, առավել ներգործուն ցավազրկիչ դեղանյութ— «պիրոմեկաին»։ Ինչպես ցույց են տվել երկարատև փորձարկումները, պիրոմեկաինը չի ազդում զարկերակային ճնշման և շնչառության, պերիֆերիկ անոթների վրա և աչքը կաթեցնելիս՝ չի գրգռում այն։*

## ԲԵՏՈՆԸ ՈՐՊԵՍ ԱՂՅՈՒՍ

*Աղյուսե պատերը գերազանցելի են երկաթբետոնե պանելներից. աղյուսը պահպանում է ներսի ջերմությունը, խլացնում փողոցի աղմուկը։ Ժնևցի ինժեներ Պիվետոն մշակել է բետոնե շերտավոր բլոկներ, որոնք կարող են մրցել աղյուսի հետ։ Բլոկները կազմված են բետոնե երկու սալաքարերից, որոնց միջև դրված են պոլիէթիլենի բարակ շերտեր և բազալտաթելի բավականին հաստ շերտ։ Շինարարական նոր նյութի փորձարկումը Շվեյցարիայում, ԳՖՀ-ում և Շվեդիայում ցույց տվեց, որ Պիվետոյի «աղյուսները» ձայնակլանիչ են և լավ ջերմամեկուսիչ։*